ՉԱՐԼԶ ԵՒ ՄԷՐԻ ԼԷՄ

# ՇԷՅՔՍՓԻՐԵԱՆ ԱՒԱՆԴԱՎԷՊԵՐ

Թարգմանեց

Մ. ՎԵՐԱԾԻՆ



ՊՕՍԹԸՆ

ՏՊԱՐԱՆ «ՀԱՑՐԵՆԻՔ»

1922

# Ո՞Վ ԷՐ ԼԷՄ

Չարլզ Լէմ ծանօթ է անգլիական գրականութեան մէջ իբր գրական քննադատ եւ փորձագիր (*essayist*) :

Ծնած է Լոնտոն 1775–ին եւ մեռած 1834–ին: Համեստ ծագում ունի Լէմ եւ իր կեանքի մեծագոյն մասը անցուցած է իբր գրագիր հռչակաւոր *East India* ընկերութեան գրասենեակներուն մէջ: Լէմի ընտանեկան կեանքը դժբախտ եղած է. քոյրը՝ Մէրի որ տաղանդաւոր աղջիկ մըն էր, յիմարացաւ եւ այդ նոպային մէջ սպաննեց իր մայրը: Չարլզ մինչեւ մահը եղբայրական փափկութեամբ եւ խանդաղատանքով հոգացած է իր քոյրը: Այս պարագան յուզիչ էջ մը կազմէ իր կենսագրութեան մէջ:

Լէմ Անգլիական գրականութեան վիպական դարուն (*The Age of Romanticism*) կը պատկանի, եւ Գոլըրիճի, Հէյզլիտի, Լէյ Հընտի ու Տը Քուինսիյի հետ առաջնորդած է այն ատենի գրական քննադատական նոր շարժումը: *London Magazine*–ը որ հիմնուած է 1820–ին, քաջալերեց Տը Քուինսին, Գարլայլը, ինչպէս եւ Լէմը: Լէմ մեծ քաղաքներու եւ մարդկային խոնումներու դիտողն ու հիացողը եղած է. իր նշանաւոր աշխատութիւններէն մէկն է *Essays of Elia* (1823), եւ ապա *Last Essays of Elia*–ն որոնք նկարագրութիւններ են Լոնտոնի կեանքէն:

Սակայն ելիզապէթեան գրականութեան գնահատումներուն մէջ՝ «Շէյքսփիրեան Աւանդավէպե–

րը» (1807), թէպէտ երիտասարդներու համար գրուած, այսօր կը կարդացուին անխտիր ամէն տարիքէ հաւասարապէս եւ «յիշելու ու կարդալու արժանի գործերէն» մին կը նկատուի: Ոդերգութիւնները Չարլզ խմբագրած է, իսկ կատակերգութիւնները՝ իր քոյրը Մէրի:

Արդ, բանտային մեր անհրապոյր օրերը ապարդիւն չանցընելու նպատակով, կը թարգմանենք Լէմի այս նշանաւոր գործը, եւ կը նուիրենք ապագայի մատաղ եւ երջանիկ հայ սերունդին, այն համոզումով որ սով նպաստած կ'ըլլանք Շէյքսփիրի ժողովրրդականացման:

Վ.

Գոնիա, Կեդր. բանտ
1917

Յ. Գ.— Շնորհակալութեան պարտք մը ունիմ ընկերներ Մարտիրոս Հերեանի, Տիգրան Պալըգնեանի եւ Յակոբ Դաւիթեանի՝ որոնք իրենց նիւթական օժանդակութեամբ սատարեցին այս հատորին հրատարակութեանը:

Պօսթըն, սեպտ. 1921

# ՇԷՅՔՍՓԻՐԵԱՆ ԱՒԱՆԴԱՎԷՊԵՐ

## ՌՕՄԷՕ ԵՒ ԺԻՒԼԻԷԹ

*Հարուստ Գափուլէթներն ու Մոնթակուները Վէրօնա քաղաքին գլխաւոր ընտանիքներն էին։ Այս երկու ընտանիքներուն միջեւ հին վէճ մը տեղի ունեցած էր եւ թշնամութիւնը երկուքին մէջ այն աստիճանին հասած ու այնքա՛ն մահացու եղած էր, որ անոնց ամենահեռաւոր ազգականներն իսկ վարակուած էին։ Երկու կողմերու հետեւորդներն ու կողմնակիցներն անգամ զերծ չէին այս թշնամական ոգիէն, այնպէս որ Մօնթակուի տան ծառայ մը չէր կրնար հանդիպիլ Գափուլէթի տան ծառայի մը, ոչ ալ Գափուլէթ մը կրնար դիպուածով հանդիպիլ Մօնթակուի մը, այլապէս մոլեգին բառեր կը փոխանակուէին եւ երբեմն արիւնահեղութիւն առաջ կուգար։*

*Եւ յաճախադէպ էին կագերը այսպիսի պատահական հանդիպումներու որոնք կը խանգարէին Վէրօնայի փողոցներու բարեդէպ հանդարտութիւնը։*

*Պատահեցաւ որ ծերունի ազնուական Գափուլէթ պատրաստէր մեծ ընթրիք մը որուն հրաւիրուեցան շատ մը գեղանի տիկիններ եւ ազնուական*

հիւրեր։ Վէրօնայի բոլոր հրաշալի գեղեցկուհիները ներկայ էին։ Բոլոր եկուորները բարութեամբ ընդունուեցան, եթէ Մօնթակուի տան չէին պատկաներ։ Գափուլէթներու այս խնճոյքին ներկայ էր Ռօզալին, սիրականը՝ ալեւոր ազնուական Մօնթակուի տղուն՝ Ռոմէօի։ Եւ թէպէտ վտանգաւոր էր Մօնթակուի մը երեւիլ այս հաւաքոյթին մէջ, սակայն Պէնվօլիօ, Ռոմէօի բարեկամներէն մէկը, համոզեց երիտասարդ ազնուականը ներկայ ըլլալ հոն՝ դիմակի մը ծպտումին տակ։ Պէնվօլիօ կ՚ուզէր որ Ռոմէօ կարենար տեսնել Ռօզալինը, եւ տեսնելով զայն, բաղդատէր Վերօնայի ընտիր գեղեցկուհիներուն հետ։

Այս բաղդատութիւնը, կ՚ըսէր Պէնվօլիօ, խորհիլ պիտի տար Ռոմէօի որ իր կարապը ագռաւ մըն էր։

Ռոմէօ քիչ հաւատք ունէր Պէնվօլիօի խօսքերուն վրայ, այսուհանդերձ Ռօզալինի սիրոյն՝ համակերպեցաւ խնճոյքին երթալ։ Ռոմէօ անկեղծ եւ մոլեդին սիրող մըն էր եւ մէկը՝ որ կը կորսնցնէ իր քունը սիրոյ համար։ Ան կը փախչէր ընկերութենէ, որպէսզի առանձին մնար եւ Ռօզալինի մասին մտածէր։

Պէնվօլիօ կը փափաքէր բուժել իր բարեկամը այս սիրահարութենէն, ցոյց տալով անոր օրիորդներու եւ ընկերութեան զանազանութիւնը։ Ուստի, երիտասարդ Ռոմէօ, Պէնվօլիօ եւ իրենց բարեկամը Մերքուտիօ, դիմակ դրած, գացին Գափուլէթներու խնճոյքին։

Ծերունի Գափուլէթ բարի գալուստ մաղթեց անոնց եւ յայտնեց թէ այն օրիորդները որոնք անպատուհաս էին ոտնամատներու կոշտերէն՝ պիտի պարէին հետերնին։

Ծերունին միամիտ եւ զուարթ էր, որովհետեւ

ըսաւ թէ ինք ալ դիմակ դրած էր իր երիտասարդութեան ժամանակ եւ կրցած էր փափսալով մանրավէպ մը պատմել գեղանի օրիորդի մը ականջին :

Ապա պարի սկսան : Ռոմէօ յանկարծ զարնուեցաւ ծայրայեղ գեղեցկութենէն օրիորդի մը որ կը պարէր հոն : Անոր այնպէս թուեցաւ թէ այս օրիորդը ջահերուն կը սորվեցնէր փայլուն վառիլ եւ գիշերուան մէջ անոր գեղեցկութիւնը կը նմանէր թանկագին գո՛հարի մը զոր կը կրէ խափշիկ մը : Գեղեցկութի՛ւն որ շատ թանկ է գործածել եւ չափազանց սուղ՝ երկրի համար :

Անիկա կը նմանի ձիւնափայլ աղաւնիի մը որ կը խմբուի ագռաւներուն հետ , նկատեց Ռոմէօ , որովհետեւ չքեղութեամբ կը փայլին անոր դեղեցկութիւնը եւ կատարելութիւնները իր ընկերուհիներու եւ օրիորդներու բաղդատմամբ :

Մինչ այս դովեստները կը շռայլէր ան , ազնուական Գափուլէթի եղբօրորդիներէն մէկը՝ Թիպալտ՝ լսեց եւ ձայնէն ճանչցաւ թէ Ռոմէօն էր : Թիպալտ կրակոտ եւ բարկացոտ բնաւորութեան տէր ըլլալով , չէր կրնար հանդուրժել որ Մոնթակու մը , դիմակի պաշտպանութեան տակ , գար ծաղրել եւ արհամարհէր իրենց տօնախմբութիւնները , ուստի փոթորկեցաւ եւ կատաղեցաւ ծայրայեղօրէն : Ան կ՚ուզէր երիտասարդ Ռոմէօն զարնել մեռցնել , սակայն իր հօրեղբայրը չէր հանդուրժեր անոր որ վնաս մը հասցնէր այդ ժամանակ , եւ ասիկա՝ թէ իր հիւրերուն հանդէպ ունեցած յարգանքէն եւ թէ անոր համար որ Ռոմէօ պարոնի մը պէս վարուած էր : Արդէն Վերոնայի բոլոր լեզուները կը գովաբանէին Ռոմէօն , իբրեւ առաքինի եւ բարեբարոյ երիտասարդ մը :

Թիպալտ , ստիպուած համբերող ըլլալու եւ հա-

կառակ իր կամքին, զսպեց ինքզինքը, բայց երդում ըրաւ որ այս անարգ Մոնթակուն ուրիշ ատեն մը սուղ կերպով վճարէ իր ինքնակոչ մուտքը:

Պարը վերջացած ըլլալով, Ռոմէօ դիմեց այն տեղը ուր օրիորդը կը կենար՝ եւ իր դիմակաւոր հագուստի շնորհիւ որ մասամբ կրնայ արդարանալի երեւցնել ազատութիւնը, ամենանուրբ եղանակով մը համարձակեցաւ բռնել անոր ձեռքը՝ զայն սրբարան անուանելով, զոր եթէ կը սրբապղծէր դպչելով, անոր համար էր որ ինքը շիկնող ուխտաւոր մըն էր եւ կ'ուզէր զայն համբուրել քաւութեան համար:

«Բարի Ուխտաւոր, պատասխանեց օրիորդը, ձեր ջերմեռանդութիւնը կը յայտնուի խիստ չափազանց շնորհալիութեամբ եւ ազնուութեամբ: Սուրբերը ձեռներ ունին, որոնց ուխտաւորները կրնան դպչիլ, բայց համբուրել՝ չեն կրնար»:

«Սուրբերը շրթներ չունի՞ն, ինչպէս եւ ուխտաւորները», ըսաւ Ռոմէօ:

«Այո՛, պատասխանեց օրիորդը, շրթներ՝ որոնք աղօթքի համար պէտք է գործածուին»:

«Ո՜հ, այն ատեն, իմ սիրելի սրբուհիս, վրայ բերաւ Ռոմէօ, լսէ աղօթքս եւ շնորհէ զայն, որ չըլլայ թէ յուսահատիմ»:

Այսօրինակ ակնարկներով եւ սիրոյ խորհուրդներով զբաղած էին, երբ օրիորդը կանչուեցաւ իր մօրմէն:

Ռոմէօ հարցնելով անոր մօրը ո՛վ ըլլալը, հասկցաւ թէ օրիորդը որուն անզուգական գեղեցկութենէն այնչափ սիրահարած էր, մանկամարդ Ճիւլիէթն էր, դուստր եւ ժառանգ ազնուական Գափուլէթի, Մոնթակուներու մեծ թշնամիին: Ուրեմն Ռոմէօ անգիտակցաբար իր սիրտը կապած էր թշնամիին հետ: Այս իրողութիւնը չփոթեց զինքը, սա-

կայն չկրցաւ հրաժարիլ սիրելէ։

Ճիւլիէթ եւս անհանգիստ եղաւ, երբ իմացաւ թէ այն պարոնը, որուն հետ խօսակցած էր, Ռոմէօն էր եւ Մոնթակու մը։ Որովհետեւ ինքն ալ միեւնոյն փութկոտ եւ անխորհուրդ սիրով սիրահարեցաւ Ռոմէօի, ինչպէս այս վերջինը՝ անոր։

Սիրոյ արտաքոյ կարգի ծնունդ մը կը թուէր Ճիւլիէթի, որ թշնամի մը պէտք էր սիրէր եւ թէ իր գուրգուրանքները պիտի ամրանային հոն՝ ուր ընտանեկան նկատումներ կը դրդէին զինքը գլխաւորապէս ատել։

Կէս գիշեր ըլլալով, Ռոմէօ մեկնեցաւ իր ընկերներուն հետ, սակայն շուտով խուսափեցաւ անոնցմէ, որովհետեւ անկարող էր հեռու մնալ այն տունէն ուր թողած էր իր սիրտը, ուստի ցատկեց մրգաստանի մը պատէն որ Ճիւլիէթի տան ետեւը կը գտնուէր։ Հոս երկար չտեւեց իր նոր սիրոյ մասին ունեցած խոկումը. Ճիւլիէթ պատուհանէ մը երեւցաւ։ Անոր գերազանց գեղեցկութիւնը կը թուէր ցաթիլ՝ նման արեւելքի արեւուն լոյսին։ Իսկ լուսինը որ կը փայլէր աղօտ լոյսով մը մրգաստանին մէջ, Ռոմէօի երեւցաւ վշտահար եւ դալուկ՝ այս նոր արեւին գերազանց չքեղութեան քով։

Երբ Ճիւլիէթ կը յենէր իր ձեռքը այտին, Ռոմէօ եռանդագին կը փափաքէր ձեռնոց մը ըլլալ այդ ձեռքին վրայ՝ որ կարենար դպչիլ անոր։

Օրիորդը, այս ամբողջ ժամանակը ինքզինք առանձին կարծելով, խորունկ հառաչ մը հանեց եւ բացականչեց.

«Եղո՛ւկ ինծի»։

Ռոմէօ՝ Ճիւլիէթի խօսիլը լսելէն յափշտակուած, ըսաւ մեղմիւ, առանց անորմէ լսուելու, «Ո՛հ, խօսէ՛ նորէն, փայլուն հրեշտակ, քանի որ գլխուս վե-

րեւ ըլլալով, իբրեւ այդպիսին կ'երեւիս, նման երկինքի թեւաւոր պատգամաբերի մը որուն նայելու համար մահկանացուները կ'ընկրկին»:

Օրիորդը, անգիտակից թէ կը լսուէր, եւ լեցուած այն սիրով զոր նոյն իրիկուան արկածը ծնցուցած էր, արտասանեց իր սիրողին անունը, զայն բացակայ ենթադրելով:

«Ո՜վ Ռոմէօ, Ռոմէօ՜», ըսաւ, «ո՞ւր ես արդեօք Ռոմէօ: Ուրացի՛ր հայրդ, եւ մերժէ՛ ազգանունդ սիրոյս համար, կամ եթէ չուզես, իմ ուխտեալ սէրս եղիր եւ ես Գափուլէթ մը պիտի չըլլամ այլեւս»:

Ասկէ քաջալերուած, Ռոմէօ սիրով կ'ուզէր խօսիլ, բայց կը փափաքէր աւելի լսել: Օրիորդը շարունակեց իր սիրային խօսակցութիւնը ինք իր հետ, ինչպէս կը կարծէր: Ան դեռ կը յանդիմանէր Ռոմէօն՝ Ռոմէօ եւ Մօնթակու մը ըլլալուն համար, ու կը փափաքէր որ ուրիշ անուն մը ունեցած ըլլար ան, կամ մէկդի դնէր այդ ատելի անունը: Առանց այդ անուան՝ որ Ռոմէօի մաս չէր կազմեր, Ճիւլիէթ ամբողջովին անոր պիտի պատկանէր:

Սիրային ինքնախօսակցութեան այս կէտին՝ Ռոմէօ չէր կրնար այլեւս զսպել ինքզինքը եւ տրամախօսութեան բառերը անձնապէս իրեն ուղղուած նկատելով եւ ոչ լոկ երեւակայութեան արդիւնք, հրաւիրեց օրիորդը զինքը սէր կոչել, կամ ուրիշ ոեւէ անուն որ հաճոյ կը թուէր անոր, որովհետեւ ինքը այլեւս Ռոմէօ չէր, եթէ այդ անունը անհաճոյ էր:

Ճիւլիէթ, դող ելած պարտէզին մէջ մարդու մը ձայնը լսելէն, նախ չգիտցաւ թէ ո՛վ էր ան որ գիշերուան եւ մթութեան շնորհիւ դայթած էր իր գաղտնիքի յայտնութեան վրայ, սակայն երբ անիկա նորէն խօսեցաւ, այնչա՜փ պատուական է սիրողի մը

լսողութիւնը, որ իսկոյն ճանչցաւ երիտասարդ Ռոմէօն, թէպէտ իր ականջները անոր խօսակցութենէն հարիւր բառ ըմբռնած չըլլային տակաւին։ Ճիւլիէթ յանդիմանեց Ռոմէօն այն վտանգին համար որուն ենթարկած էր ինքզինք՝ մագլցելով մրգաստանի պատերէն, որովհետեւ եթէ իր ազգականներէն մէկը պատահէր հոն, անիկա մահ պիտի նշանակէր Ռոմէօի, որ Մոնթակու մըն էր։

«Աւա՜ղ, ըսաւ Ռոմէօ, աւելի վտանգ կայ ձեր աչքին մէջ, քան անոնց քսան սուրերուն մէջ։ Միայն բարութեամբ նայեցէք վրաս, օրիո՛րդ, եւ ես քաջ եմ անոնց թշնամութեան դէմ։ Աւելի լաւ է որ կեանքս վերջանար անոնց ատելութիւններովը, քան այս ատուած կեանքը երկարէր առանց ձեր սիրոյն»։

«Ի՞նչպէս եկաք այս տեղը», հարցուց Ճիւլիէթ։

«Սէրը առաջնորդեց զիս, պատասխանեց Ռոմէօ, ես նաւուղիղ չեմ, բայց եթէ դուք շատ հեռու ըլլայիք ինէ, ինչպէս այն անհուն ծովեզրը զոր կը թրջէ ամենահեռաւոր ծովը, դարձեալ պիտի վտանգէի կեանքս ձեզի նման վաճառքի մը համար»։

Բոսորագոյն կարմրութիւն մը եկաւ Ճիւլիէթի դէմքին՝ որ անտեսանելի էր Ռոմէօէն՝ գիշերուան պատճառով, Ճիւլիէթ անդրադարձաւ որ Ռոմէօի համար քիչ առաջ իր սիրոյ յայտնութիւնը ըրած էր անգիտակցաբար, բան մը որ մտադիր եղած չէր յայտնել։

Ճիւլիէթ կամաւ կ'ուզէր ետ առնել իր խօսքերը, բայց անիկա անկարելի էր։ Յօժարակամ կ'ուզէր ձեւականութեան վրայ կանգնիլ եւ հեռու պահել իր սիրահարը, ինչպէս սովորութիւն է պաղտնապահ օրիորդներու խոժոռիլ եւ կամակոր ըլլալ եւ իրենց հետամուտներուն նախ անախորժ մերժումներ ընել։ Հեռու կանգնիլ եւ պարկեշտութիւն կամ անտարբե-

րութիւն ձեւացնել տեղ մը՝ ուր սէր ունին, որպէսզի իրենց սիրահարները չխորհին թէ շատ թեթեւութեամբ կամ դիւրութեամբ տիրացան անոնց, որովհետեւ ստանալու դժուարութիւնը կ'աճեցնէ օրիորդներու արժէքը:

Սակայն մերժումի եւ յետաձգման տեղ չի կար Ճիւլիէթի պարագային: Սիրաբանութեան միջոցի եւ յապաղման սովորական դարձուածքներուն ատենը անցած էր: Ռոմէօ՝ Ճիւլիէթի իսկ բերնէն լսած էր սիրոյ խոստովանանքը, երբ ինքը Ճիւլիէթ չէր երազեր թէ ան մօտ էր:

Ուստի պատուաւոր համարձակութեամբ մը զոր կ'արդարացնէր իր դիրքին նորութիւնը, Ճիւլիէթ հաստատեց Ռոմէօի լսած ճշմարտութիւնը, եւ խօսքը ուղղելով անոր՝ սիրուն Մօնթակու կոչեց զայն, որովհետեւ սէրը կը քաղցրացնէ դառն անուն մը: Ծիւլիէթ խնդրեց անկէ որ իր դիւրին զիջումը թեթեւամտութեան կամ անարժէք մտքի չվերագրէ, այլ այդ թերութիւնը, եթէ թերութիւն էր, պէտք էր վերագրել գիշերուան դիպուածին որ այնքան տարօրինակ կերպով իր մտածումները մերկացուցած էր, Ծիւլիէթ աւելցուց որ թէպէտ իր վարմունքը կրնար բաւականաչափ խոհեմ չըլլալ, չափելով իր սեռի սովորութեան հետ, այնու հանդերձ ինք պիտի ապացուցէր թէ աւելի ճշմարիտ էր քան շատերունը՝ որոնց խոհեմութիւնը կեղծ էր եւ համեստութիւնը՝ արուեստական խորամանկութիւն:

Ռոմէօ սկսած էր երկինքը վկայութեան կանչել, թէ ոչ մէկ բան աւելի հեռի էր իր խորհուրդներէն, քան անպատուութեան ստուեր մը վերագրել այսպիսի պատուաւոր օրիորդի մը: Բայց Ճիւլիէթ կեցուց զայն, եւ խնդրեց որ երդում չընէ, որովհետեւ ինք թէպէտ կ'ուրախանար անով, այլ միւս կողմէ

ուրախ չէր այդ գիշերուան դաշինքէն որ շատ յախուռն էր, չափազանց անխորհուրդ, չափազանց փութկոտ:

Սակայն, որովհետեւ Ռոմէօ կըստիպէր որ սիրոյ ուխտ մը փոխանակէին այդ գիշեր, Ճիւլիէթ յայտնեց թէ ինք իր ուխտը ըրած էր, խնդրուելէ առաջ, ատով ըսել կ'ուզէր թէ Ռոմէօ լսած էր իր խոստովանութիւնը:

Հիմա Ճիւլիէթ կ'ուզէր յետս կոչել այն զոր նուիրած էր, բայց վերստին տալու հաճոյքին համար, որովհետեւ իր առատաձեռնութիւնը ծովու չափ անսահման էր եւ սէրը՝ անոր չափ խորունկ:

Ճիւլիէթի դայեակը որ միասին կը քնանար, կանչեց զինքը սիրոյ այս խորհրդակցութենէն: Ան կը խորհէր թէ ատեն էր անկողին մտնելու, եւ լուսաբացը մօտ էր: Սակայն Ճիւլիէթ արտորանքով վերադարձաւ եւ երեք չորս բառ աւելի ըսաւ Ռոմէօի: Այս բառերու նշանակութիւնը այն էր որ եթէ իրաւ պատուաւոր էր սէրը Ռոմէօի եւ նպատակը՝ ամուսնութիւն, յաջորդ առտու իսկ Ճիւլիէթ պատգամաւոր մը պիտի ղրկէր անոր, իրենց ամուսնութեան ժամանակ մը որոշելու համար, եւ այն ատեն Ճիւլիէթ իր բոլոր բախտը Ռոմէօի ոտքը պիտի դնէր եւ աշխարհի մէջ պիտի հետեւէր անոր՝ իբրեւ տիրոջ:

Մինչ երկու սիրահարները կը կարգադրէին այս կէտը, Ճիւլիէթ կրկին ու կրկին կանչուեցաւ իր դայեակէն, բայց ան ներս մտնելով՝ նորէն վերադարձաւ, եւ գնաց ու նորէն ետ եկաւ, որովհետեւ Ճիւլիէթ Ռոմէօի մեկնելէն նոյնչափ նախանձոտ կը թուէր, որչափ մատաղատի աղջիկ մը իր թռչունէն զոր կը թողու որ ցատկէ քչիկ մը իր ձեռքէն եւ կը քաշէ մետաքսէ թելով: Արդարեւ Ռոմէօ՝ Ճիւլիէթի

*չափ կը դանդաղէր մեկնիլ, որովհետեւ սիրողներու համար լաւագոյն նուագը գիշերուան խօսակցութեանց ձայնն է։ Բայց վերջապէս բաժնուեցան անոնք եւ փոխադարձաբար իրարու մաղթեցին անուշ քուն եւ հանգիստ՝ այդ գիշերուան համար։*

*Լոյսը կը ծագէր երբ մեկնեցան։ Սակայն Ռոմէօ՝ չափազանց բեռնաւորուած՝ իր տիրուհիին եւ այս օրհնեալ հանդիպումի խորհուրդներովը՝ որոնք զինքը կ՚արգիլէին քնանալէ, փոխանակ տուն երթալու, չեղեց իր ճամբան դէպի մօտակայ վանք մը գտնելու համար վանական Լօրէնսը։*

*Բարեսիրտ աբեղան արդէն զբաղած էր իր աղօթքով, սակայն տեսնելով որ երիտասարդ Ռոմէօ տունէն այսչափ կանուխ դուրս ելած էր, խորհեցաւ իրաւացիօրէն թէ այդ գիշեր ան պառկած չէր, այլ երիտասարդական սիրոյ անբարեխառնութիւն մը զայն արթուն պահած էր։ Վանականը իրաւունք ունէր Ռոմէօի արթուն մնալուն պատճառը սիրոյ վերագրելով, սակայն սխալ գուշակում մը ըրաւ առարկային նկատմամբ, որովհետեւ խորհեցաւ թէ Ռօզալինի սէրն էր այն։ Երբ Ռոմէօ յայտնեց Ճիւլիէթի համար ունեցած նոր սէրը եւ Լօրէնսի օժանդակութիւնը խնդրեց նոյն օրը ամուսնանալու նպատակով, սրբասուն մարդը վեր վերցուց իր աչքերը, ինչպէս եւ ձեռքերը զարմանքի ձեւով մը՝ Ռոմէօի սիրոյն յանկարծական փոփոխման առթիւ, որովհետեւ գաղտնապէս գիտէր թէ Ռոմէօ կը սիրէր Ռօզալինը որուն արհամարհանքին դէմ գանգատած էր։*

*Վանական Լօրէնս ըսաւ որ երիտասարդներու սէրը ճշմարտապէս չի հանգչիր սրտերուն, այլ աչքերուն մէջ։ Սակայն Ռոմէօ պատասխանեց թէ ինքը՝ վանականն էր յանդիմանողը՝ Ռօզալինը յիմարաբար սիրելուն համար։ Ռօզալին չէր կրնար սի-*

րել զինքը, մինչ Ճիւլիէթ կը սիրէր եւ կը սիրուէր իրմէ։ Այս դատողութեան չափով մը հաւանեցաւ աբեղան որ խորհեցաւ թէ ամուսնական խնամութիւն մը երիտասարդ Ճիւլիէթի եւ Ռոմէօի միջեւ կրնար բարեբախտաբար միջոց մը ըլլալ դարմանելու Գափուլէթներու եւ Մօնթակուներու երկարատեւ խըզումը։ Այս դժբախտութիւնը ոչ ոք աւելի կ՚ողբար քան բարի վանականը որ երկու ընտանիքներուն ալ բարեկամ էր։

Ուստի մասամբ այս քաղաքականութիւնով մըղուած եւ մասամբ Ռոմէօի հանդէպ ունեցած յարումէն դրդուած, որուն բան մը չէր կրնար մերժել, ծերունին հաւանեցաւ անոնց ձեռքերը միացնել ամուսնութեամբ։

Հիմա Ռոմէօ իրաւ օրհնուած էր։ Իսկ Ճիւլիէթ որ գիտէր Ռոմէօի մտադրութիւնը ղրկուած պատգամաբերէ մը, համաձայն խոստման, չուշացաւ կանուխ գալ վանական Լօրէնսի խուցը ուր անոնց ձեռները միացուեցան սուրբ ամուսնութեամբ։

Բարի քահանան աղօթեց որ երկինքը ժպտէր այս գործին վրայ եւ երիտասարդ Մօնթակուի եւ մատաղատի Գափուլէթի միութեան մէջ թաղէր անոնց ընտանիքներու հին պայքարը եւ երկարատեւ վէճերը։

Արարողութիւնը վերջացած ըլլալով, Ճիւլիէթ տուն փութաց ուր անհամբեր սպասեց գիշերուան գալուն, որովհետեւ այդ ատեն Ռոմէօ խոստացած էր գալ ու հանդիպիլ մրգաստանին մէջ, հոն՝ ուր նախորդ գիշեր հանդիպած էին։ Այս ժամանակամիջոցը տաղտկալի կը թուէր Ճիւլիէթի, ինչպէս մեծ տօնէ մը առաջ գիշերը կը թուի անհամբեր տղու մը որ զարդարանքներ ունի եւ չի կրնար կրել մինչեւ առտու։

Միեւնոյն օրը, կէսօրի ատենները, Ռոմէօի բարեկամները՝ Պէնվօլիօ եւ Մերքուտիօ՝ Վերոնայի փողոցները շրջած միջոցին, հանդիպեցան Գափուլէթներու խումբի մը, գլխաւորութեամբ անզուսպ Թիպալտի։ Սա միեւնոյն քինախնդիր Թիպալտն էր որ ուզեց Ռոմէօի հետ կռուիլ ծերունի ազնուական Գափուլէթի խնճոյքին մէջ։ Թիպալտ տեսնելով Մերքուտիօն, ամբաստանեց զայն թէ ընկերակցած էր Ռոմէօի հետ որ Մօնթակու մըն էր։

Մերքուտիօ՝ որ նոյնչափ հուր եւ երիտասարդական արիւն կը կրէր որչափ Թիպալտ, այս ամբաստանութեան պատասխանեց սուր եղանակով մը, եւ հակառակ այն բոլորին, որ կրնար ընել Պէնվօլիօ անոնց բարկութեան չափ դնելու, վէճը կը սկսէր։

Այս միջոցին Ռոմէօ նոյն ճամբէն կ'անցնէր։ Կատաղի Թիպալտ տեսնելով զայն, թողուց Մերքուտիօն եւ դարձաւ Ռոմէօի ու ամօթապարտ սրիկայ կոչեց։ Ռոմէօ ամէն մարդէ աւելի կ'ուզէր Թիպալտի հետ կռուէ մը խուսափիլ, որովհետեւ անիկա ազգականն էր Ճիւլիէթի՝ որմէ շատ կը սիրուէր, ասկէ զատ, երիտասարդ Մօնթակուն ընտանեկան վէճին բոլորովին յարած չէր, քանի որ բնութեամբ իմաստուն եւ ազնիւ էր։ Յետոյ, Գափուլէթի մը անունը որ իր սիրելի տիկնոջ անունն էր, հիմա աւելի դիւթանք մըն էր իր սրտմտութիւնը մեղմելու, քան կատաղութիւն գրգռելու կարգախօս մը։

Ուստի, Ռոմէօ ջանաց հասկացողութեան գալ Թիպալտի հետ զոր բարեւեց մեղմութեամբ, «բարի Գափուլէթ» անուանելով։ Կարծես Ռոմէօ, թէպէտ ինք Մօնթակու մը, գաղտնի հաճոյքն ունենար այդ անունը արտասանելուն մէջ, սակայն Թիպալտ որ կ'ատէր բոլոր Մօնթակուները դառն ատելութեամբ մը, չուզեց լսել ոեւէ համաձայնութեան

խօսք եւ քաշեց իր զէնքը։

Մերքուտիօ՝ Թիպալտի հանդէպ Ռոմէօի խաղաղասէր ընթացքին գաղտնի չարժառիթը չէր գիտեր, այլ անոր համբերատարութիւնը կը նկատէր տեսակ մը անպատիւ եւ հանդարտ համակերպում։ Ուստի արհամարհական խօսքերով հրաւիրեց Թիպալտը որ իրեն հետ ունեցած առաջին վէճը շարունակէ, հետեւաբար Թիպալտ եւ Մերքուտիօ կռուեցան։ Մերքուտիօ ինկաւ, ընդունելով մահացու վէրք մը, մինչ Ռոմէօ եւ Պէնվօլիօ ի զուր կը ջանային բաժնել կռուողները։

Մերքուտիօ մեռած ըլլալով, Ռոմէօ չկրցաւ աւելի զսպել իր կիրքը, ուստի փոխադարձաբար սրիկայ անուանեց Թիպալտը։ Երկուքը կռուեցան, մինչեւ Թիպալտ խողխողուեցաւ Ռոմէօի կողմէ։

Այս մահառիթ կատաղութիւնը տեղի ունենալով ցորեկ ատեն Վերօնայի փողոցներուն մէջ, լուրը քաղաքացիներու բազմութիւն մը արագօրէն բերաւ եղեռնավայրը։ Եկան նաեւ ծերունի ազնուականներ Գափուլէթ եւ Մօնթակու, իրենց կիներով։

Քիչ ետք հասաւ Վերօնայի իշխանը, որ ազգական էր Մերքուտիօի զոր սպաննած էր Թիպալտ։ Իշխանը նկատելով որ իր կառավարութեան անդորրութիւնը յաճախ կը խանգարուէր Մօնթակուներու եւ Գափուլէթներու սոյն կռիւներով, վճռականօրէն եկաւ օրէնքը իր ամենախիստ ուժով գործադրելու անոնց դէմ որոնք յանցաւոր դատուէին։

Պէնվօլիօ որ ականատես եղած էր վէճին, հրաման ընդունեցաւ իշխանէն՝ պատմելու կռիւին ծագումը։ Ան նկարագրեց եղելութիւնը կրցածին չափ ճշմարտութեան մօտենալով, որպէսզի չվնասէր Ռոմէօի, եւ մեղմացուց ու արդարացուց իր բարեկամներու մասնակցութեան բաժինը։

Տիկին Գափուլէթ որուն ծայրայեղ վիշտը իր ազգական Թիպալտի համար անսահման վրէժխնդրութեան մէջ կը պահէր զինքը, աղերսեց իշխանէն արդարութեան խիստ գործադրութիւնը Թիպալտը սպաննողին դէմ, ուշ չդարձնելով Պէնվօլիօի մեկնաբանութեան որ Ռօմէօի բարեկամներէն եւ Մօնթակու մըն էր, եւ ուստի կողմնակալօրէն կը խօսէր:

Այսպէս Տիկին Գափուլէթ դատախազ կը կանգնէր իր նոր փեսային դէմ, առանց գիտնալու թէ ան Ճիւլիէթի ամուսինն էր:

Միւս կողմէ պէտք էր դիտել Տիկին Մօնթակուն որ իր զաւկին կեանքը կը պաշտպանէր, եւ կը փաստաբանէր քիչ մը արդարութեամբ թէ՝ Ռօմէօ պատիժի արժանի գործ մը չէր կատարած՝ խլելով Թիպալտի կեանքը: Այս վերջինը արդէն օրէնքին խըստութեան ենթարկուած էր Մերքուտիօի սպանութեան համար:

Իշխանը, անյոյզ այս կիներու կրքոտ բացագանչութիւններէն, փաստերու զգուշաւոր քննութենէ մը ետք, արտասանեց իր վճիռը՝ որով Ռօմէօ կ՚աքսորուէր Վերօնայէն:

Ասոնք ծանրակշիռ լուրեր էին մանկամարդ Ճիւլիէթի որ հազիւ քանի մը ժամուան հարս եղած էր եւ այս դատավճռովահա ամուսնալուծուած կը թուէր յաւիտեան:

Երբ գոյժը հասաւ, Ճիւլիէթ նախ իր կատաղութիւնը արձակեց Ռօմէօի դէմ որ իր սիրելի հօրեղբօրորդին սպաննած էր, զայն անուանեց գեղանի բռնակալ, հրեշտակային ոսոխ, գիշատիչ աղաւնի, գայլի բնութեամբ գառնուկ, օձային սիրտ մը՝ ծածկուած ծաղկեալ դէմքով, եւ ուրիշ նման հակասական անուններ որոնք ցոյց կուտային թէ անոր միտքը սիրոյ եւ բարկութեան միջեւ պայքար կը

մղէ։ Ի վերջոյ իր սէրը տիրապետեց եւ այն արտասուքը զոր թափեց իր հօրեղբօրորդիին սպանութեան համար, փոխուեցաւ ուրախութեան կայլակներու, որովհետեւ իր ամուսինը, որ սպաննուած պիտի ըլլար Թիպալտէն՝ կ'ապրէր։

Թարմ արցունքներ նորէն հոսեցան, բայց արցունքներ ամբողջովին վշտի՝ որովհետեւ Ռոմէօ կ'արտաքսուէր։ Այս բանը աւելի սարսափելի էր Ճիւլիէթի, քան Թիպալտներու մահը։

Ռոմէօ, կռիւէն ետք, վանական Լօրէնսի խուցը ապաստանած էր, ուր առաջին անգամ իմացաւ իշխանին դատավճիռը։ Ասիկա իրենց շատ աւելի սարսափելի էր քան մահը։ Ռոմէօի համար Վերօնայի պարիսպներէն դուրս աշխարհ չէր երեւեր, ոչ ալ կեանք Ճիւլիէթի տեսքէն հեռու։

Բարի աբեղան ուզեց փիլիսոփայութեան մխիթարութիւնը տալ անոր վշտերուն, սակայն մոլեգին երիտասարդը չկամեցաւ բան մը լսել։ Ռոմէօ խենթի մը պէս կը քաշէր մազերը եւ գետինը կը նետէր ինքզինքը, իր գերեզմանին չափը առնելու համար, ինչպէս ինք կ'ըսէր։ Այս անհեթեթ վիճակէն զգաստացաւ, երբ իր սիրելի տիկինէն լուր մը ստանալով, վերակենդանացաւ։ Այն ատեն, վանականը առիթէն օգտուելով յանդիմանեց Ռոմէօն անառնական տկարութեան համար։

Ճիշդ էր որ ան սպաննած էր Թիպալտը, բայց կ'ուզէ՞ր ինքզինքն ալ սպաննել, սպաննելով նաեւ իր սիրելի տիկինը որ միայն անոր կեանքով կ'ապրէր։ Մարդուն ազնիւ ձեւը, ըսաւ վանական Լօրէնս, կնքամոմէ կաղապար մըն է միայն, երբ կը պակսի դայն հաստատուն պահող քաջութիւնը։ Օրէնքը մեղմ եղաւ Ռոմէօի հանդէպ. անիկա աքսորի դատապարտուեցաւ փոխանակ մահուան զոր ինք իր

վրայ հրաւիրած էր ։ Ան սպաննած էր Թիպալտը, սակայն Թիպալտ կրնար զինքը սպաննած ըլլալ, եւ ասոր մէջ տեսակ մը բարեբախտութիւն կար ։ Ճիւլիէթ կենդանի էր եւ ամէն յոյսէ վեր՝ անոր սիրելի կինը եղած էր, սակայն նոյնպէս երջանկութեան պարագայ մըն էր Ռոմէոյի համար ։

Բոլոր այս օրհնութիւնները որոնք իբրեւ բարիք կը ներկայացնէր աբեղան, Ռոմէօ կը վանէր տխրաբարոյ եւ չարացած աղջկան մը պէս ։ Ուստի վանական Լօրէնս զգուշութեան հրաւիրեց զայն, ըսելով որ այդպիսի յուսահատներ թշուառօրէն կը մեռնէին ։

Երբ Ռոմէօ քիչ խաղաղեցաւ, եղբայրը խորհուրդ տուաւ որ գիշերը երթար եւ գաղտնաբար հըրաժեշտ առնէր Ճիւլիէթէն, ու անկէ չիտակ Մանթուա առաջանար ։ Ռոմէօ Մանթուա պիտի բնակէր, մինչեւ որ աբեղան յարմար առիթ մը գըտնէր հրապարակելու անոնց ամուսնութիւնը՝ որ կրնար բերկրալի միջոց մը ըլլալ անոնց ընտանիքներու հաշտութեան ։ Յետոյ, վանական Լօրէնս չէր կասկածեր թէ իշխանը պիտի յուզուէր եւ պիտի ներէր Ռոմէոյի, ու պիտի վերադառնար ան քսան անգամ աւելի ուրախութեամբ, քան կը մեկնէր վիշտով ։

Ռոմէօ այս իմաստուն խրատներուն համոզուելով, մեկնեցաւ խուցէն, երթալ գտնելու համար իր տիկինը, բայց այն առաջադրութեամբ որ զայն տեսնելէ ետք, միայնակ իր ճամբորդութիւնը պիտի շարունակէր դէպի Մանթուա ։

Բարեսիրտ վանականը խոստացաւ ատեն ատեն նամակներ հասցնել անոր եւ ծանօթութիւններ տալ Հայրենի գործերուն նկատմամբ ։

Ռոմէօ գաղտնի թոյլտուութիւն ստացաւ մտնել

իր սիրելի կնոջ սենեակը՝ այն մրգաստանէն ուր նախորդ գիշեր սիրոյ խոստովանութիւնը լսած էր։ Այն հրճուանքը զոր կը վայելէին այս սիրահարները իրարու ընկերակցութենէն, մեղմացաւ տխրութեամբ, քանի աչքի առջեւ կը բերէին բաժանումի հեռապատկերը եւ անցնող օրուան ճակատագրական արկածները։

Անբաղձալի լուսաբացը կարծես շատ շուտ կուգար, եւ երբ Ճիւլիէթ լսեց արտոյտին առտուան երգը, յօժարակամ կ՚ուզէր ինքզինքը համոզել թէ սոխակն է այն որ կ՚երգէ գիշերը։ Սակայն կասկած չի կար որ արտոյտն էր երգողը, իսկ այդ երգը աններդաշնակ ու անհաճոյ նուագ մը կը թուէր իրեն։ Արեւելքի կողմը առտուան երանգները ցոյց կուտային թէ ատենը եկած էր որ սիրողները այլեւս բաժնուէին իրարմէ։

Ռոմէօ հրաժեշտ առաւ իր սիրելի կնոջմէն ծանրաբեռն սրտով, եւ խոստացաւ Մանթուայէն անոր նամակ գրել օրուան իւրաքանչիւր ժամին։ Իսկ երբ Ռոմէօ վար իջաւ սենեակի պատուհանէն եւ կը կենար ցածը՝ գետնին վրայ, մտային տխուր նախազգացումի մը մէջ ուր կը գտնուէր Ճիւլիէթ, Ռոմէօն երեւցաւ անոր աչքերուն՝ նման մեռած մէկու մը որ դամբանի մը յատակը կը գտնուի։

Ռոմէօի միտքը նման խոկումներ ունեցաւ, սակայն հիմա բռնադատուած էր արտորանքով մեկնիլ, որովհետեւ մահ էր իրեն Վերօնայի պարիսպներուն մէջ գտնուիլ, լուսածագէն ետքը։

Ասիկա, սակայն, դեռ սկիզբն էր ողբերգութեան սիրողներու զոյգին, որուն աստղը խոժոռած էր։ Ռոմէօի մեկնելէն ի վեր շատ ժամանակ անցած չէր, երբ ազնուական ծերունի Գափուլէթ Ճիւլիէթի ամուսնութիւն մը առաջարկեց։ Զերազելով որ աղ-

ջիկը արդէն ամուսնացած էր, հայրը ամուսին մը ընտրած էր։ Անիկա Փարիս Կոմսն էր, որ չքեղ, երիտասարդ եւ ազնուական պարոն մը ըլլալով, անարժան հետամուտ մը չէր մատաղատի Ճիւլիէթի համար, եթէ երբեք այս վերջինը Ռոմէօն տեսած չըլլար։

Սարսափահար Ճիւլիէթ դառն վարանում մը ունեցաւ իր հօրը առաջարկին վրայ. ամուսնութեան իբր անյարմար պատճառ բռնեց իր մատաղատիութիւնը, Թիպալտի նոր մահը չափազանց տկարացուցած էր իր տրամադրութիւնները եւ չէր կրնար ուրախ դէմքով դիմաւորել իր ամուսինը։ Եւ ի՛նչ անվայել պիտի ըլլար Գափուլէթներու ընտանիքին համար հարսանեկան հանդէս մը տօնել, երբ յուղարկաւորութեան արարողութիւննրեը հազիւ վերջացած էին։ Ճիւլիէթ ամուսնութեան դէմ ամէն առարկութիւն ըրաւ, բայց չըսաւ ճշմարիտ պատճառը որ իր արդէն ամուսնացած ըլլալն էր։

Սակայն ազնուական Գափուլէթ խուլ էր անոր բոլոր պատճառաբանութիւններուն դէմ եւ վճռական եղանակով մը հրամայեց Ճիւլիէթի պատրաստ ըլլալ յաջորդ հինգշաբթի ամուսնանալու համար։

Հայրը գտած ըլլալով հարուստ, երիտասարդ եւ ազնուական ամուսին մը, զոր հրճուանքով պիտի ընդունէր Վերոնայի ամենահպարտ օրիորդն անգամ, չէր կրնար հանդուրժել որ կեղծ ամօթխածութեամբ, ինչպէս ինք կը մեկնէր Ճիւլիէթի մերժումը, ան խոչընդոտներ հանէր իր սեփական բարեբախտութեան դէմ։

Իրերու այս ծայրայեղութեան մէջ, Ճիւլիէթ դիմեց բարեկամ վանականին, որ նեղութեան օրերու խորհրդատուն էր։ Վանականը հարցուց անոր թէ յուսահատական դարմանի մը ձեռնարկելու

վճռականութիւնը ունէ՞ր· Ճիւլիէթ պատասխանեց թէ կ'ուզէր կենդանի գերեզման մտնել, քան ամուսնանալ Փարիսի հետ, քանի որ իր ամուսինը՝ կ'ապրէր: Ասոր վրայ վանական եղբայրը հրահանգեց տուն վերադառնալ, զուարթ երեւիլ եւ հաճութիւն տալ Փարիսի հետ ամուսնանալու, համաձայն հօրը փափաքին: Եւ յաջորդ գիշերը, որ ամուսնութեան նախորդ գիշերը պիտի ըլլար, Ճիւլիէթ կը խմէր ամբողջովին սրուակի մը պարունակութիւնը, զոր ահա կուտար վանականը: Հեղուկին արդիւնքը այն պիտի ըլլար, որ խմելէն վերջ ամբողջ քսան եւ չորս ժամ սառ եւ անկենդան պիտի երեւէր եւ երբ փեսան գար միւս առտուն տանելու Ճիւլիէթը, երեւոյթով մեռած պիտի գտնէր զայն: Ապա, այդ երկրի սովորութեան համեմատ, պիտի տարուէր անծածկ դագաղի մը վրայ թաղուելու ընտանեկան դամբարանին մէջ: Եթէ Ճիւլիէթ կրնար հեռացնել իրմէ երկիւղը եւ հաւանիլ այս սոսկալի փորձին, հեղուկը կլլելէն քսանը չորս ժամ ետքը (այսպէս էր ապահով ազդեցութիւնը դեղին), կրնար վստահ ըլլալ թէ պիտի արթննար իբրեւ երազէ մը, իսկ արթննալէ առաջ վանականը պիտի իմացնէր Ճիւլիէթի ամուսնին իրենց նպատակը եւ ան պիտի գար գիշերը անկէ տանելու զայն Մանթուա:

Սէրը եւ Փարիսի հետ կարգուելու սարսափը մատաղատի Ճիւլիէթի ուժ տուաւ ձեռնարկելու այս ահռելի արկածին, ուստի առաւ վանականէն սրուակը, խոստանալով գործադրել ստացած պատուէրները:

Վանքէն մեկնելէն ետքը, Ճիւլիէթ հանդիպեցաւ երիտասարդ Կոմս Փարիսին, եւ համեստօրէն կեղծելով, խոստացաւ անոր հարս դառնալ: Ասիկա բերկրառիթ լուր մըն էր ազնուական Գափուլէթի եւ

իր կնոջ համար․ Ծերունի հայրը կարծես կ՚երիտասարդանար այս առթիւ եւ Ճիւլիէթ, որ ծայր աստիճան դժգոհ թողուցած էր զայն, նորէն անոր սիրելին եղաւ, խոստանալով հնազանդ ըլլալ։ Տան մէջ ամէն բան կը խլրտէր մօտեցող հարսանիքին առթիւ եւ ոչինչ չէր խնայուէր այնպիսի հանդիսական ուրախութիւններ սարքելու՝ որոնց նմանը անկէ առաջ երբեք տեսած չէր Վերօնան։

Զորեքշաբթի գիշեր Ճիւլիէթ խմեց դեղաջուրը, սակայն շատ կասկածներ ունեցաւ եւ խորհեցաւ թէ իրենց ամուսնութեան մեղադրանքէն ազատելու համար վանականը գուցէ թոյն տուած էր․ սակայն այդ չէր կրնար ըլլալ, որովհետեւ վանական եղբայրը իբր սուրբ մարդ ճանչցուած էր։ Ապա, եթէ արթննար Ռոմէօի հասնելէն որոշ ժամանակ առաջ, տեղին սարսափը, դամբարան մը լեցուն Գափուլէթներու ոսկորներով եւ ուր Թիպալտ բոլորովին արիւնաթաթաւ կը պառկէր իր պատանքին մէջ՝ փտելով, բաւական պիտի չըլլայի՞ն արդեօք զինքը յիմարացնելու։ Ճիւլիէթ վերըստին մտաբերեց այն բոլոր պատմութիւնները, զորոնք լսած էր ոգիներու մասին։ Անոնք կը դեգերէին իրենց մարմիններուն պահուած տեղերը։ Սակայն Ռոմէօի սէրը վերջապէս եւ Փարիսի դէմ ունեցած անսիրելութիւնը վերադարձան, ու Ճիւլիէթ յուսահատօրէն կլլեց ըմպելին եւ զգայազիրկ եղաւ։

Երբ երիտասարդ Փարիս առտուն կանուխ եկաւ, նուագով արթնցնելու իր հարսը, անոր սենեակը, փոխան ապրող Ճիւլիէթի մը, ցուցադրեց տրտում տեսարանը անկենդան մարմնի մը։ Ի՛նչ մահ իր յոյսերուն։ Ի՛նչ շփոթութիւն տիրեց այն ատեն ամբողջ տան մէջ։ Հէգ Փարիս կ՚ողբար իր հարսը, զոր խլած էր իրմէ ամենէն ատելի մահը եւ ամուսնալու-

ծած, եւ առիկա իրենց ձեռքերը միացնելէ առաջ իսկ։ Սակայն դեռ աւելի խղճալի էր լսել ողբերը ծերունի ազնուական Գափուլէթի եւ Տիկին Գափուլէթի, որոնք միայն այս խեղճ սիրական զաւակը ունենալնուն կ'ուրախանային եւ կը սփոփուէին, բայց անգութ մահը խլած էր զայն իրենց տեսքէն եւ ճիշդ այնատեն՝ երբ այս հոգածու ծնողքները իրենց աղջիկը երջանկացած տեսնելու կէտին վրայ էին՝ խոստմնալի եւ նպաստաւոր ամուսնութիւնով մը։ Այսպէս կը կարծէին անոնք։

Այս տօնախմբութեան համար կարգադրուած ամէն ինչ շրջեցաւ իր յատկութենէն՝ սեւ յուղարկաւորութեան մը պաշտօնը կատարելու։ Հարսանեկան երգերը տխրաւիթ լալօնքի փոխուեցան, աշխոյժ նուագարանները՝ տխրազդեցիկ զանգակներու, եւ ծաղիկները, որոնք պիտի սփռուէին հարսին ճանապարհին վրայ, հիմա անոր մարմինը ծածկելու կը ծառայէին։ Փոխանակ քահանայի մը, որ զայն պսակէր, այժմ քահանայ մը պէտք էր թաղելու համար։ Եւ իրաւ, եկեղեցի տարուեցաւ Ճիւլիէթ, ո՛չ թէ ապրողներու զուարթ յոյսերը շատցնելու, այլ բազմացնելու մեռելներու տխուր թիւը։

Զար լուրերը, որոնք աւելի շուտ կը ճամբորդեն քան բարի լուրերը, Ճիւլիէթի աղէտալի պատմութիւնը բերին Մանթուա, Ռոմէօի։ Վանական Լօրէնսի ճամբայ հանած լրաբերը դեռ չէր հասած որ իմացնէր Ռոմէօի թէ միայն առերեսս թաղում մըն էր եղածը, միայն ստուերը եւ ներկայացումը մահուան, թէ Ճիւլիէթ՝ իր սիրելի տիկինը՝ գերեզմանին մէջ պառկած էր միայն կարճ ատենուան մը համար, սպասելով որ Ռոմէօ գար ազատել զինքը այդ տրտում յարկաբաժինէն։

Քիչ առաջ Ռոմէօ անսովոր կերպով ուրախ եւ

զուարթ էր։ Գիշերը երազին մէջ մեռած էր Ռոմէօ (տարօրինակ երազ մը որ մեռած մարդուն խորհելու կարողութիւն կուտար), եւ իր տիկինը գալով՝ մեռած գտած էր զինքը, բայց իր շրթունքներուն վրայ համբոյրներով այնպիսի կեանք մը կը շնչէր որ նորէն ապրած ու կայսր մը եղած էր։

Հիմա որ լրաբեր մը Վերօնայէն կուգար, Ռոմէօ կը խորհէր թէ անշուշտ բարի լուրեր հաստատելու համար էր, լուրեր՝ զոր նախագուշակած էր իր երազը։

Սակայն իր տեսիլքին հակառակը դուրս եկաւ։ Ստուգիւ իր տիկինն էր մեռնողը եւ ինքը չէր կրնար վերակենդանացնել զայն ոեւէ համբոյրով։ Ուստի հրամայեց որ ձիերը պատրաստեն, որովհետեւ վճռեց այդ գիշեր իսկ Վերօնա այցելել եւ իր տիկինը դամբարանին մէջ տեսնել։

Զարութիւնը արագ կը մտնէ յուսահատ մարդոց մտքին մէջ։ Այսպէս Ռոմէօ յիշեց Մանթուացի աղքատ դեղագործ մը որուն խանութէն անցած էր վերջերս։ Դեղագործը մուրացիկի կերպարանք ունենալով՝ սոված կը թուէր, խանութին աղտոտ դարակներուն վրայ շարուած պարապ տուփերը խեղճուկ տեսք մը կը պարզէին, կային ուրիշ նշաններ ծայրայեղ թշուառութեան։ Այս բոլորէն դատելով, այն ատեն Ռոմէօ ըսած էր որ (գուցէ կասկածներ ունէր որ իր աղէտալի կեանքը կրնար այնքա՜ն յուսահատ վախճանի մը յանգիլ), «երբ մէկը թոյնի պէտք ունենար, այս խեղճ աղքատը պիտի վաճառէր, թէեւ Մանթուայի օրէնքով մահուան պատժին ենթարկուէր»։ Հիմա իր այս խօսքերը միտքը եկան. գնաց փնտռեց դեղագործը որ խղճահար երեւոյթ մը առաւ, սակայն երբ Ռոմէօ անոր ոսկի առաջարկեց, մետաղ մը զոր մարդուն աղքատութիւնը

*չէր կրնար մերժել, ան թոյնի տեսակ մը ծախեց անոր: Եթէ այդ թոյնը կլլէր մէկը, բացատրեց դեղագործը, եւ քսան մարդու ուժ ալ ունենար, պիտի մեռնէր շուտով:*

*Ռոմէօ թոյնը հետը առնելով դէպի Վերօնա ճամբայ ելաւ, որպէսզի անգամ մը տեսնէր դամբարանին մէջ իր սիրելի տիկինը, այսինքն երբ իր տեսողութիւնը գոհացնէր, պիտի խմէր թոյնը եւ թաղուէր անոր կողքին:*

*Կէս գիշերին Վերօնա հասաւ Ռոմէօ, գտաւ ժամուն բակը որուն մէջտեղը կը կանգնէր Գափուլէթներու հինաւուրց դամբարանը: Ռոմէօ հոգացած էր ճրագ մը, բահ մը եւ կործող երկաթ. արդէն սկըսած էր կոտրելով բանալ յիշատակարանը, երբ ձայն մը ընդհատեց զինքը եւ հրամայեց կենալ իր ապօրէն գործէն: Ձայնը* անարգ Մօնթակու *կոչեց Ռոմէօն:*

*Երիտասարդ Կոմս Փարիսն էր ան, որ Ճիւլիէթի գերեզմանը եկած էր, գիշերուան յարմար ժամուն, ծաղիկներ սփռելու եւ արտասուելու գերեզմանին վրայ անոր որ իր հարսը պիտի ըլլար:*

*Փարիս չէր գիտեր թէ Ռոմէօն ի՛նչ շահագրգըռութիւն ունէր մեռեալներուն հետ, բայց գիտնալով որ անիկա Մօնթակու մըն էր, եւ երդուեալ թշնամի մը Գափուլէթներու, ինչպէս կ՚ենթադրէր, դատեց որ ան եկած էր գիշերով անզգամ նախատինքներ ընելու մեռեալ մարմիններուն, հետեւաբար զայրագին ձայնով մը հրամայեց անոր կենալ, եւ ուզեց ձերբակալել տալ իբրեւ ոճրագործ մը որ Վերօնայի օրէնքներով դատապարտուած էր մեռնելու, եթէ Վերօնայի պարիսպներէն ներս գտնուէր:*

*Ռոմէօ խնդրեց Փարիսէ թողուլ զինքը, եւ սպառնաց հոն պառկող Թիպալտի բախտով, առա-*

ջարկեց չհրաւիրել իր զայրոյթը, չծանրաբեռնել իր գլխուն վրայ ուրիշ մեղք մըն ալ, բռնադատելով որ սպանութիւն գործէ :

Սակայն կոմսը նախատինքով մերժեց սպառնալիքը եւ ձեռքը անոր վրայ դրաւ իբր ոճրագործի մը : Ռոմէօ դիմադրեց : Կռուեցան ու Փարիս ինկաւ :

Երբ Ռոմէօ լոյսի մը օգնութեամբ եկաւ տեսնելու թէ ո՛վ է ան զոր սպաննած էր, հասկցաւ որ Փարիսն էր, այն Փարիսը, որ ինչպէս տեղեկացած էր Մանթուայէն եկած ատեն, ամուսնացած պիտի ըլլար Ճիւլիէթի հետ : Ուստի բռնեց սպաննուած երիտասարդին ձեռքէն իբրեւ մէկըը որ դժբախտութիւնը ընկեր ըրած էր : Ռոմէօ ըսաւ թէ կ'ուզէր զայն թաղել յաղթական գերեզմանի մը մէջ, այսինքն Ճիւլիէթի գերեզմանին մէջ զոր ահա կը բանար :

Հոն՝ դամբարանին մէջ կը հանգչէր իր տիկինը, հանդուցեալ մը որուն մահը զօրութիւն չէր ունեցած դիմագիծ մը կամ գոյն փոխել անոր անզուգական գեղեցկութենէն, կամ կարծես մահը սիրահար մը ըլլար եւ իբրեւ զարշելի հրէշ՝ պահէր հոն իր հաճոյքին համար, որովհետեւ Ճիւլիէթ կը պառկէր դեռ թարմ ու ծաղկափթիթ, ինչպէս ինկած էր քնանալու, երբ խմած էր ընդարմացուցիչ դեղաջուրը :

Անոր քով կը տարածուէր Թիպալտ իր արիւնաթաթաւ պատանքին մէջ : Ռոմէօ տեսնելով զայն՝ ներողութիւն խնդրեց անկենդան մարմնէն եւ Ճիւլիէթի սիրոյն համար հօրեղբօրորդի կոչեց · ըսաւ թէ անոր շնորհ մը ընելու վրայ էր, թշնամին մահուան ենթարկելով (այսինքն ինքզինքը Ծ. Թ.) :

Արդ, Ռոմէօ առաւ իր վերջին հրաժեշտը, համբուրելով իր տիկնոջ շրթունքները : Ցնցեց չարչարանքի բեռը իր խոնջած մարմնէն, կլլելով այն

թոյնը զոր դեղագործը իրեն ծախած էր :

Թոյնին ազդեցութիւնը ճակատագրական եւ իրական եղաւ, բոլորովին հակառակը այն կեղծ դեղաջուրին զոր Ճիւլիէթ ըմպած էր եւ որուն ազդեցութիւնը գրեթէ կը վերջանար :

Ճիւլիէթ արթննալու վրայ էր եւ դանդատելու որ Ռոմէօ ժամանակին չէր հասած, կամ շատ շուտ եկած էր :

Հիմա ժամանակը հասած էր որ վանական եղբօր խոստման համաձայն Ճիւլիէթ արթննար, իսկ ինքը Լօրէնս իմանալով թէ Մանթուա ուղարկած իր նամակները, նամակատարին դժբախտ յապաղման հետեւանքով, չէին հասած երբեք Ռոմէօի ձեռքը, կուգար անձամբ, փետատ մը եւ լապտեր մը առած, ազատելու բանտէն տիկինը :

Սակայն վանական Լօրէնս զարմացաւ տեսնելով որ լոյս մը արդէն կը վառէր Գափուլէթի յիշատակարանին մէջ, ինչպէս նաեւ սուրեր ու արիւն անոր մօտ :

Ենթադրութեան մը վրայ խորհիլ կարենալէ առաջ, որպէսզի երեւակայէր թէ ինչպէս այս մահացու դիպուածները պատահած էին, Ճիւլիէթ սթափեցաւ իր անզգայութենէն : Տեսնելով վանականը իր մօտ, յիշեց դտնուած տեղը, եւ հոն դտնուելու առիթը, ուստի փնտռեց Ռոմէօն : Սակայն, վանականը աղմուկ մը լսելով, հրաւիրեց Ճիւլիէթը դուրս ելլել այդ մահուան վայրէն եւ սթափիլ անբնական թմբիրէ, որովհետեւ աւելի մեծ զօրութիւն մը՝ որուն չէին կրնար հակառակիլ, ընդդիմացած էր իրենց նպատակներուն :

Բայց վանական Լօրէնս եկող մարդերու աղմուկէն վախնալով փախաւ :

Ճիւլիէթ երբ տեսաւ սեղմուած բաժակը իր

ճշմարիտ սիրողին ձեռքերուն մէջ, կռահեց որ թոյնն էր եղած պատճառը անոր մահուան:

Ինքն ալ կ'ուզէր խմել բաժակին մրուրը, եթէ մնացած ըլլար, ուստի համբուրեց Ռոմէօի դեռ ջերմ շրթունքները, ծծել փորձելով թոյնի հետքեր անոնց վրայ:

Այս, Ճիւլիէթ լսելով հասնող մարդերու աւելի մօտ աղմուկը, հանեց պատեանէն դաշոյն մը զոր կը կրէր, եւ դաշունահար ընելով ինքզինքը, մեռաւ իր հաւատարիմ Ռոմէօի կողքին:

Մինչ այս՝ պահակները ժամանած էին. Փարիս կոմսին սպասաւորներէն մէկը որ ականատես եղած էր իր տիրոջ եւ Ռոմէօի միջեւ տեղի ունեցած կռիւին, վտանգի նշանը տուած ըլլալով, քաղաքացիները տեղեկացած էին եւ վեր վար շրջագայելով Վերօնայի փողոցներէն, շփոթած կը բացագանչէին, — Փարի՛ս, Ռոմէ՛օ, եւ Ճիւլի՛էթ, որովհետեւ դէպքին լուրը անկատար եւ տարտամ կերպով հասած էր անոնց. աղմուկը մինչեւ այն աստիճանին հասաւ որ ազնուական Մօնթակու եւ ազնուական Գափուլէթ, իշխանն ալ հետ՝ իրենց անկողիններէն դուրս ելան հարցափորձելու խառնաշփոթութեան պատճառները: Վանական եղբայրը ձերբակալուած էր մի քանի պահակներէ եւ ժամուն բակէն կուգար դողալով, հառաչելով ու արտասուելով կասկածելիօրէն:

Մեծ բազմութիւն մը հաւաքուած ըլլալով Գափուլէթներու յիշատակարանին մօտ, Վերօնայի իշխանը հրամայեց վանական Լօրէնսի, յայտնել գիտցածները այս օտարոտի եւ աղէտալի դէպքերու մասին:

Հոն՝ Մօնթակու եւ Գափուլէթ ծերունի ազնուականներու ներկայութեանը՝ վանականը հաւա-

տարիմ կերպով պատմեց անոնց զաւակներուն ճակատագրական սիրոյ պատմութիւնը, պատմեց իր ստանձնած բաժինը անոնց ամուսնութեան քաջալերութեան մէջ, այն յոյսով որ այդ միութիւնը վերջ պիտի դնէր երկու ընտանիքներու միջեւ գոյութիւն ունեցող երկարատեւ վէճերուն։

Թէ ի՛նչպէս հոն մահացած Ռոմէօն Ճիւլիէթի ամուսինն էր, եւ անշնչացած Ճիւլիէթ՝ Ռոմէօի հաւատարիմ կինը։ Թէ ի՛նչպէս պատշաճ առիթ մը գտնելէ առաջ որ հրատարակէր անոնց ամուսնութիւնը, ուրիշ ամուսնութիւն մը կարգադրուած էր Ճիւլիէթի համար։ Երկրորդ ամուսնութեան մը ոճիրէն խուսափելու համար, Ճիւլիէթ կուլ տուած էր քնաբեր դեղը, ինչպէս ինքը՝ վանականը խրատած էր, մինչ ամէնքը կարծեցին թէ մեռած էր ան։ Թէ ի՛նչպէս միեւնոյն ատեն ինք գրած էր Ռոմէօի գալ առնելու իր կինը անկէ, երբ դեղաջուրին ազդեցութիւնը պիտի դադրէր, եւ թէ ինչպիսի՛ դժբախտ վրիպումով նամակները չհասան երբեք Ռոմէօի։

Վանական եղբայրը ասկէ աւելի հեռուն չէր կրնար ըսել պատմութիւնը, միայն գիտէր որ հոն անձամբ եկած էր Ճիւլիէթը ազատելու համար մահուան վայրէն եւ կոմս Փարիսն ու Ռոմէօն սպաննըւած գտած էր։

Գործողութեանց մնացած մասը տուաւ սպասաւորը իր պատմութիւնով։ Ան տեսած էր Փարիսի եւ Ռոմէօի կռիւը, ինչպէս նաեւ այն ծառան որ եկած էր Մանթուայէն Ռոմէօի հետ։ Հաւատարիմ սիրողը՝ Ռոմէօ՝ նամակներ տուած էր այս ծառային յանձնելու համար իր հօրը այն պարագային, երբ մեռնէր։ Այս նամակները վանականին խօսքերը կը հաստատէին. անոնց մէջ Ռոմէօ կը խոստովանէր

Ճիւլիէթի հետ իր ամուսնութիւնը, կ'աղերսէր իր ծնողքին ներողամտութիւնը, կը տեղեկացնէր թոյն դնելը աղքատ դեղագործէն, կը յայտնէր դամբարանը գալուն իր նպատակը՝ որ Ճիւլիէթի կողքին մեռնիլ եւ պառկիլ էր։

Բոլոր այս պարագաները իրարու կը համաձայնէին աւելի չքմեղելու համար վանականը այս կնճռոտ խողխողումներու մէջ մաս ունենալու կարելի ենթադրութենէն։ Ան լաւ նպատակով ըրած էր ամէն բան, բայց չափազանց արուեստական ու վարպետ հնարքներուն աննախատեսելի հետեւանքները չէր կրցած գուշակել։

Հիմա, իշխանը դառնալով ազնուականներուն՝ Մոնթակուի եւ Գափուլէթի, կշտամբեց զանոնք իրենց գազանային եւ անբնական թշնամութեանց համար, ցոյց տուաւ անոնց թէ երկինք ի'նչ պատիժ սահմանած էր այդպիսի մեղքերու, եւ եղանակներ գտած՝ մինչեւ անգամ իրենց զաւակներու սիրահարութեան միջոցով պատժելու անոնց ատելութիւնը։

Գալով այս հին հակառակորդներուն՝ որոնք այլեւս թշնամիներ չէին, համաձայնեցան իրենց երկարատեւ պայքարը թաղել իրենց զաւակներու գերեզմանին մէջ։ Ազնուական Գափուլէթ խնդրեց ազնուական Մոնթակուէն ձեռքը տալ եւ եղբայր կոչեց զայն։ Ասիկա ճանաչում մըն էր իրենց միութեան որ կը նուիրագործուէր դժբախտ երիտասարդներու ամուսնութեամբը։ Եւ այս ձեռքի սեղմումը ի նշան հաշտութեան բոլորն էր որ կը պահանջէր աղջկան այրիութեան ժամանակ էրիկէն տրուելիք հասոյթէն։ Սակայն ազնուական Մոնթակու յայտնեց թէ աւելին պիտի տար, որովհետեւ կ'ուզէր զուտ ոսկիէ արձան մը կանգնել Ճիւլիէթի, որպէսզի քանի Վերոնա պահէր իր անունը,

*ո՛չ մէկ դէմք այնքան գնահատուէր իր հարստութեան եւ ձեռակերտութեան համար՝ որքան ճշմարիտ եւ հաւատարիմ Ծիւլիէթի դէմքը։*

*Ազնուական Մօնթակու ի փոխարէն ըսաւ թէ ինքն ալ ուրիշ արձան մը պիտի կանգնէր Ռոմէօի համար։*

*Այսպէս, երբ արդէն շատ ուշ էր, այս ծերունի խեղճ ազնուականները կը ջանային զիրար գերազանցել փոխադարձ մարդավարութեամբ, մինչդեռ անցեալին մէջ այնքա՛ն մահացու եղած էին իրենց կատաղութիւնն ու թշնամութիւնները։ Այսպէս ո՛չ մէկ բան, այլ միայն իրենց զաւակներու ահեղ ջընջումը — խե՛ղճ զոհեր անհամաձայնութեան եւ կըռիւներու — կրնար վերցնել ազնուական ընտանիքներու արմատացած ատելութիւններն ու նախանձները։*

# ՓՈԹՈՐԻԿԸ

Ծովուն մէջ կղզի մը կար որուն միակ բնակիչներն էին Բրօսբէրօ անուն մարդ մը եւ իր դուստրը Միրանտա որ շատ գեղեցիկ երիտասարդուհի մըն էր: Այս աղջիկը այնչափ մատաղ տարիքի մէջ եկած էր այս կղզին, որ չէր յիշեր թէ ուրիշ մարդկային դէմք տեսած էր, իր հօրը դէմքէն զատ:

Երկուքը միասին կ'ապրէին քարայրի մը կամ խոռոչի մը մէջ որ ժայռէ մը կերտուած էր, քանի մը բաժանումներով: Մէկը Բրօսբէրօի ուսումնատեղին էր ուր կը պահէր ան իր գրքերը եւ որոնք գլխաւորաբար մոգականութեան մասին գրուած էին: Այս ուսումը այն ժամանակ շատ կը զբաղեցնէր կրթուած մարդիկը, եւ Բրօսբէրօ իրեն շատ օգտակար գտած էր զայն, որովհետեւ տարօրինակ բախտով մը նետուած ըլլալով այս ամայի կղզիին վրայ, ստուգած էր որ կղզին հմայուած էր Սիքօրաքս անուն կախարդ կնոջմէ մը: Կախարդուհին Բրօսբէրօի գալէն քիչ ժամանակ առաջ մեռած էր, բայց նախ քան մահը ծառերու կոճղերուն մէջ բանտարկած էր կղզիին այն բոլոր բարի ոգիները որոնք մերժեր էին գործադրել անոր չար հրամանները:

Իր մոգական արուեստին շնորհիւ, Բրօսբէրօ ահա ազատած էր այդ ազնիւ ոգիները որոնք այնուհետեւ հնազանդեցան անոր կամքին:

Արիէլ այս ոգիներու գլխաւորն էր:

Զուարթ ու փոքր ուրուական մըն էր Արիէլ որուն բնութեան մէջ չարասէր բան մը չի կար, միայն քիչ մը հաճոյք կը զգար երբ կը չարչարէր տը-

դեղ հրէշ մը՝ որ Գալիպան կը կոչուէր։ Արիէլ ոխ ունէր անոր դէմ, որովհետեւ անիկա զաւակն էր իր հին թշնամիին՝ Սիքորաքսի։ Բրոսբերօ անտառներուն մէջ գտաւ այս Գալիպանը որ արտառոց տձեւ բան մը ըլլալով մարդէ աւելի կապիկի նմանութիւն ունէր։ Ասով հանդերձ զայն իր խուցը տարաւ եւ խօսիլ սորվեցուց անոր։ Բրոսբերօ Գալիպանի հետ ազնուութեամբ կ՚ուզէր վարուիլ, սակայն անիկա դէշ բնաւորութիւն մը ժառանգած էր իր Սիքորաքս մօրմէն եւ չէր կրնար լաւ կամ օգտակար բաներ սորվիլ։ Ուստի ստրուկի մը պէս գործածեց զայն, փայտ կտրել կուտար եւ ամենէն քրտնաջան գործերը կատարելու կը ղրկէր, իսկ Արիէլ պաշտօն ունէր զայն բռնադատելու այս ծառայութիւններուն մէջ։

Երբ Գալիպան կը ծուլանար, կամ երեսի վրայ կը թողուր իր գործը, Արիէլ, որ անտեսանելի էր բոլոր աչքերուն, բացի Բրոսբերօէն, կուգար վարպետութեամբ կը կսմթէր զայն, երբեմն ալ կը գըլտորէր տիղմին մէջ· այն ատեն Արիէլ կապիկի նմանողութեամբ բերան կը ծամածռէր անոր, յետոյ արագութեամբ փոխելով իր կերպարանքը, ոզնի կը ձեւանար եւ կը պառկէր թաւալգլոր Գալիպանի ճամբուն վրայ որմէ կը քաշուէր հրէշը, վախնալով որ ոզնիին փուշերը իր բոպիկ ոտքերը պիտի խայթէին։

Այսպիսի սարսափեցնող զանազան խաղերով Արիէլ յաճախ կը չարչրկէր, ամէն անգամ որ Գապան կը լքէր գործը զոր Բրոսբերօ հրամայած կ՚ըլլար կատարելու։

Ասանկ զօրաւոր ոգիներ իր կամքին հպատակեցընելով, Բրոսբերօ անոնց միջոցաւ կրցաւ հրամայել հովերուն եւ ծովու ալիքներուն։

Անգամ մը, իր հրամանով, այս ոգիները փո-

թորիկ մը բարձրացուցին ծովուն վրայ, եւ Բրօս-բերօ իր աղջկան ցոյց տուաւ նաւ մը որուն մէջ «իրենց պէս ապրող էակներ» կային, բայց նաւը կը պայքարէր վայրագ ալիքներուն դէմ որոնք ամէն վայրկեան կը սպառնային զայն կլլել։

Այս տեսարանին առջեւ, աղջիկը ըսաւ հօրը.

«Ո՛վ սիրելի հայր, եթէ քու արուեստովդ բարձրացուցիր այս ահարկու փոթորիկը, գոնէ գութ ունեցիր նաւարկողներու տագնապին վրայ։ Տե՛ս, նաւը կտոր կտոր պիտի ըլլայ, խե՜ղճ հոգիներ, ամէնքը պիտի կորսուին։ Եթէ կարողութիւն ունենայի, ծովը կ՚ընկղմէի գետնին տակը, քան կը թոյլատրէի որ հէգ նաւը քանդուէր իր մէջ եղած բոլոր թանկագին հոգիներով»։

— «Այդքան մի՛ զարմանար, դուստր Միրանտա, պատասխանեց Բրօսբերօ, տակաւին կորուստ մը չի կայ, որովհետեւ պատուիրած եմ որ նաւուն մէջ ոչ ոք վնասուի. ինչ որ ըրած եմ ցարդ, քու խնամքիդ համար եղած է, սիրելի զաւակս. դուն չես գիտեր թէ ո՛վ ես, կամ ուրկէ՞ եկար. իմ նկատմամբ եւս աւելի բան մը չգիտես, միայն գիտես որ ես քու հայրդ եմ ու կը բնակիմ այս աղքատիկ քարայրը։ Կրնա՞ս յիշել ժամանակ մը որ այս խուցը գալէդ առաջ եղած ըլլայ. կը խորհիմ որ չես կրնար, որովհետեւ երեք տարեկան իսկ չէիր այն ատեն»։

— «Անշուշտ կրնամ», ըսաւ Միրանտա։

— «Ի՞նչ բան», հարցուց նորէն Բրօսբերօ, «տո՞ւն, ա՞նձ, ըսէ՛ ինծի, ի՛նչ կրնաս յիշել, զաւակս»։

— «Երազի մը վերյիշման պէս կը թուի ինծի, չորս կամ հինգ կիներ ունէի ատեն մը որոնք կը սպասարկէին ինծի, այնպէս չէ՞»։

— «Այո՛, ունէիր եւ ունիս։ Սակայն ի՞նչպէս կ'ըլլայ որ այդ յիշատակը դեռ կ'ապրի մտքիդ մէջ։ Կը յիշե՞ս թէ ինչպէ՛ս եկար հոս»։

— «Ո՛չ», ըսաւ Միրանտա, «բան մը չեմ յիշեր»։

— «Տասներկու տարի առաջ», շարունակեց Բրօսբերօ, «Միլանի դուքսն էի, իսկ դուն՝ իշխանուհի մը եւ իմ միակ ժառանգս։ Աւելի երիտասարդ եղբայր մը ունէի, Անտօնիօ անուն, եւ անոր կը վստահէի ամէն բան, իսկ որովհետեւ ես առանձնութեան եւ խոր ուսումնասիրութեան մոլին էի, ուստի առհասարակ պետական գործերու տնօրինութիւնը կը ձգէի քու հօրեղբօրդ կամ իմ կեղծ եղբօրս վրայ։ Այսպէս, լքելով բոլոր աշխարհային նպատակները, թաղուեցայ գրքերուս մէջ եւ ամբողջ ժամանակս նուիրեցի մտքիս բարելաւումին։ Սակայն եղբայրս՝ Անտօնիօ, ուժս ձեռք անցընելով, սկսաւ ինքզինքը դուքս կարծել եւ այն առիթը զոր տուի իրեն՝ հպատակներուս մէջ ժողովրդականութիւն վաստկելու համար, անոր յոռի բնաւորութեան մէջ հպարտ փառասիրութիւն մը արթնցուց զիս զրկելու իմ դքսութենէս։ Այս բանը յաջողցուց ան Նափօլիի թագաւորին օգնութեամբ որ զօրաւոր իշխան մըն էր եւ իմ թշնամիս»։

— «Ինչո՞ւ համար մեզ չփճացուցին այդ պահուն», հարցուց Միրանտա։

— «Որովհետեւ չհամարձակեցան», ըսաւ հայրը, «զաւա՛կս, ժողովուրդը այնչափ սէր ունէր վրաս, որ Անտօնիօ լաւ համարեց մեզ նաւի մը մէջ տանիլ։ Երբ ծովուն վրայ քանի մը փարսախ բացուեցանք, ան ստիպեց մեզ փոխադրուիլ փոքրիկ նաւակի մը մէջ, առանց սարքուածքի, առագաստի կամ կայմի, եւ հոն լքեց մեզ որ կորսուինք, ինչպէս

*ինք կը խորհէր ։*

*Բայց իմ արքունիքիս Գոնզալոներէն բարի իշխան մը, որ զիս կը սիրէր, գաղտնի՝ նաւակին մէջ դրած էր ջուր, պաշարեղէն, գործիներ, եւ գրքեր զորոնք իմ դքսութենէս վեր կը գնահատէի ։*

*— «Ա՜հ, հայրիկ, ըսաւ Միրանտա, արդեօք որչափ նեղութիւն պատճառած ըլլալու եմ քեզի այն ատեն» ։*

*— «Ո՛չ սիրականս, պատասխանեց Բրոսբերո, դուն փոքրիկ քերովբէ մըն էիր որ պահպանեցիր զիս ։ Քու անմեղունակ ժպիտներդ դիմադրել տուին ինծի իմ նեղութիւններուս ։ Մեր սնունդը բաւեց մինչեւ որ ցամաք ելանք այս ամայի կղզիին վրայ ։ Այնուհետեւ գլխաւոր զբաղումս եղաւ սորվեցնել քեզի, Միրանտա՛, իսկ դուն լաւ օգտուեցար իմ դասերէս» ։*

*— «Թո՛ղ երկինքը շնորհակալ ըլլայ, իմ սիրելի հայրս, ըսաւ Միրանտա, բայց ըսէ՛ հիմա, կ՚աղաչեմ, Տէ՛ր, թէ ի՛նչ պատճառով այս փոթորիկը հանեցիր» ։*

*— «Գիտցի՛ր ուրեմն, ըսաւ հայրը, որ այս փոթորիկին միջոցով իմ թշնամիներս՝ Նափոլիի թագաւորը եւ իմ անգութ եղբայրս ցամաք նետուեցան մեր կղզիին վրայ» ։*

*Այսպէս խօսելէ ետք, Բրոսբերո մոգական գաւազանովը մեղմիւ դպաւ իր աղջկանը որ խոր քուն մտաւ, որովհետեւ ոգին Արիէլ ճիշդ այդ ատեն ներկայացաւ իր տիրոջ առջեւ փոթորիկին նկարագրութիւնը ընելու եւ իմացնելու թէ ի՛նչպէս նաւաբեկեալները կարգադրած էր ։ Թէպէտ ոգիները միշտ անտեսանելի էին Միրանտայի աչքին, բայց Բրոսբերո յարմար չտեսաւ որ դատարկ օդին հետ իր խօսակցութիւնը լսէր անիկա, ինչպէս պիտի կարծէր ։*

— «Լա՛ւ, իմ քաջ ողիս Արիէլ, ըսաւ Բրօսբէրօ անոր, ի՞նչպէս իրագործեցիր քեզի յանձնած գործս»։

Արիէլ աշխոյժ կերպով նկարագրեց փոթորիկը եւ նաւազներուն սարսափները, թէ ինչպէ՛ս Թագաւորին տղան՝ Ֆերտինանտ, առաջին անգամ ծովը ցատկեց, եւ հօրը աչքին այնպէս երեւցաւ որ իր սիրելի տղան կլանուեցաւ ալիքներէն ու կորսուեցաւ։

— «Սակայն ապահով է ան», աւելցուց Արիէլ, «կղզիին մէկ անկիւնը կը գտնուի, նստած է թեւերը ծալլած տխրութեամբ, եւ կ՚ողբայ կորուստը իր հօրը՝ Թագաւորին զոր խեղդուած կը համարի։ Ֆերտինանտի գլխուն մէկ մազն անգամ վնասուած չէ, եւ իր իշխանական հագուստները որոնք թրջըւած են ծովուն ալիքներուն մէջ, աւելի թարմ կ՚երեւին քան առաջ»։

— «Աղէկ է, իմ փափկասուն Արիէլս», ըսաւ Բրօսբէրօ, «հոս բեր զայն. դուստրս պէտք է տեսնէ այս երիտասարդ իշխանը։ Բայց ո՞ւր են Թագաւորն ու եղբայրս»։

— «Թողուցի որ Ֆերտինանտը փնտռելու ելլեն, բայց զայն գտնելու քիչ յոյսեր ունին, կարծելով որ տեսան անոր կորսուիլը ջուրին մէջ։ Նաւուն մարդոցմէ ոչ մէկը կը պակսի, թէպէտ իւրաքանչիւրը ինքզինքը միակ ազատուածը կը կարծէ, իսկ նաւը, թէեւ անտեսանելի անոնցմէ, ապահով կը հանգչի նաւահանգստին մէջ»։

— «Արիէ՛լ, ըսաւ Բրօսբէրօ, քու պարտականութիւնդ հաւատարմօրէն կատարեցիր, սակայն աւելի գործ ունիս դեռ»։

— «Ալ գործ կա՞յ», հարցուց Արիէլ, «Տէր, թոյլ տուէք որ ձեզի յիշեցնեմ այն խոստումը զոր տուիք ազատութեանս համար։ Կը խնդրեմ որ յի-

չէք իմ մատուցած արժէքաւոր ծառայութիւններս, սուտեր չըսի, սխալներ չըրի, այլ միայն ծառայեցի ձեզի առանց ոխի եւ տրտունջի»:

— «Ի՞նչպէս հիմա չես վերյիշեր թէ ի՛նչ չարչարանքէ ազատեցի քեզ. մոռցա՞ր անզգամ կախարդուհի Սիքորաքսը որ ծերութենէն ու նախանձէն երկու տակ եղած էր: Ո՞ւր ծնած էր ան, խօսէ՛, ըսէ՛ ինծի»:

— «Ալժիէրի մէջ, տէ՛ր», ըսաւ Արիէլ:

— «Այդպէս էր ուրեմն, հա՞», վրայ բերաւ Բրօսբերօ, «պէտք է վերստին պատմեմ թէ դուն ի՛նչ էիր, որովհետեւ կը տեսնեմ որ չես վերյիշեր ամէն բան: Այդ գէշ կախարդուհին՝ Սիքորաքս, իր կախարդական դաւերուն համար որոնք սոսկալի են մարդկային լսողութեան, արտաքսուեցաւ Ալժէրէն եւ նաւազները հոս ձգեցին զինքը: Եւ որովհետեւ դուն չափազանց փափկասուն ոգի մըն էիր որ կարենայիր գործադրել անոր անզգամ հրամանները, ուստի փակեց քեզ ծառի մը մէջ, ուր կը ճչայիր, երբ գտայ քեզ: Յիշէ՛ որ ազատեցի քեզ այդ չարչարանքէն»:

— «Ներեցէք ինծի, սիրելի Տէր», ըսաւ Արիէլ, ամօթահար եղած երախտամոռ երեւելէն, «պիտի հնազանդիմ ձեր հրամաններուն»:

— «Հրամաններս կատարէ՛, եւ քեզ ազատ պիտի թողում»:

Բրօսբերօ նոր հրահանգներ տուաւ Արիէլի որ հեռանալով, նախ գնաց հոն՝ ուր թողած էր Ֆերտինանտը: Ան նստած էր մարգագետնին վրայ միեւնոյն մելամաղձիկ դիրքով:

— «Ա՛հ, իմ երիտասարդ պարոնս», ըսաւ Արիէլ, երբ տեսաւ զայն, «ձեզ շուտով պիտի փոխադրեմ այստեղէն, պէտք է տանիմ անհրաժեշտօ-

րէն օրիորդ Միրանտայի առջեւ որպէսզի տեսնայ ան ձեր սիրուն անձը։ Եկէ՛ք, պարոն, հետեւեցէք ինծի»։

Ոգին սկսաւ երգ մը երգել որուն մէջ կը յայտնէր թէ Ֆերտինանտի հայրը հինգ դրկաչափ ջուրերու տակ կը պառկէր, ոսկորները բուստերու վերածուած էին, աչքերը՝ մարգարիտներ, ու այլեւս չի կար բան մը որ զայն խամրեցնէր։ Թագաւորը ծովափոխութեան ենթարկուած էր ու հարուստ եւ զարմանահրաշ բան մը պիտի ըլլար։ Իսկ յաւերժահարսերը անոր մահազանգը կը հնչեցնէին ամէն ժամ, եւ որուն ձայները կուգային արդէն։

Ինչպանը որ տխմար մտավխճակի մը մէջ կը գտնուէր, իր հօրը կորստեան այս տարօրինակ լուրը առնելուն պէս, չուտով արթնցաւ եւ ապշութեամբ հետեւեցաւ Արիէլի ձայնի հնչումներուն։ Ու վերջապէս հասան Բրօսբերօի եւ Միրանտայի առջեւ որոնք նստած էին խոշոր ծառի մը չուքին տակ։ Արդ, ինչպէս ըսինք, Միրանտա, իր հօրմէն զատ, ուրիշ մարդ բնաւ երբեք տեսած չէր։

— «Միրանտա՛, ըսէ ինծի թէ ի՛նչու այդպէս կը նայիս անդին», ըսաւ Բրօսբէրօ։

— «Ո՜վ հայր», պատասխան տուաւ Միրանտա տարօրինակ զարմանքով, «ապահովաբար ոգի մըն է այն։ Տէ՜ր, ինչպէ՜ս իր չուրջը կը նայի, հաւատա ինծի, հա՛յր, գեղեցիկ արարած մըն է։ Արդեօք ոգի մը չէ՞»։

— «Ո՛չ, աղջիկ, ան կ'ուտէ, կը քնանայ, եւ զգայարանքներ ունի այնպէս, ինչպէս մենք ունինք։ Այս երիտասարդը որ կը տեսնես, նաւուն մէջն էր։ Հիմա փոխուած է քիչ մը վիշտէն, այլապէս պիտի կրնայիր վայելուչ անձ մը նկատել զինքը, եւ որովհետեւ կորսնցուցած է իր ընկերները, ուստի կը

թափառի աստանդական զանոնք գտնելու համար»:

Միրանտա որ կը խորհէր թէ բոլոր մարդիկ լուրջ դէմքեր ու գորշ մազեր ունէին իր հօրը նման, հրճուեցաւ այս գեղեցիկ երիտասարդին երեւումէն, իսկ Ֆերտինանտ, տեսնելով նազելի օրիորդ մը այս ամայի կղզիին մէջ ու լսելով տարօրինակ ձայներ, կը սպասէր հրաշալիքներ տեսնել: Իշխանը կը մտածէր թէ կախարդուած կղզիի մը մէջ կը գտնուի, ու Միրանտա տեղին աստուածուհին էր, որով իբրեւ այդպիսին սկսաւ խօսիլ անոր հետ:

Միրանտա երկչոտութեամբ պատասխանելով անոր, ըսաւ թէ ինքը աստուածուհի չէր, այլ պարզ աղջիկ մը, եւ կը պատրաստուէր իր պատմութիւնը ընել, երբ Բրոսբերո միջամտեց:

Ան գոհ էր որ երկուքն ալ իրարու կը հիանային, որովհետեւ նշմարեց որ առաջին նայուածքով իսկ իրարու սիրահարուեցան անոնք: Սակայն, Բրոսբերո, փորձելու համար Ֆերտինանտի հաստատամտութիւնը, որոշեց կարգ մը դժուարութիւններ հանել անոնց առջեւ, ուստի առաջ անցաւ եւ խիստ երեւոյթով մը խօսք ուղղեց իշխանին: Ըսաւ անոր թէ իբրեւ լրտես եկած էր կղզին իրմէ խլելու նպատակով, մինչ ինք՝ իբրեւ տէր կղզիին խիստ պիտի վարուէր հետը:

«Հետեւէ՛ ինծի, վիզդ եւ ոտքերդ իրար պիտի կապեմ: Դուն ծովջուր պիտի խմես, իսկ ծովամայրը, թառամած արմատներն ու խողկաղինի կեղեւները քու սնունդդ պիտի ըլլան»:

— «Ո՛չ», պատասխանեց Ֆերտինանտ, «պիտի դիմադրեմ այսպիսի հիւրընկալութեան մը, մինչեւ որ չտեսնեմ աւելի զօրաւոր թշնամի մը»: Եւ քաշեց սուրը, բայց Բրոսբերո, շարժելով իր մոգական գաւազանը, զայն կեցած տեղը գամեց եւ ան

ուժ չունեցաւ շարժելու:

Միրանտա փաթթուեցաւ իր հօրը եւ ըսաւ. «ինչո՞ւ այդքան անազնիւ ես հայր, գթա՛, ես իր երաշխաւորը կ՚ըլլամ: Անիկա երկրորդ մարդն է որ տեսայ եւ ճշմարիտ մարդ մը կը թուի ինծի»:

— «Լռութիւն», ընդմիջեց հայրը, «եթէ բառ մը աւելի ըսես, քեզ պիտի յանդիմանեմ, աղջի՛կ. ի՛նչ, խաբեբայի մը փաստաբա՞նը կ՚ըլլաս. դուն կը խորհիս որ այսպիսի ընտիր մարդեր չի կան, որովհետեւ ասիկա ու Գալիպանը տեսած ես: Յիմա՛ր աղջիկ, մարդերու մեծ մասը նոյնչափ կը գերազանցէ անիկա, որչափ ան կը գերազանցէ Գալիպանը»:

Բրօսբերօ այս խօսքերը յատկապէս ըսաւ փորձելու համար իր աղջկան հաստատամտութիւնը, բայց աղջիկը պատասխան տուաւ.

—«Իմ սէրս խոնարհագոյն է, ես փափաք չունիմ աւելի շնորհալի մարդ մը տեսնելու»:

Բրօսբերօ իշխանին դառնալով՝ «ետեւէս եկուր, դուն կարողութիւն չունիս ինծի չհնազանդելու»:

— «Իրաւ, չունիմ», պատասխանեց Ֆերտինանտ, եւ չիմանալով որ դիւթանքով զրկուած էր դիմադրութեան բոլոր ուժէն, զարմացաւ որ ինքզինքը տարօրինակ կերպով բռնադատուած կը զգար հետեւիլ Բրօսբերօի: Ֆերտինանտ Բրօսբերօի ետեւէն քարայրը կ՚երթար եւ որքան որ կրնար ետեւը կը նայէր տեսնելու համար Միրանտան, ու կը խորհէր.

«Ոգիներս կաշկանդուած են եւ ինծի կը թուի թէ երազի մը մէջ կը գտնուիմ, սակայն այս մարդուն սպառնալիքները եւ այն տկարութիւնը որ կը զգամ, թեթեւ պիտի ըլլային ինծի, եթէ օրը անգամ մը բանտէս տեսնէի սա գեղանի օրիորդը»:

Բրոսբերօ երկար չպահեց խուցին մէջ Ֆերտինանտը եւ շուտով դուրս հանեց զայն իբր բանտարկեալ, ծանր գործ մը յանձնեց անոր կատարելու, եւ հոգ տարաւ որ իր դուստրը գիտնայ անոր պարտադրուած խիստ աշխատութիւնը: Յետոյ իր ուսումնատեղին երթալ ձեւացնելով, գաղտնապէս հսկեց անոնց երկուքին վրայ ալ:

Բրոսբերօ հրամայած էր Ֆերտինանտի փայտի ծանր գերաններ դիզել: Իսկ Թագաւորի զաւակները շատ վարժ չըլլալով քրտնաջան աշխատութեան, քիչ ետք Միրանտա կը գտնէր իր սիրահարը յոգնութենէն գրեթէ մեռնելու վիճակի մէջ:

«Աւա՛ղ», ըսաւ օրիորդը, «այդքան ծանր մի՛ աշխատիր, հայրս իր ուսմանց մէջ թաղուած է, եւ մենք երեք ժամուան համար իրմէ վախ չունինք: Խնդրե՛մ, հանգչէ»:

— «Ով իմ սիրելի օրիորդս, չեմ համարձակիր, պէտք է գործս վերջացնեմ, հանգիստ առնելէ առաջ»:

— «Եթէ կ'ուզէք նստիլ, ըսաւ Միրանտա, այդ ժամանակամիջոցին ես ուզելով կը կրեմ գերանները»:

Սակայն Ֆերտինանտ ոչ մէկ կերպով չհամաձայնեցաւ այս բանին եւ Միրանտա փոխանակ օգնութեան՝ արգելք մը եղաւ, որովհետեւ անոնք երկար խօսակցութեան մը սկսան, ուստի գերան կրելու գործը շարունակեց միայն դանդաղօրէն:

Բրոսբերօ այս գործը Ֆերտինանտի յանձնած էր պարզապէս անոր սէրը փորձելու համար, եւ գրքերով զբաղուած չէր, ինչպէս կը կարծէր իր դուստրը, ընդհակառակը անոնց մօտ կը կանգնէր անտեսանելիօրէն, լսելու անոնց խօսակցութիւնը:

Ֆերտինանտ հարցուց օրիորդին թէ ի՛նչ էր իր

անունը․ օրիորդը ըսաւ թէ Միրանտա կը կոչուի, բայց այս յայտնութիւնը կ'ընէ հակառակ իր հօրը յատուկ հրամանին:

Բրօսբէրօ ժպտեցաւ իր աղջկան անհնազանդութեան այս առաջին օրինակին վրայ, որովհետեւ մոգութեան արուեստով յանկարծ այնքան սիրահարցուցեր էր որ չէր կրնար բարկանալ իր հրամաններուն չհնազանդելուն եւ չէր սպասեր որ աղջիկը իր սէրը մոռնար:

Ֆերտինանտ երկար ճառ մը խօսեցաւ, որով կը յաւակնէր թէ բոլոր տեսած օրիորդներէն աւելի կը սիրէր Միրանտան: Բրօսբէրօ գոհ սրտով՝ լսեց այս ճառը:

Միրանտա իմացաւ Ֆերտինանտի ներբողները որոնց համեմատ իր գեղեցկութիւնը կը գերազանցէր աշխարհի բոլոր կիներու աղուորութիւնը եւ պատասխանեց․ «Ես ոեւէ կնոջ դէմք չեմ յիշեր, ո՛չ ալ մարդու դէմք տեսած եմ ձերինէն զատ, իմ սիրելի բարեկամս, չհաշուելով հօրս դէմքը: Չեմ գիտեր թէ ի՛նչ տեսակ են մարդկային դիմագծերը ուրիշ տեղեր, սակայն հաւատացէք ինծի, պարոն, որ աշխարհի վրայ ձենէ զատ պիտի չփափաքէի ուրիշ ոեւէ ընկեր ունենալ, ոչ ալ իմ երեւակայութիւնս ձերինէն դուրս կրնայ ձեւակերպել կաղապար մը զոր կարենայի սիրել: Բայց կը վախնամ որ չափազանց ազատ կը խօսիմ ձեզի հետ եւ հօրս պատուէրները կը մոռնամ»:

Ասոր վրայ Բրօսբէրօ ժպտեցաւ եւ գլուխը շարժեց, ըսել ուզելով․ «Գործերը ուղղակի իմ փափաքներուս համաձայն կ'ընթանան, աղջիկս Նափոլիի թագուհին պիտի ըլլայ»:

Այն ատեն Ֆերտինանտ ընտիր եւ երկար ճառով մը եւ արքունական ոճով ըսաւ անմեղ Միրանտայի

թէ ինք Նափոլիի գահաժառանգն էր եւ ուստի Միրանտա իր թագուհին պիտի ըլլար:

— «Ա՛հ, պարոն, ըսաւ աղջիկը, յիմար եմ որ կ՚արտասուեմ բանի մը վրայ որմէ ուրախ եմ. պիտի պատասխանեմ պարզ եւ սուրբ անմեղութեամբ մը. ես ձեր կինն եմ, եթէ կ՚ուզէք ամուսնանալ ինծի հետ»:

Բրոսբերօ տեսանելի եղաւ եւ արգիլեց որ Ֆերտինանտ շնորհակալութիւն յայտնէր Միրանտային.

— «Ո՛չ մէկ բանէ մի վախնար, զաւակս, ըսաւ ան, լսեցի եւ կը հաւանիմ ձեր բոլոր ըսածներուն: Եւ, Ֆերտինա՛նտ, եթէ չափազանց խստօրէն գործածեցի քեզ, հարուստ փոխարինութեամբ մը քեզի պիտի տամ դուստրս: Քու բոլոր տառապանքներդ միայն փորձեր էին սէրդ հասկնալու համար, իսկ դուն ազնուօրէն դիմադրեցիր փորձութեան:

«Արդ, իբրեւ պարգեւ, իմ կողմէ առ աղջիկս զոր քու ճշմարիտ սէրդ արժանապէս գնեց: Մի ժպտիր, եթէ մեծաբանեմ որ անիկա ամէն գովեստէ վեր է»:

Յետոյ յայտնեց թէ գործեր կային որոնք իր ներկայութիւնը կը պահանջէին, Ֆերտինանտ եւ Միրանտա կրնային նստիլ եւ խօսակցիլ միասին, մինչեւ ինք վերադառնար: Այս հրամանին Միրանտա բնաւ տրամադիր չէր թուեր չհնազանդելու:

Երբ Բրոսբերօ թողուց զանոնք մինակ, կանչեց իր ոգին՝ Արիէլը որ իսկոյն երեւցաւ: Ան պատմեց անհամբերութեամբ ինչ որ ըրած էր Բրոսբերօի եղբօրը եւ Նափոլիի թագաւորին:

Արիէլ անոնց այնպիսի տարօրինակ բաներ տեսցուցած էր եւ լսել տուած, որ անոնք իրենց երկիւղէն՝ գրեթէ անզգայ վիճակի մէջ ինկած էին: Երբ յոգնած հօս հոն թափառելէն, եւ անօթեցած սնուն-

դի պակասէն, յանկարծ անոնց առջեւ քաղցրահամ սեղան մը դրած էր, եւ յետոյ, ճիշդ այն րոպէին երբ անոնք պիտի ճաշէին, Հարիպայի կերպարանքով — դիցաբանական հրէշ մը, գիշատիչ թեւերով — երեւցած էր անոնց եւ խնջոյքը ցնդած էր: Ապա, ի մեծ ապշութիւն իրենց, այս երեւութական հարիպան խօսք առաւ եւ յիշեցուց անոնց անգթութիւնը որով դքսութենէն վռնտած էին Բրօսբերօն, եւ լքելով զայն ու մանուկ դուստրը ծովուն մէջ, կորսըւելու դատապարտած էին: Ահա թէ ինչու այս սարսափները սարքուած էին իրենց դէմ:

Նափոլիի թագաւորը եւ կեղծ եղբայրը Անտօնիօ զղջացին Բրօսբերօի հանդէպ իրենց գործած անարդարութեան համար: Արիէլ պատմեց իր տիրոջ թէ ինք համոզում գոյացուցած էր անոնց ապաշխարութեան անկեղծութեանը,. եւ ինք, թէպէտ ոգի մը, միայն կը գթար անոնց վրայ:

— «Այն ատեն, հոս բեր զանոնք, եթէ դուն որ լոկ ոգի մըն ես, կը զգածուիս անոնց դժբախտութենէն, պէտք չէ՞ ցաւիմ ես՝ որ անոնց նման մարդկային էակ մըն եմ: Բեր զանոնք արագութեամբ, իմ նուրբ Արիէլս»:

Ոգին չուտով վերադարձաւ թագաւորին եւ Անտօնիօի հետ, ծերունի Գօնզալօն եւս կուգար անոնց հետեւորդներու խումբով: Բոլորը կը հետեւէին Արիէլի որ վայրի նուագ մը կը հնչեցնէր օդին մէջ առաջ վարելու համար զանոնք իր տիրոջ ներկայութեանը: Սա այն Գօնզալօն էր որ այնքան բարութեամբ Բրօսբերօի գրքեր եւ ուտեստեղէն հայթայթած էր ատենօք, երբ անգգամ եղբայրը լքած էր Բրօսբերօն բաց նաւակին վրայ, ծովուն մէջ:

Ցաւն ու սարսափը այնչափ ապշեցուցած էին անոնց զգայարանները որ անոնք չճանչցան Բրօս-

թերօն։ Այս վերջինը ինքզինքը ծանօթացուց նախ Գօնզալօի՝ իր կեանքի պահպանիչը կոչելով զայն, յետոյ եղբայրը եւ Թագաւորը ճանչցան անիրաւուած դուքսը։

Անտօնիօ արցունքներով, վշտի տխուր բառերով եւ ճշմարիտ զղջումով աղերսեց իր եղբօր ներողամտութիւնը, իսկ Թագաւորը իր կարգին անկեղծ խղճի խայթը յայտնեց որ դահընկէց ընելու համար զայն՝ օգնած էր Անտօնիօի։

Բրօսպերօ ներեց անոնց։ Յետոյ, երբ անոնք յանձնառու եղան իր դքսութիւնը վերահաստատելու, ըսաւ Նափօլիի Թագաւորին. «Ես ալ պարգեւ մը ունիմ պահուած ձեզի», եւ բանալով դուռ մը, ցոյց տուաւ Ֆերտինանտը որ ճատրակ կը խաղար Միրանտայի հետ։

Ոչ մէկ բան կրնար գերազանցել հօր եւ որդւոյն ուրախութիւնը այս անակնկալ հանդիպման առթիւ, որովհետեւ երկուքն ալ մէկզմէկ խեղդուած կը կարծէին փոթորիկին մէջ։

«Ի՜նչ զարմանք, բացագանչեց Միրանտա, ազնիւ արարածներ են ասոնք, անշուշտ աշխարհը լաւ տեղ մը պէտք է ըլլայ որ այսպիսի մարդեր կը պարունակէ»։

Նափօլիի Թագաւորը գրեթէ նոյնչափ հիացաւ Միրանտայի գեղեցկութեան եւ գերընտիր շնորհքներուն վրայ, ինչպէս իր տղան հիացած էր։

— «Ո՞վ է այս օրիորդը, հարցուց ան, կը թուի թէ աստուածուհին է որ բաժնեց մեզ եւ մէկտեղեց այսպէս»։

— «Ո՛չ Տէր», պատասխանեց Ֆերտինանտ, ժպտելով որ իր հայրը նոյն սխալին մէջ ինկած էր, ինչպէս ինքը՝ երբ առաջին անգամ տեսած էր Միրանտան, «Մահկանացու մըն է, բայց անմահական

նախախնամութեամբ իմս է: Ընտրեցի զայն, երբ չէի կրնար ձեր հաւանութիւնը խնդրել, հայր իմ, որովհետեւ չէի խորհեր որ կենդանի էիք: Անիկա դուստրն է Բրօսբերոյի, Միլանի հռչակաւոր դուքսին եւ որուն համբաւը շատ յաճախ լսած եմ, սակայն մինչեւ այսօր չէի տեսած: Անկէ նոր կեանք մը ընդունեցայ, եւ ան երկրորդ հայր եղաւ ինծի՝ տալով այս սիրելի օրիորդը»:

— «Այն ատեն ես ալ իր հայրը պէտք է ըլլամ, ըսաւ Թագաւորը, բայց, ի՜նչ այլանդակ պիտի հնչէ այս բառը, պէտք է ուրեմն ներողութիւն խնդրեմ»:

— «Ա՛լ կը բաւէ, ըսաւ Բրօսբերօ, չյիշենք մեր անցեալ նեղութիւնները, քանի որ անոնք այսքան բարեբախտութեամբ վերջացան»: Յետոյ, Բրօսբերօ գովեց իր եղբայրը եւ ապահովութիւններ տուաւ իր ներողամտութեան մասին. ըսաւ թէ իմաստուն, իշխող նախախնամութիւն մը թոյլատրած էր որ ինք քշուի Միլանի իր դքսութենէն, որպէսզի իր դուստրը կարենար ժառանգել Նափոլիի թագը, հանդիպելով այս ամայի կղզիին վրայ թագաւորին տղուն որ սիրեց Միրանտան:

Իր եղբայրը անդորրացնելու համար արտասանուած այս ազնիւ խօսքերը, ամօթի եւ խղճի խայթով լեցուցին Անտօնիօն, որ լացաւ եւ անկարող եղաւ բերանը բանալու, լացաւ նաեւ ազնուագի ծերունի Գօնզալօն այս բերկրալի հաշտութեան առթիւ եւ աղօթեց որ օրհնութիւններով բեռնաւորուի երիտասարդ զոյգը:

Այնուհետեւ Բրօսբերօ յայտնեց անոնց թէ նաւերը ապահով կը կենային նաւահանգիստը, թէ նաւազները ամբողջովին նաւուն վրայ են եւ թէ ինքն ու իր դուստրը պիտի ընկերանային անոնց յաջորդ առտու դէպի հայրենիք:

«Մինչ այդ, աւելցուց ան, վայելեցէք այն զովացուցիչ ըմպելիները զոր իմ աղքատիկ քարայրս կրնայ տալ, իսկ երեկոյին ձեզ զբօսցնելու համար պիտի պատմեմ կեանքիս պատմութիւնը, առաջին անգամ այս լքուած կղզին ցամաք ոտք կոխելէս սկսեալ»: Ապա կանչեց Գալիպանը որ կերակուր պատրաստէ եւ քարայրը կարգի դնէ: Խումբը զարմացաւ այս տգեղ հրէշին անճոռնի եւ վայրենի երեւոյթէն, բայց Բրօսբերօ ըսաւ թէ ան միակ սպասաւորն էր որ կը ծառայէր իրեն:

Կղզին ձգելէ առաջ, Բրօսբերօ արձակեց Արիէլը ծառայութենէ՝ ի մեծ ուրախութիւն այս զուարթաբարոյ ոգիին, որ թէպէտ հաւատարիմ ծառայ մըն էր, բայց միշտ կը փափաքէր վայելել իր անսանձ ազատութիւնը, թափառիլ օդին մէջ անարգել, վայրի թռչունի մը պէս, կանանչ ծառերու տակ, հաճելի պտուղներու եւ ժպտող ծաղիկներու միջեւ:

Երբ Բրօսբերօ արձակեց փոքր ոգին, ըսաւ· «Իմ չքնաղ Արիէլս, քեզ պիտի կորսնցնեմ, բայց դուն պիտի գտնես ազատութիւնդ»:

— «Շնորհակալ եմ, սիրելի տէրս, ըսաւ Արիէլ, միայն թոյլատրեցէք որ հայրենիք վերադարձող ձեր նաւուն օգնեմ յաջող հովերով, ձեր կողմէ նախ քան ինծի ողջերթ մաղթելը, եւ յետոյ, տէ՛ր, երբ ազատ ըլլամ, ինչպիսի՜ զուարթութեամբ պիտի ապրիմ»:

Արիէլ իսկոյն հետեւեալ սիրուն երգը երգեց·

«Ուր մեղուն կը ծծէ, հոն կը պահուիմ·
Կովացնծուկի բաժակին մէջ կը պառկիմ·
Կը հանգչիմ, երբ բուերը կը կանչեն:
Կը թռչիմ կռնակին վրայ չղջիկին

Ուրախ զուարթ ամառուան ետեւէն:
Ուրախ զուարթ հիմա պիտի ապրիմ
Ծաղկին տակ որ կը կախուի ճիւղերէն»:

*Այն ժամանակ Բրօսբերօ խորունկ հողին մէջ թաղեց իր մոգական գրքերը եւ գաւազանը, որովհետեւ վճռած էր այլեւս չգործածել մոգական արուեստը: Եւ այսպէս յաղթած ըլլալով իր թշնամիներուն եւ հաշտուած եղբօրը ու Նափօլիի թագաւորին հետ, բան մը չէր մնար այժմ ամբողջացնելու իր երջանկութիւնը, այլ միայն վերստին այցելել իր հայրենի երկիրը եւ տիրանալ դքսութեանը, նաեւ վկայ ըլլալ իր աղջկան, Միրանտայի եւ իշխան Ֆերտինանտի բարեբաստիկ հարսանիքին:*

*Թագաւորը ըսաւ թէ այդ հարսանիքը պիտի տօնուի մեծ շքով, Նափօլի վերադարձէն անմիջապէս ետք: Եւ իրաւ, ոգի Արիէլի ապահով առաջնորդութեան տակ, անոնք շուտով հասան Նափօլի, հաճելի նաւարկութենէ մը վերջ:*

# ՕԹԷԼԼՕ

Պռապանթիօ, Վենետիկի հարուստ ծերակուտականը, սիրուն դուստր մը ունէր, ազնիւ Տէզտէմօնան։ Այս աղջկան դարպաս կ՚ընէին զանազան թեկնածուներ, թէ անոր առաքինի յատկութիւններուն եւ թէ հարուստ ակնկալութեանց համար։ Սակայն, Տէզտէմօնա, իր կլիմայի եւ գոյնի թեկնածուներուն մէջ չտեսաւ մէկը զոր սիրէր, որովհետեւ այս ազնուական օրիորդը նկատի ունէր միտքը քան մարդերու դիմագծերը։ Եւ այնպիսի եզականութեամբ մը՝ որ հիացման արժանի է քան նմանութեան՝ իր սիրոյ առարկան ընտրած էր Մաւրիտանացի մը, սեւ մը, զոր իր հայրը կը սիրէր եւ յաճախ տուն կը հրաւիրէր։

Պէտք չէ բոլորովին դատապարտել Տէզտէմօնան իր ընտրած անձին՝ իբր սիրահար անյարմարութեան համար։ Բաց ի այն իրողութենէն որ սեւ էր, այս ազնուական Մաւրիտենացին բան մը պակաս չունէր մեծահոգի օրիորդին գուրգուրանքին արժանանալու։ Ան զինուոր մըն էր, եւ քաջ զինուոր մը։ Թուրքերու դէմ մղուած արիւնահեղ պատերազմներու մէջ ան իր ընթացքով, վենետիկեան ծառայութեան զօրավարի աստիճանին բարձրացած էր, եւ պետութիւնը կը գնահատէր ու կը վստահէր անոր։

Օթէլլօ ճանապարհորդ մը եղած էր, իսկ Տէզտէմօնա, ինչպէս կիներուն սովորութիւնն է, կը սիրէր լսել անոր արկածներէն։ Օթէլլօ իր ամենահին յիշողութիւնները կը քրքրէր, կռիւները, պաշարումները եւ ընդհարումները որոնցմէ անցած էր,

ծովու եւ ցամաքի վրայ իր ենթարկուած վտանգները, իր մազապուր ազատումները, երբ մտած էր խրամի մը մէջ կամ բարձրացած էր թնդանօթի մը բերանը: Թէ ինչպէ՛ս գերի բռնուած էր խրոխտ թշնամիէն եւ ծախուած իբր ստրուկ, ու կեանքը որ անցուցած էր այդ վիճակին մէջ եւ միջոցով մը ազատած: Այս բոլոր պատմուածքներուն վրայ Օթէլլօ կ՚աւելցնէր այն տարօրինակ բաներու նկարագրութիւնը զոր տեսած էր օտար երկիրներու մէջ, ընդարձակ ամայութիւնը եւ վիպական քարայրները, քարահանքերը, ժայռերը եւ լեռները որոնց կատարները ամպերու մէջ կը կորսուէին, վայրենի ազգերը, մարդակերները, եւ Ափրիկեցի ցեղի մը մարդիկը որոնց գլուխները ուսերու տակ կը բուսնին:

Ճանապարհորդական այս պատմութիւնները այնչափ կը շղթայէին Տէզտէմօնայի ուշադրութիւնը որ եթէ տնային գործերու համար կանչուէր Օթէլլօի քովէն, ամէն աճապարանքով կը կատարէր այդ գործը, կը վերադառնար, եւ ագահ ականջով մը կը լսէր Օթէլլօի խօսակցութիւնը:

Օթէլլօ, հեղ մը օգտուելով պարապ պահէ մը, յաջողեցաւ Տէզտէմօնայէն խնդրանք մը փրցնել, որպէսզի իր կեանքի պատմութիւնը ընդարձակօրէն պատմէր: Օրիորդը շատ բան լսած էր այդ կեանքէն, բայց միայն մասեր: Առոր հաւանութիւն տըւաւ Մաւրիտենացին եւ սկսաւ պատմել: Պատմութեան ընթացքին Օթէլլօ արցունքներ խլեց Տէզտէմօնայէն, երբ խօսեցաւ իր երիտասարդութեան ատեն աղէտալի յարձակման մը վրայ որ զինքը տառապեցուցած էր:

Օթէլլօ իր պատմութիւնը աւարտած ըլլալով, Տէզտէմօնա անոր վիշտերուն համար շատ հառաչանքներ արձակեց: Յետոյ սիրուն երդում մը ըրաւ

թէ ամէն ինչ տարօրինակ կ'անցնէր, գթաշարժ, զարմանալիօրէն գթաշարժ: Յայտնեց թէ կը փափաքէր լսած չըլլալ այս պատմութիւնը, եւ սակայն կը բաղձար միեւնոյն ատեն որ երկինք այսպիսի մարդ մը ստեղծած ըլլար զինքը· ապա շնորհակալ եղաւ եւ ըսաւ որ, եթէ Օթէլլօ բարեկամ մը ունէր իրեն՝ Տէզտէմօնայի համակրող, բաւական պիտի ըլլար սորվեցնել Օթէլլօի պատմութիւնը պատմելու եղանակը անոր, որպէսզի կարենար սիրաբանել Տէզտէմօնայի հետ:

Այս ակնարկը եղաւ ոչ աւելի համարձակութեամբ քան համեստութեամբ, ընկերացած Տէզտէմօնայի գեղեցկութեամբ ու շիկնումներով: Օթէլլօ չէր կրնար չհասկնալ զանոնք եւ աւելի բաց խօսեցաւ իր սիրոյ նկատմամբ: Այս ոսկեայ պատեհութեան մէջ, ան յաջողեցաւ վեհանձն հաւանութիւնը առնել օրիորդ Տէզտէմօնայի, գաղտնի կերպով ամուսնանալու համար:

Օթէլլօի ոչ գոյնը եւ ոչ վիճակը այն աստիճանի չէին որ Պռապանթիօի կողմէ իբր փեսայ կարելի ըլլար ընդունիլ: Պռապանթիօ իր դուստրը ազատ թողած էր, եւ կ'ակնկալէր որ, ինչպէս ազնուական վենետեան օրիորդներու ձեւն էր, մօտ ատենէն անիկա ծերակուտական դասէ կամ ակնկալութիւն ունեցող մէկը ընտրէր իբր ամուսին: Սակայն խաբուած էր: Տէզտէմօնա կը սիրէր Մաւրիտենացին, թէեւ ան սեւ ըլլար, եւ նուիրած էր իր սիրտն ու բախտը անոր արիասիրտ անձին եւ յատկութիւններուն:

Տէզտէմօնա իր սիրտը ծածուկ նուիրումով մը ենթարկած էր իր ընտրած ամուսինին, այնպէս որ անոր գոյնն իսկ, որ շատերու համար անհարթելի առարկութիւն մը պիտի կազմէր բացի այս մտացի օրիորդէն, վեր կը գնահատէր երիտասարդ Վենե-

տիկեան ազնուական հետամուտներու բոլոր սպիտակ մորթերէն եւ յստակ գոյներէն:

Իրենց ամուսնութիւնը, որ թէեւ գաղտնի կերպով տեղի ունեցած էր, կարելի չէր պահել իբր գաղտնիք մը: Ծերունի Պռապանթիօ լսեց զայն եւ ծերակոյտի հանդիսաւոր խորհուրդի մը մէջ ներկայացաւ իբր ամբաստանող Մաւրիտենացի Օթէլլօի՝ որ հմայքով ու կախարդութեամբ հրապուրած էր սիրուն Տէզտէմօնայի սէրը եւ ամուսնացած՝ առանց հօրը հաւանութեան եւ հակառակ հիւրընկալութեան պարտաւորութիւններուն:

Այս ժամանակամիջոցին պատահեցաւ որ Վենետիկի պետութիւնը անմիջական պէտքն ունենար Օթէլլօի ծառայութիւններուն: Լուր հասած էր որ Թուրքերը զօրեղ պատրաստութիւններով նաւատորմ մը ճամբայ հանած էին, եւ այս տորմիղը իր ընթացքը ուղղած էր դէպի Կիպրոս, վերստին գրաւելու դիտաւորութեամբ այդ ուժեղ կէտը վենետիկցիներէն՝ որոնք այն ժամանակ կը տիրէին կղզին:

Այս ստիպողական պարագային, պետութիւնը իր աչքերը յառեց Օթէլլօի վրայ որ միակ մարդը նկատուեցաւ Կիպրոսի պաշտպանութիւնը վարելու՝ Թուրքերու դէմ: Այսպէս, Օթէլլօ կանչուած էր ծերակոյտին առջեւ, ու կը կանգնէր միանգամայն իբր թեկնածու մեծ պետական պաշտօնի մը եւ մեղապարտ՝ այնպիսի յանցանքներու ամբաստանութիւնով որ Վենետիկի օրէնքները ճական կը նկատէին:

Ծերունի Պռապանթիօի տարիքը եւ ծերակուտականի հանգամանքը կը պահանջէին որ այդ պատկառելի ժողովը համբերատար ունկնդրութիւն մը տար: Բայց բորբոքած հայրը այնպիսի անժուժկալութեամբ մը վարեց իր ամբաստանութիւնը, հաւանականութիւնները եւ ենթադրութիւնները փաս-

տերու տեղ ներկայացնելով, որ, երբ Օթէլլօ հրաւիրուեցաւ իր պաշտպանողականը ընելու, ան բաւականացաւ պատմել իր սիրոյ պարզ պատմութիւնը: Օթէլլօ այնպիսի անարուեստ պերճախօսութիւնով վերստին պատմեց իր սիրահարութիւնը, ինչպէս որ նկարագրեցինք, եւ իր ճառը արտասանեց այնպիսի հոյակապ պարզութեամբ մը, որ դուքսը, բազմած իբր գլխաւոր դատաւոր, չկրցաւ ինքզինքը զսպել ու խոստովանեցաւ թէ այսպիսի ձեւով պատմութիւն մը պիտի գրաւէր իր աղջիկն ալ: Հետեւաբար հմայքն ու կախարդական խօսքերը զորս գործածած էր Օթէլլօ իր սիրաբանութեան մէջ, բացորոշապէս կ՚երեւէին թէ ուրիշ բան չէին, եթէ ոչ պատուաւոր արուեստը սիրահարներու, միակ կախարդութիւնը որ Օթէլլօ կիրարկած էր օրիորդի մը ուշադրութիւնը շահելու համար, գողտրիկ պատմութիւն մը ըսելու կարողութիւնը եղած էր:

Օթէլլօի այս յայտարարութիւնը հաստատեց ինքը Տիկին Տէզտէմօնա իր վկայութիւններով: Տէզտէմօնա ներկայացաւ ատեանին, եւ ընդունելով որ կեանքի ու կրթութեան համար պարտք մը ունէր հօրը հանդէպ, պահանջեց թոյլատրուիլ դեռ աւելի բարձր պարտականութիւն մը կատարելու իր տիրոջ ու ամուսինին համար: Տէզտէմօնա նոյնչափ իրաւունք ունէր, որչափ իր մայրը՝ որ նախընտրած էր Պռապանթիօն իր մեծ հօրմէն:

Ալեւոր ծերակուտականը անկարող պաշտպանելու իր փաստերը, կանչեց Մաւրիտենացին եւ շատ մը ցաւակցութիւններ արտայայտելէ յետոյ, իբրեւ անհրաժեշտութիւն, իր աղջիկը անոր պարգեւեց: Պռապանթիօ եթէ ազատ ըլլար վար դնել աղջիկը եւ հեռու պահել անկէ, պիտի ընէր իր բոլոր սրտով: Ծերակուտականը աւելցուց թէ շատ ուրախ էր որ

ուրիշ զաւակներ չունէր, որովհետեւ Տէզտէմօնայի ընթացքը իրեն սովրեցուցած պիտի ըլլար բռնակալ մը ըլլալ, ու ստնակապեր անցընել անոնց, որպէսզի Տէզտէմօնայի պէս չլքէին:

Այս դժուարութիւնները անցնելէ յետոյ, Օթէլլօ, որուն համար զինուորական կեանքի խստութիւնները նոյնչափ բնական եղած էին, որչափ սնունդն ու հանգիստը միւս մարդերուն, պատրաստակամօրէն ստանձնեց Կիպրոսի պատերազմներու ղեկավարութիւնը

Տէզտէմօնա, նախընտրեց իր տիրոջ պատիւը, թէեւ վտանգալի, քան այն դիւրին քաղցրութիւնները որոնց անձնատուր կ'ըլլան նոր ամուսնացողները, սովորաբար սպառելով իրենց ժամանակը, ուստի ցնծութեամբ Օթէլլօի մեկնելուն հաւանեցաւ:

Հազիւ թէ Օթէլլօ եւ իր տիկինը Կիպրոս ցամաք ելած էին, երբ լուր հասաւ որ սոսկալի փոթորիկ մը ցրուած էր թրքական նաւատորմիղը եւ այսպիսով կղզին ապահով էր ոեւէ անմիջական յարձակումի մը վախերէն:

Սակայն պատերազմը որմէ Օթէլլօ պիտի տուժէր, սկսած էր այժմ, որովհետեւ այն թշնամիները որոնց չարամտութիւնը գրգռեց Օթէլլօի կիրքը իր անմեղ կնոջ դէմ, աւելի մահացու եղաւ իր բնութեամբ, քան օտարականներն ու անհաւատները:

Զօրավարին (Օթէլլօ) բոլոր բարեկամներուն մէջ, ոչ մէկը աւելի կատարեալ վստահութիւն կը վայելէր, որքան Կասսիօն: Միքայէլ Կասսիօ երիտասարդ զինուոր մըն էր, Փլօրանսացի, զուարթ, սիրաբորբոք, հաճելի խօսող մը, յատկութիւններ որոնք սիրելի են կանանց համար: Կասսիօ գեղեցիկ էր եւ պերճախօս, ուստի ճիշդ այսօրինակ անձ մը

կրնար գրգռել յառաջացած տարիքի տէր մարդու մը նախանձը, ինչպէս Օթէլլօն էր, որ ամուսնացեր էր երիտասարդ ու գեղեցիկ կնոջ մը հետ։

Սակայն Օթէլլօ նոյնչափ զերծ էր նախանձէ, որչափ վեհանձն էր, եւ նոյնչափ անկարող կասկածելու, որչափ անընդունակ՝ կատարելու ստոր գործ մը։ Անիկա Կասսիօն գործածած էր Տէզտէմօնայի հետ ունեցած սիրոյ խնդրին մէջ եւ Կասսիօն տեսակ մը միջնորդ եղած էր իր հետամտութեան։ Որովհետեւ, Օթէլլօ վախնալով թէ ինքը չունէր խօսակցութեան այն քնքուշ յատկութիւնները որոնք հաճոյք կը պատճառեն օրիորդներուն, եւ զանոնք իր բարեկամին քով գտնելով, յաճախ Կասսիօն կը ղրկէր իր կողմէ՝ ամուսնութեան յորդորելու համար։ Այսպիսի անմեղ պարզմտութիւն մը աւելի պատիւ մըն էր, քան թերութիւն մը քաջարի Մաւրիտենացիի նկարագրին։ Ուստի զարմանալի չէ որ Օթէլլօէն անմիջապէս ետքը (բայց շատ հեռուէն, ինչպէս կը պատշաճի առաքինի կնոջ մը) ազնիւ Տէզտէմօնան կը սիրէր եւ կը վստահէր Կասսիօի։ Ոչ ալ ամոլին ամուսնութիւնը տեւէ տարբերութիւն ըրած էր Միքայէլ Կասսիօի հանդէպ իրենց ունեցած վերաբերմունքին մէջ։ Կասսիօ կը յաճախէր անոնց տունը եւ իր ազատ ու շաղակրատ խօսակցութիւնը անհաճոյ զանազանութիւն մը չէր Օթէլլօի որ ինքը աւելի լուրջ բնաւորութեան տէր մէկն էր։ Այսպիսի բնութիւններ յաճախ դիտուած է որ հրճուանք կը զգան իրենց հակառակ բնութիւն ունեցողներէն, իբրեւ մեղմացում իրենց ծայրայեղութեան ճնշումներուն։ Իսկ Տէզտէմօնա եւ Կասսիօ կը խօսակցէին ու կը խնդային միասին, սիրոյ միջնորդութեան օրերու առենուան պէս։

Շատ չէր անցեր, Օթէլլօ Կասսիօն բարձրացու-

ցեր էր տեղապահի աստիճանին, պաշտօն մը որ զօրավարի անձին ամենամօտիկն է եւ վստահութեան խնդիր։ Այս բարձրացումը մեծ վիրաւորանք պատճառեց Եակօի որ աւելի հին սպայ մըն էր եւ կը մտածէր թէ աւելի իրաւունք ունէր քան Կասսիօն։ Եակօ յաճախ կը ծաղրէր Կասսիօն իբրեւ մէկը որ յարմար է միայն տիկիններու ընկերակցութեան եւ չի գիտեր պատերազմի արուեստը. կ'ըսէր թէ անիկա աղջիկէ մը աւելի չէր կրնար բանակ մը կռուի դասաւորել։

Եակօ կ'ատէր Կասսիօն, կ'ատէր նաեւ Օթէլլօն՝ ոչ միայն անոր համար որ ան կը հովանաւորէր Կասսիօն, այլ եւ ուրիշ անիրաւ կասկածով մը։ Եակօ թեթեւութեամբ կ'երկմտէր որ Օթէլլօ իր կնոջը՝ Էմիլիայի աչք ունի։

Այս երեւակայական պատճառներով, Եակօի դաւադրող միտքը վրէժի նողկալի ծրագիր մը յղացաւ, որուն մէջ հաւասարապէս պիտի կործանէին Կասսիօն, Մաւրիտենացին եւ Տէզտէմօնան։

Եակօ խորամանկ էր, եւ մարդկային բնաւորութիւնը խորապէս ուսումնասիրած, գիտէր որ մարդուն միտքը տառապեցնող բոլոր չարչարանքներէն՝ նախանձի վշտերը՝ ամենէն անտանելի եւ ամենէն կսկծալի խայթոց էին։ Եթէ ան յաջողէր Օթէլլօն նախանձի մղել Կասսիօի դէմ, կը խորհէր որ ատիկա վրէժի գերազանց դաս մը կ'ըլլար, որուն վախճանը Կասսիօի կամ Օթէլլօի մահն էր, եւ կամ երկուքն ալ։ Հոգ չէր։

Զօրավարին ու իր տիկնոջ Կիպրոս ժամանումը, թշնամի նաւատորմին դրուումի լուրերուն հետ, տեսակ մը տօն առաջ բերին կղզիին մէջ։ Ամէն մարդ ինքզինքը կեր ու խումի եւ զուարթութեան տուաւ։ Գինին կը հոսէր առատութեամբ, բաժակները շուր-

ջանակի կը դառնային սեւամորթ Օթէլլօի եւ իր սիրուն տիկնոջ Տէզտէմօնայի առողջութեան համար:

Կասսիօ պահակներու գլխաւոր էր այդ գիշեր, եւ Օթէլլօյէն յանձնարարութիւն ունէր զինուորները հեռու պահել հարբեցութեան ծայրայեղութիւններէն, որպէսզի ոեւէ կռիւ ու աղմուկ չվախցնէր բնակիչները կամ զզուեցնէր զանոնք նոր ցամաք ելած ուժերէն: Այդ գիշեր Եակօ սկսաւ իր խորարմատ յատակագիծը չարութեան. զօրավարին հանդէպ հաւատարմութեան ու սիրոյ պատրուակին տակ, հրապուրեց Կասսիօն որպէսզի շատ խմէ, ինչ որ թերութիւն է հսկողութիւն ընող սպայի մը համար:

Կասսիօ ատեն մը ընդդիմացաւ, սակայն մինչեւ վերջը չկրցաւ դիմադրել Եակօի կեղծած պատուաւոր աղատութեան դէմ, այլ սկսաւ գաւաթը գաւաթին վրայ կլլել, իսկ Եակօ դեռ կը քաջալերէր խըմիչքով եւ երգերով: Կասսիօի լեզուն գովեստներ կը չռայլէր Տիկին Տէզտէմօնայի, որուն համար կրկին ու կրկին բաժակաճառ կ'ընէր, հաստատելով թէ անիկա ամենէն գերընտիր տիկինն էր: Գործը մինչեւ հոն հասաւ որ բերանը դրած թշնամի ըմպելին Կասսիօի խելքը թռցուց: Եակօ մարդ մը կարգադրած էր իբր գործիք որ գրգռէր Կասսիօն, ինչ որ տեղի տըւաւ կռիւի մը, սուրերը քաշուեցան, ու Մօնթանա անուն արժանաւոր սպայ մը որ միջամտեց կռիւը մեղմելու համար, վիրաւորուեցաւ ծեծկըռուքին մէջ: Ասոր վրայ խռովութիւնը մեծցաւ, եւ Եակօ որ դաւադրութիւնը սարքած էր, առաջինը եղաւ վտանգի նշանը տուող, ու պատճառ եղաւ որ դղեակին զանգը հնչուի, իբրեւ թէ վտանգաւոր դասալքութիւն մը տեղի ունեցած ըլլար, փոխանակ փոքրիկ հարբեցութենէ առաջացած կռիւի մը:

Վտանգի զանգակը հնչելով, Օթէլլօ արթնցաւ,

ու արտորալով հագաւ հագուստները, վար իջաւ կռիւին վայրը եւ հարցուց Կասսիօին իրողութեան պատճառը: Այս րոպէին Կասսիօ խելքի եկած էր, գինիին ազդեցութիւնը քիչ մը անցած ըլլալով, սակայն չափազանց կ՚ամաչէր պատասխանել: Եակօ Կասսիօն ամբաստանելու մեծ դժկամակութիւն կը կեղծէր, սակայն հակառակ նպատակ կը հետապնդէր: Ուստի անանկ մը ըրաւ որ Օթէլլօ զինքը մղէր այդ բանին, որովհետեւ զօրավարը սկսաւ պնդել թէ կ՚ուզէր գիտնալ ճշմարտութիւնը: Եակօ ամբողջ խնդրին պատմութիւնը ըրաւ այնպիսի եղանակով մը, որ մինչ կը ձեւացնէր թէ Կասսիօի յանցանքը կը պզտիկցնէր, իրականին մէջ եղածէն աւելի մեծ ցոյց կուտար զայն: Եակօ խնդրին մէջ իր ունեցած բաժինը դուրս կը ձգէր, եւ Կասսիօ այնչափ հեռու գացած էր որ չէր յիշեր այդ պարագան:

Արդիւնքը այն եղաւ որ Օթէլլօ իբր խստապահանջ կարգապահութեան, հարկադրուեցաւ Կասսիօի տեղապահութեան պաշտօնը անկէ առնել:

Այսպէս, Եակօի առաջին հնարքը կատարելապէս յաջողեցաւ: Իր ատելի հակառակորդը այժմ փորփորուած եւ դուրս նետուած էր պաշտօնէն, սակայն այս աղիտալի գիշերուան դիպուածը աւելի եւս պէտք էր շահագործել:

Կասսիօ որ այս դժբախտութենէն ամբողջովին զգաստացած էր, հիմա կ՚ողբար իր երեւութական բարեկամ Եակօին թէ՝ յիմար մը եղած ըլլալու էր ինք որ փոխակերպուած էր գազանի մը: Կասսիօ կործանած էր, որովհետեւ ինչպէ՞ս կրնար զօրավարէն վերստին խնդրել իր պաշտօնը: Օթէլլօ պիտի ըսէր իրեն որ խման մըն էր, ահա թէ ինչու Կասսիօ կ՚արհամարհէր ինքզինքը:

Եակօ յանցանքը թեթեւցնել կեղծելով, նկատեց

որ ապրող ոեւէ մարդ կրնայ զանազան առիթներով հարբած ըլլալ, սակայն ջանալու էր այս դէշ գործէն կարելի եղածին չափ անվնաս դուրս գալ: Զօրավարին կինը այժմ բուն իսկ զօրավարն էր, ուստի Օթէլլօի հետ ուզած կերպով կրնար վարուիլ, այս պատճառով լաւագոյն էր դիմել Տիկին Տէզտէմօնայի միջնորդութեան: Տիկինը ազատախօս, բարեսէր տրամադրութիւն ունէր եւ կրնար դիւրաւ՝ բարեխօսութեամբ մը Կասսիօն զօրավարին շնորհաց արժանացնել, այն ատեն բարեկամութեան պատռուածքը դարմանուելով, աւելի քան երբեք պիտի զօրանար: Անշուշտ ասիկա լաւ խորհուրդ մըն էր Եակօի կողմէ, եթէ չար նպատակով եղած չըլլար, ինչպէս պիտի երեւի յետոյ:

Կասսիօ հետեւեցաւ Եակօի խորհուրդին, եւ դիմեց Տիկին Տէզտէմօնայի որ դիւրին կը համոզուէր ոեւէ պատուաւոր խնդրանքէ մը: Տիկինը խոստացաւ Կասսիօի՝ խնդրարկու ըլլալ իր տիրոջ մօտ եւ կը նախընտրէր մեռնիլ քանի հրաժարիլ անոր դատէն: Եւ անմիջապէս գործի սկսելով, այնպիսի լուրջ եւ սիրուն եղանակով մը խօսեցաւ Օթէլլօի հետ որ այս վերջինս չկրցաւ մերժել, հակառակ անոր որ մահացու կերպով վիրաւորուած էր Կասսիօէն: Երբ Օթէլլօ կը պատճառաբանէր՝ յետաձգելու համար, թէ շատ վաղ էր ներել այդպիսի յանցաւորի մը, Տէզտէմօնա չէր ընկրկեր, այլ կը պնդէր որ յաջորդ գիշեր իսկ ներէր ան, կամ միւս առտու, կամ ամենաուշը երկու օր վերջ: Տիկինը կը հասկընէր թէ որչա՜փ զղջացած ու խոնարհած էր խեղճ Կասսիօն, եւ թէ անոր յանցանքը այդպիսի խիստ պատիժի մը արժանի չէր:

Եւ երբ Օթէլլօ տակաւին կը դժկամակէր.

«Ի՜նչ, Տէր իմ», ըսաւ Տէզտէմօնա, «այդքան

ջատագովելո՞ւ եմ Կասսիօն, Միքայէլ Կասսիօն որ ձեր կողմէ սիրաբանելու կուգար, և յաճախ, երբ ես կը պարսաւէի ձեզ, ան ձեր կողմը կը բռնէր։ Ասիկա փոքրիկ խնդրանք մը կը նկատեմ ձենէ, իսկ երբ միտք ունենամ ձեր սէրը փորձելու, աւելի ծանրակշիռ բան մը պիտի խնդրեմ»։

Օթէլլօ ոչինչ կրնար մերժել այսպիսի պաշտպանի մը եւ միայն պահանջելով որ Տէզտէմօնա իրեն թողուր ժամանակը, խոստացաւ Միքայէլ Կասսիօն նորէն ընդունիլ իր պաշտպանութեան տակ։

Պատահեցաւ որ Օթէլլօ եւ Եակօ ներս մտնէին այն սենեակը ուր Տէզտէմօնան կար, բայց ճիշդ այն րոպէին, երբ Կասսիօ Տիկնոջ միջնորդութիւնը հայցելէ ետք, հակառակ դռնէն կը մեկնէր։ Եակօ որ նենգութեամբ լեցուն էր, ցած ձայնով մը ըսաւ, իբրեւ թէ ինքնիրեն խօսէր, «այս բանը չեմ սիրեր»։ Օթէլլօ մեծ ուշադրութիւն չդարձուց Եակօի ըսածին, եւ իրաւ, այն խորհրդակցութիւնը որ ունեցաւ անմիջապէս յետոյ իր տիկնոջ հետ, մոռցնել հեռացուց ամէն բան, սակայն յիշեց զայն վերջը։ Որովհետեւ երբ Տէզտէմօնա գացած էր, Եակօ, իբրեւ թէ իր մտածման լոկ գոհացում տալու համար, հարցուց Օթէլլօի թէ երբ իր տիկնոջ հետ դարպաս կ'ընէր առենին, արդեօք Միքայէլ Կասսիօն տեղեկութիւն ունեցա՞ծ էր։ Այս հարցման զօրավարը հաստատական պատասխան տուաւ, եւ աւելցուց թէ սիրաբանութեան ընթացքին Կասսիօն շատ յաճախ միջնորդութիւն ըրած էր. ասոր վրայ Եակօ պռստեց իր յօնքերը, իբրեւ թէ սոսկալի խնդրի մը նկատմամբ նոր լոյս ստացած ըլլար եւ աղաղակեց. «իրա՜ւ»։

Այս բացագանչութիւնը Օթէլլօի միտքը բերաւ այն բառերը զորս արտասանած էր Եակօ սենեակը

մտնելու եւ Կասսիօն Տէզտէմօնայի հետ տեսնելու միջոցին: Եւ սկսաւ խորհիլ թէ նշանակութիւն մը կար այս բոլորին մէջ, որովհետեւ անիկա Եակօն կը նկատէր ուղղամիտ, սիրալիր եւ պատուաւոր մէկը, իսկ ինչ որ նենգութիւններ պիտի երեւէին կեղծ սրիկայի մը մէջ, պատուաւոր մտքի մը բնական գործերը կ'երեւէին Եակօի մօտ որոնց վրայ կարելի չէր խօսիլ: Ուստի Օթէլլօ խնդրեց Եակօէն խօսիլ ինչ որ գիտէր ու ամենավատ մտածումներուն բառեր հագցնել:

«Եւ ի՞նչ», ըսաւ Եակօ, «եթէ անարգ մտածումներ կուրծքէն ներս թափանցեն. ո՞րն է այն պալատը ուր յիմար բաներ չեն մտներ»: Ապա շարունակեց ըսել որ մեղք պիտի ըլլար եթէ իր անկատար զննութիւններէն ոեւէ նեղութիւն գար Օթէլլօի, թէ՝ Օթէլլօի խաղաղութեան համար լաւ չէր գիտնալ իր մտածումները, որ մարդոց լաւ համբաւը պէտք չէր աղարտել թեթեւ կասկածներով: Այս ակնարկութիւններուն եւ ցիրուցան խօսքերուն վրայ, երբ Օթէլլօի հետաքրքրութիւնը գրեթէ մինչեւ ցնորման հասաւ, Եակօ, իբրեւ թէ նախանձախնդիր անոր մտքի հանդարտութեան, խնդրեց անկէ որ զգուշանայ նախանձէ:

Այսպիսի վարպետութեամբ անպիտանը կասկածներ արթնցուց միամիտ Օթէլլօի մտքին մէջ, մանաւանդ այն զգուշաւորութեամբ որով կ'ուզէր Օթէլլօն հեռու պահել կասկածէ:

«Գիտեմ», ըսաւ Օթէլլօն, «որ կինս գեղեցիկ է, կը սիրէ ընկերութիւնն ու խնճոյքը, ազատախօս է, կ'երգէ, կը նուագէ, ու լաւ կը պարէ. սակայն ուր առաքինութիւն կայ, այնտեղ՝ այս յատկութիւնները առաքինի են: Պէտք է ապացոյցներ ունենամ զայն անպատիւ նկատելէ առաջ»:

Այն ատեն, Եակօ, իբրեւ թէ ուրախ որ Օթէլլօ դիւրին դէչ բաներու չէր հաւատար իր կնոջ նկատմամբ, բացորոշապէս յայտարարեց թէ ապացոյց չունէր, սակայն խնդրեց Օթէլլօէն դիտել Տէզտէմօնայի վերաբերմունքը, երբ Կասսիօ քովն էր: Ցանձնարարեց ոչ նախանձոտ ըլլալ եւ ոչ ալ չափազանց վստահ, որովհետեւ Եակօ աւելի լաւ գիտէր խտալացի տիկիններու տրամադրութիւնները քան Օթէլլօն, իտալուհիները Եակօի հայրենակիցներն էին եւ Վենետիկի կիները այնպիսի զուարճութիւններ կը վայելէին զորոնք չէին համարձակեր ցոյց տալ իրենց ամուսիններուն: Ապա վարպետօրէն զգացնել տուաւ որ Տէզտէմօնա խաբեց իր հայրը ամուսնանալով Օթէլլօի հետ, եւ այս բանը անանկ ծածուկ կերպով գլուխ հանեց որ խեղճ ծերունին խորհեցաւ թէ կախարդական միջոցներ գործադրուցան:

Օթէլլօ շատ զգածուեցաւ այս փաստարկութենէն որ խնդիրը վերյիշեցուց իրեն, որովհետեւ մտածեց թէ՝ եթէ Տէզտէմօնա խաբեց իր հայրը, ինչո՞ւ պիտի չկրնար նաեւ խաբել իր ամուսինը:

Եակօ ներողութիւն խնդրեց որ սրտայոյզած էր Օթէլլօն, սակայն վերջինս անտարբերութեան հովեր առաւ, մինչ ներքին վշտերով իրապէս ցնցուած էր անոր խօսքերէն: Օթէլլօ խնդրեց Եակօէն շարունակել խօսակցութիւնը, եւ Եակօ առաջ գնաց, նորէն ներողութիւն հայցելով, իբրեւ թէ չկամենար Կասսիօի դէմ ոեւէ խնդիր յարուցանել, քանի որ Կասսիօ իր բարեկամն էր:

Ցետոյ, ուժեղ կերպով շեշտեց կէտ մը եւ յիշեցուց Օթէլլօի թէ ինչպէ՛ս Տէզտէմօնա մերժած էր իր կլիմայի եւ գոյնի ամուսնութիւններ եւ կարգըւած էր Մաւրիտենացիի մը հետ: Ասիկա անբնա-

կան էր անոր համար եւ կ՚ապացուցանէր յամառ կամքի մը գոյութիւնը։ Իսկ հիմա որ աւելի լաւ դատողութիւն մը վերադարձած էր, ամէն հաւանականութեամբ ան պիտի նախընտրէր իր հայրենակից երիտասարդ իտալացիներու ընտիր կազմուածքն ու մաքուր եւ սպիտակ գոյնը քան Օթէլլօի կերպարանքը։

Այս բոլորը ըսելէ վերջ, Եակօ խորհուրդ տուաւ զօրավարին քիչ մը եւս յետաձգել Կասսիօի հետ հաշտութիւնը եւ միեւնոյն ժամանակ նկատի ունենալ թէ որպիսի՛ թախանձանքով Տէզտէմօնա կը միջնորդէր յանուն անոր։ Եակօի ըսածները պիտի ստուգուէին։

Վարպետորդի սրիկան չարամտութեամբ լարեց իր դաւերը անմեղ տիկնոջ ազնիւ յատկութիւնները կործանումի գործածելով։ Տէզտէմօնայի բարութենէն ցանց մը չինեց զայն բռնելու համար մէջը, նախ Կասսիօն դրդելով որ միջնորդութիւնը խնդրէր, եւ այս միջնորդութենէն նենգութիւններ դարբնեց անոր անկումին համար։

Խորհրդակցութիւնը վերջացաւ Եակօի խնդրանքովը Օթէլլօէն՝ որ տիկինը անմեղ նկատուէր մինչեւ աւելի վճռական ապացոյց մը, իսկ Օթէլլօ խոստացաւ համբերող ըլլալ, սակայն այդ րոպէէն սկսեալ խաբուած Մաւրիտենացին մտքի գոհացում բնաւ չճաշակեց։ Մեկոնը եւ մարդախոտի հիւթը, ոչ ալ աշխարհի բոլոր քնաբեր դեղաջուրերը չկրցան անոր վերադարձնել այն քաղցր անդորրութիւնը, զոր նախորդ օրն իսկ կը վայելէր ան։ Իր զբաղումը կը տկարացնէր զինքը, այլ եւս հաճոյք չէր զգար զէնքերէն, իր սիրտը որ կ՚ոգեւորուէր զինուորներու, դրօշակներու եւ պատերազմական դասաւորումի տեսքէն, որ կը յուզուէր եւ կը խայտար փողի

կամ Թմբուկի մը ձայնէն կամ զինուորական ձիու մը վրնջիւնէն, կարծես կորսնցուցած էր այն բոլոր հպարտութիւնն ու փառքը, որոնք զինուորի մը ասպետութիւնը կը կազմեն: Օթէլլօի զինուորական եռանդն ու իր բոլոր հին հաճոյքները զինքը լքեցին: Երբեմն խորհեցաւ թէ իր կինը պատուաւոր էր եւ երբեմն հակառակը, երբեմն Եակօն ուղիղ երեւցաւ իրեն եւ երբեմն խաբեբայ: Եթէ իր տիկինը կը սիրէր Կասսիօն, ինք անդորր եղած էր, քանի բան մը գիտցած չէր:

Այս յիմարացնող մտքերէն կտոր կտոր եղած, Օթէլլօ անգամ մը բռնեց Եակօի կոկորդէն եւ ապացոյց պահանջեց Տէզտէմօնայի մեղաւորութեանը, կամ սպառնաց րոպէական մահ իր ամբաստանութեան համար:

Եակօ բարկութիւն կեղծեց որ իր պատուախնդրութիւնը կը նկատուէր թերութիւն մը, ուստի հարցուց Օթէլլօի՝ եթէ տեսած չէր երբեմն Թաշկինակ մը կնոջ ձեռքին մէջ ելակի նկարներով: Զօրավարը պատասխան տուաւ ու ըսաւ թէ ատանկ Թաշկինակ մը տուած էր անոր եւ ատիկա իր առաջին ընծան էր:

«Այդ նոյն Թաշկինակը», ըսաւ Եակօ, «այսօր տեսայ Միքայէլ Կասսիօի ձեռքը, որով դէմքը կը սրբէր»:

«Եթէ ըսածիդ պէս ըլլայ», պատասխանեց Օթէլլօ, «հանդիստ պիտի չառնեմ մինչեւ որ խորունկ վրէժ մը զանոնք կուլ չտայ: Նախ, ի նշան ձեր հաւատարմութեան, կ'ակնկալեմ որ Կասսիօն երեք օրուան մէջ մահուան ենթարկուի, գալով սիրուն սատանային (ակնարկելով Տէզտէմօնան), պիտի առանձնանամ եւ խորհիմ արագ միջոց մը անոր մահուան համար»:

Զնչին բաներ՝ թեթեւ ինչպէս օդը՝ նախանձոտներուն համար նոյնչափ զօրեղ փաստեր են, որչափ սուրբ հրամանագիր մը։ Իր կնոջ վերաբերող թաշկինակը Կասսիոի ձեռքին մէջ՝ բաւարար դրդապատճառ մըն էր խաբուած Օթէլլոի համար մահուան վճիռ արձակելու երկուքին դէմ ալ, առանց անգամ մը քննելու թէ ի՛նչպէս Կասսիօ ձեռք անցուց զայն։

Տէզտէմոնա երբեք առանձ նուէր մը տուած չէր Կասսիոի, ոչ ալ այս հաստատակամ տիկինը վիրաւորանք հասցուցած էր իր տիրոջ՝ անոր նուէրները ուրիշ մարդու մը տալով։ Կասսիօ եւ Տէզտէմոնա, երկուքն ալ անմեղ էին եւ Օթէլլոի դէմ ոեւէ յանցանք գործած չէին։ Սակայն, չարամիտ Եակօ, որուն հոգին երբեք չհեռացաւ սրիկայութենէ, իր բարի, այլ տկմրամիտ կնոջը գողնալ տուաւ թաշկինակը Տէզտէմոնայէն, առարկելով որ բանուածքը կ'ուզէ օրինակել տալ, սակայն իրականին մէջ Կասսիոի ճամբուն վրայ ձգելու դիտաւորութեամբ, որպէսզի ան գտնէր եւ իրեն թելադրութեան առիթ ծառայէր իբր նուէր Տէզտէմոնայէն։

Օթէլլօ, իր կինը տեսնելէ ետք, պատրուակ բռնեց թէ գլխու ցաւ ունի, թէպէտ իրաւ ալ կրնար ըլլալ, ու փափաք յայտնեց որ Տէզտէմոնա իր թաշկինակը փոխ տայ՝ քունքերուն դնելու համար։ Տէզտէմոնա տուաւ զայն։

«Ասիկա չէ», ըսաւ Օթէլլօ, «այլ այն թաշկինակը որ քեզի տուի»։

Տէզտէմոնա իր մօտ չունէր այդ թաշկինակը, որովհետեւ, ինչպէս պատմեցինք, գողցուած էր։

«Ինչպէ՞ս», նկատեց Օթէլլօ, «ասիկա իրական յանցանք մըն է։ Այն թաշկինակը եգիպտացի կին մը տուաւ մօրս. կինը վհուկ մըն էր եւ կրնար մարդոց մտածումները կարդալ. ըսած էր մօրս որ, քա-

նի այդ Թաշկինակը կը պահէր, շնորհալի պիտի մընար եւ հայրս պիտի սիրէր զինքը, բայց եթէ կորսընցնէր զայն կամ ուրիշի տար, հօրս խորհուրդները պիտի դառնային եւ պիտի նողկար այնչափ, որչափ սիրած էր։ Մայրս մեռնելու ատեն, ինծի տըւաւ, եւ հրամայեց որ, եթէ երբեք ամուսնանամ, զայն կնոջս տամ։ Այսպէս ալ ըրի։ Ուշադրութիւն ըրէ անոր, զայն սիրական դարձուր եւ Թանկագին՝ ինչպէս աչքդ»։

«Կարելի՞ է», պատասխանեց վախցած տիկինը։

«Ճշմարիտ է», շարունակեց Օթէլլօ, «մոգական Թաշկինակ մըն է։ Գուշակ մը որ երկու հարիւր տարի աշխարհի վրայ ապրած է, մարգարէական մոլեգնութեան նոպայի մը մէջ բանած է զայն, շերամները որոնք մետաքսը արտադրեցին՝ օրհնուած էին, իսկ անիկա ներկուած էր օրիորդներու պահպանուած սրտերու մումիայի մը մէջ»։

Տէզտէմօնա լսելով Թաշկինակին զարմանահրաշ առաքինութիւնները, պատրաստ էր վախէն մեռնիլ, որովհետեւ պարզապէս կը տեսնէր որ զայն կորսնցուցած էր, ասոր հետ նաեւ իր ամուսնին սէրը։

Օթէլլօ վերսկսաւ եւ նայեցաւ այնպէս մը որ ցոյց կուտար թէ խիստ բան մը պիտի ընէ։ Ան դեռ կը պահանջէր Թաշկինակը, ինչ որ Տէզտէմօնա չէր կրնար տալ։ Խեղճ կինը կը ջանար իր ամուսինը հեռացնել լուրջ խորհուրդներէ, ուստի զուարթօրէն ըսաւ որ Թաշկինակի նկատմամբ այս խօսակցութիւնը նպատակ ունէր զինքը հեռու պահել Միքայէլ Կասսիօի համար խնդրանք ընելէ։ Տէզտէմօնա շարունակեց գովաբանել Կասսիօն, բան մը որ նախապէս ըսած էր Եակօ, եւ մինչեւ այն ատեն որ Օթէլլօ կատարեալ յիմարացումով մը դուրս թռաւ

սենեակէն։ Այն ատեն միայն Տէզտէմօնա, թէեւ ակամայ, սկսաւ կասկածիլ թէ իր տէրը կը նախանձէր։

Տիկինը չէր գիտեր թէ ի՛նչ բանի տեղի տուած էր. ան կ՚ամբաստանէր ինքզինքը ազնիւ Օթէլլօն մեղադրելուն համար, ու կը խորհէր վստահօրէն թէ սրտնեղիչ լուրեր Վենետիկէն կամ պետական չփոթութիւններ պղտորած էին անոր հոգին եւ բնաւորութիւնը, որ առաջուան պէս քաղցր չէր։

Տէզտէմօնա խորհեցաւ. «Մարդիկ աստուածներ չեն, եւ չենք կրնար սպասել անոնցմէ որ պահեն այն վերաբերմունքը զոր ամուսնութեան հարսանեկան օրը ցոյց կուտան»։ Դժբախտ կինը սկսաւ անիծել ինքզինքը Օթէլլօի բրտութիւնը անբարութեամբ դատելուն համար։

Օթէլլօ եւ Տէզտէմօնա դարձեալ հանդիպեցան իրարու, եւ Մաւրիտենացին աւելի բացորոշ կերպով ամբաստանեց զայն անհաւատարմութեան եւ ուրիշ մարդ մը սիրելուն համար, բայց չըսաւ թէ ո՛վ։

Օթէլլօ արտասուեց, իսկ Տէզտէմօնա ըսաւ.

«Աւա՜ղ, ի՛նչ չար օր է, ինչո՞ւ կուլաս»։

Օթէլլօ պատասխանեց ըսելով որ, կրնար ամէն տեսակ չարիքներ տանիլ քաջութեամբ — աղքատութիւն, հիւանդութիւն եւ չնորհազրկութիւն,— սակայն անոր անհաւատարմութիւնը խորտակած էր սիրտը։

Օթէլլօ սէզի մը նմանցուց Տէզտէմօնան որ այնչա՜փ աղուոր էր եւ այնչա՜փ անուշաբոյր՝ որ գլխու ցաւ կը պատճառէր։ Ան կը բաղձար որ Տէզտէմօնա երբեք ծնած չըլլար։

Երբ Օթէլլօ մեկնեցաւ, անմեղ տիկինը զարմանքէն այնչափ ապշահար եղած էր, որ ճնշող քուն մը

եկաւ վրան, ուստի ծառային փափաք յայտնեց անկողինը պատրաստել ու՝ հարսանեկան սաւանները վրան փռել: Տէզտէմօնա կ'ըսէր թէ մարդիկ իրենց մանկիկները մեղմ միջոցներով եւ դիւրին աշխատանքներով կը կրթեն, Օթէլլօ եւս զինքը կրնար չեխել այս եղանակով, որովհետեւ բարեմտութեամբ կը խորհէր որ ինք երեխայ մը ըլլալու էր, քանի որ կը յանդիմանուէր: Եւ ասիկա միակ գանգատն էր որ ըրաւ ազնուական տիկինը:

Տէզտէմօնա անկողին քաշուած ըլլալով, կը սպասէր որ իր տէրը հետեւէր իրեն եւ իսկոյն մրափեց իբրեւ արդիւնք չփոթ տրամադրութիւններու: Օթէլլօ սենեակ մտաւ, ամբողջովին լեցուած այն սեւ նպատակով որ խորհած էր վերջ դնելու համար իր տիկնոջ կեանքին. սակայն երբ տեսաւ զայն քունի մէջ, խորհեցաւ թէ պէտք չէր թափէր անոր արիւնը, ոչ ալ վիրաւորէր այն ճերմակ մորթը որ աւելի սպիտակ էր քան Ալապաստրը: Բայց վճռած էր որ ան մեռնէր, այլապէս ան պիտի ապրէր նոր մարդիկ դաւաճանելու համար, ինչպէս որ դաւաճանած էր իրեն:

Օթէլլօ վերջին անգամ համբուրեց Տէզտէմօնան, սակայն այս համբոյրը այնքան քաղցր էր որ ուզեց նորէն համբուրել, ու արտասուեց, միեւնոյն ատեն ըսելով որ անգութ արցունքներ էին անոնք:

Տէզտէմօնա արթնցաւ համբոյրներէն, եւ նայեցաւ Օթէլլօի որ ատամները կը կրճտէր ու աչքերը կը գալարէր: Խեղճ կինը գիտէր որ երբ ամուսինը այս երեւոյթն առնէր, միշտ չարագուշակ էր:

Օթէլլօ հրամայեց Տէզտէմօնայի մահուան պատրաստուիլ եւ աղօթել, որովհետեւ չէր ուզեր սպաննել մարմնին հետ հոգին ալ: Անմեղ կինը, անոր գըթութեան ապաւինած, կարեկցութիւն խնդրեց եւ

ուզեց գիտնալ իր սխալը։ Օթէլլօ յիշեց Կասսիօի անունը եւ Թաշկինակը զոր նուիրած էր։

Երբ անմեղունակ տիկինը կը չարունակէր ինքզինքը արդարացնել, Մաւրիտենացին այլեւս չուզեց լսել, այլ ծածկելով զայն սաւաններու մէջ, խեղդեց՝ մինչեւ որ մեռաւ։

Այս րոպէին տուն բերուեցաւ Կասսիօն վիրաւոր եւ արիւնահեղ։ Եակօ իր արարածներէն մէկը ղրկած էր սպաննելու զայն, բայց մահափորձը անյաջող անցնելով, Կասսիօի վիրաւորուած էր, այլ ոչ մահացու կերպով, ուստի Եակօ գաղտնիքը դուրս չհանելու համար սպաննեց այդ դաւադիր մարդը։ Սպաննեալին գրպանէն գտնուեցան կարգ մը նամակներ, որոնք Եակօի մեղսակցութիւնը կը հաստատէին եւ Կասսիօի անմեղութիւնը կասկածէ վեր կը դասէին։

Այս նամակներուն վրայ, Կասսիօ կուգար Օթէլլօէն ներողութիւն խնդրելու եւ հարցնելու թէ ինչո՞վ մեղաւոր եղած էր, որ Եակօն իրեն դէմ ղրկած էր սպաննելու համար։

Սոյն յայտնութիւնը կայծակի մը պէս իջաւ Օթէլլօի գլխուն, որ տեսաւ այժմ թէ մարդասպանէ մը տարբեր բան չէր եւ իր կինը, հէ՛ք ու անմեղ, միշտ հաւատարիմ մնացած էր իրեն։ Ցայտնութեան տագնապը կեանքը անտանելի կը դարձնէր եւ Օթէլլօ չդիմանալով ինկաւ իր սուրին վրայ, նետեց ինքզինքը իր սիրական, այլ անարգուած տիկնոջ մարմնին՝ եւ հոգին աւանդեց։

Այս անգութ եղելութիւնները ապշութեան եւ սարսափի յուզում յառաջ բերին բոլոր ներկաներուն մէջ, որովհետեւ Օթէլլօ լաւ համբաւ մը շինած էր։ Անիկա կաթոգին սիրող ամուսին մըն էր, մինչեւ որ սրիկայի մը նենգութիւնները յոռի ազդեցութիւն

գործեցին իր վրայ եւ ինք չնորհիւ իր ազնիւ բնութեան, երբեք չկասկածեցաւ այդ անպիտանէն։

Օթէլլօ իմաստութեամբ սիրած չէր, այլ չափազանց սիրած էր։ Իր սխալը հասկնալէ յետոյ, իր այրական աչքերը, թէպէտ սովոր չէին ամէն չնչին առիթի լալու, նոյնչափ առատ արցունքներ թափեցին, որչափ արաբական ծառերը կը հոսեցնեն իրենց խէժը։

Երբ մեռաւ ան, իր նախորդ բոլոր արժանիքներն ու քաջարի գործերը յիշուեցան։ Օթէլլօի յաջորդին այլեւս ուրիչ բան չէր մնար, բայց եթէ օրէնքի մեծագոյն խստութիւնները գործադրել Եակօի դէմ, որ խիստ չարչարանքներով մահուան ենթարկուեցաւ։

Օթէլլօի յաջորդը այնուհետեւ տեղեկագրեց Վենետիկի պետութեան համբաւաւոր զօրավարին ողբալի մահը։

# ԿՌՈՒԱՍԷՐ ԿՆՈՋ ԸՆՏԱՆԵՑՈՒՄԸ

*Կատարինէ, կռուասէրը, Փատուայի հարուստ պարոններէն մէկուն՝ Պափթիսթայի երէց աղջիկն էր, եւ անսանձ ոգի ու կատաղի բնաւորութիւն ունենալով, այնպիսի բարձրաձայն կռուազանութիւններ կ՚ընէր որ Փատուայի մէջ ամենուն ծանօթ էր կռուասէր Կատարինէ անունով:*

*Այս պատճառով շատ անհաւանական էր, գրեթէ անկարելի, որ գտնուէր մէկը որ համարձակէր ամուսնանալ այս օրիորդին հետ: Հասարակութիւնը շատ կը մեղադրէր Պափթիսթան որ իր հաւանութիւնը չէր ուզեր տալ այն բազմաթիւ ընտիր դիմումներուն որոնք կ՚ըլլային Կատարինէի մեղմաբարոյ քրոջը՝ Պիանկայի համար: Պափթիսթա կը յետաձգէր Պիանկայի բոլոր խնդրարկուներու դիմումները այն արդարացումով թէ՝ երբ մեծ աղջիկը յարմար ամուսնութիւն մը կնքէր, այնուհետեւ պիտի կրնային ազատօրէն մատաղատի Պիանկան ուզել:*

*Եւ պատահեցաւ որ Փեթրուքիօ անուն պարոն մը Փատուա գար, յատկապէս կին մը գտնելու համար: Այս պարոնը առանց յուսահատելու Կատարինէի բնութեան մասին շրջած լուրերէն, այլ միայն լսելով անոր հարստութեան եւ գեղեցկութեան համբաւը, վճռեց ամուսնանալ այս նշանաւոր կռուասէրին հետ եւ ընտանեցնել զայն հեզահամբոյր եւ վարելի կնոջ մը վիճակին: Արդարեւ ոչ մէկը այնքան յարմար էր այս հերքիւլեան աշխատութիւնը գլուխ հանելու՝ որքան Փեթրուքիօ՝ որուն ոգին Կա-*

տարինէի ոգիին չափ բարձր էր: Անիկա նրբամիտ եւ ամենազուարթ բնաւորութեամբ կատակախօս մըն էր, սակայն ներսէն այնչափ իմաստուն եւ այնպիսի ուղիղ դատողութիւնով մը օժտուած, որ շատ լաւ գիտէր բարկացոտ եւ կատաղի վարք մը կեղծել, երբ իր տրամադրութիւնները այնպէս հանդարտ էին որ ինքն իսկ կրնար խնդալ զուարթօրէն իր սեփական բարկութեան կեղծումին վրայ: Փեթրուքիօի խառնուածքը անհոգ եւ հանդարտ էր, եւ այն բուռն ձեւերը զոր կը կեղծէր, երբ Կատարինէի ամուսին դարձաւ, միայն զբօս էին իրեն համար, եւ աւելի ճիշտ, իր ընտիր դատողութեան համաձայն, միակ միջոցները որոնցմով կարելի էր յաղթել կատաղի Կատարինէի պէս կիներու յատուկ դիւրագրգռութեանը:

Այսպէս, փաղաքշելով, Փեթրուքիօ գնաց կըռուաէր Կատարինէի, սակայն նախ եւ առաջ հօրը Պափթիսթայի դիմեց, որպէսզի թոյլտուութիւն ստանար սիրաբանելու անոր մեղմ դստեր հետ: Փեթրուքիօ նրբամտութեամբ ըսաւ թէ լսած ըլլալով Կատարինէի ամչկոտ համեստութիւնը եւ մեղմ վարքը, Վերոնայէն եկած էր թախանձելու անոր սէրը: Հայրը թէպէտ կ'ուզէր որ աղջիկը ամուսնանար, սակայն ստիպուած եղաւ խոստովանիլ թէ Կատարինէ այս պատիւին յոռի պատասխաններ պիտի տար: Եւ արդէն շուտով յայտնի եղաւ անոր ազնուաբարոյ բաղադրութիւնը, որովհետեւ նուագի ուսուցիչը սենեակէն ներս խուժեց գանգատելու որ մեղմ Կատարինէն, աշակերտուհին, իրեն՝ ուսուցչին գլուխը կոտրած էր վինով, եւ պատճառը այն էր որ Կատարինէ միտքը դրած էր անպայման դասին մէջ սխալ մը գտնել:

Այս բանը լսելով Փեթրուքիօ ըսաւ. «Քաջա-

*սիրտ աղջիկ մը ըլլալու է, եւ ես զինքը կը սիրեմ աւելի քան երբեք, ուստի կը բաղձամ խօսակցութիւն մը ունենալ հետը»: Փեթրուքիօ այնպէս մը ըրաւ որ ծերունի պարոնը դրական պատասխան մը տար, եւ յետոյ աւելցուց. «Սինեօր Պափթիսթա, կ'արտորամ, ես ամէն օր չեմ կրնար սիրաբանելու համար հոս գալ: Դուք կը ճանչնաք հայրս որ մեռաւ եւ իր բոլոր կալուածներուն ու ինչքերուն ժառանգ թողուց զիս, ուստի ըսէք ինծի թէ ի՛նչ օժիտ պիտի տաք, եթէ ձեր աղջկան սէրը ապահովեմ»:*

*Պափթիսթա խորհեցաւ որ Փեթրուքիօի ընթացքը քիչ մը կոշտ էր իբր սիրաբանող, սակայն միւս կողմէ ուրախ էր որ պիտի ամուսնացնէր Կատարինէն, ուստի խոստացաւ քսան հազար քրաուն տալ իբր օժիտ եւ իր կալուածներուն կէսը իր մահէն յետոյ: Տարօրինակ այս գործը շուտով համաձայնութեան մը կապուեցաւ եւ Պափթիսթա գնաց իմաց տալու իր խեռ աղջկան թէ թեկնածու մը դիմում կատարած էր: Ապա հայրը Փեթրուքիօի ղրկեց Կատարինէն հետամտութիւնը լսելու:*

*Այս միջոցին Փեթրուքիօ ինք իր հետ կը կարգադրէր թէ ի՛նչ սիրաբանութեան եղանակի պիտի հետեւէր. «Երբ մօտս գայ, կ'ըսէր ինքնիրեն, պիտի փաղաքշեմ զուարթութեամբ, իսկ եթէ զիս ծաղրէ, անոր պիտի ըսեմ թէ սոխակի մը քաղցրութեամբ կ'երգէ, եթէ յօնքերը կիտէ, պիտի ըսեմ որ նոյնչափ մաքուր կ'երեւի որչափ ցօղէ մը նոր լուացած վարդը: Եթէ բառ մը չխօսի, պիտի գովեմ իր լեզուին պերճախօսութիւնը. եթէ հրամայէ որ զինքը ձգեմ երթամ, իմ շնորհակալութիւններս պիտի յայտնեմ այնպիսի եղանակով մը որ իբրեւ թէ շաբաթ մը իրեն հետ կենալ հրամայած ըլլար»: Շատ չանցաւ եւ չքեղ Կատարինէն ներս մտաւ:*

Փեթրուքիօ նախ ինք խօսելով ըսաւ. «Բարի լոյս, Կատա՛ր, կ'իմանամ որ այս է ձեր անունը»։ Կատարինէ չախրելով այս հասարակ ողջոյնը, նկատեց. «Անոնք որ ինծի հետ կը խօսին, զիս Կատարինէ կը կոչեն»։

«Դուք կը ստէք, պատասխանեց սիրաբանողը, որովհետեւ պարզապէս Կատար կը կոչուիք, եւ գեղեցիկ Կատար, երբեմն ալ կռուասէր Կատար, բայց, Կատա՛ր, դուք ամենէն սիրուն Կատարն էք ամբողջ քրիստոնեայ աշխարհին մէջ, հետեւաբար լսեցի ձեր մեղմաբարոյ նկարագրին գովեստները ամէն քաղաքի մէջ, Կատա՛ր, հիմա եկած եմ թախանձելու որ կին ըլլաք ինծի»։

Ցետոյ երկուքը օտարոտի սիրաբանութիւն մը ըրին, որովհետեւ Կատարինէ բարձրաձայն եւ բարկացոտ խօսքերով ցոյց տուաւ թէ ինչպէ՛ս իրաւունքով չահած էր կռուասէր համբաւը, մինչ Փեթրուքիօ տակաւին կը գովաբանէր անոր քաղցր ու քաղաքավար խօսքերը։ Սակայն լսելով որ հայրը կուգայ, կարելի եղածին չափ արագ սիրաբանութիւն մը ընելու մտադրութեամբ Փեթրուքիօ ըսաւ. «Անուշ Կատարինէ, մէկդի դնենք այս անօգուտ խօսակցութիւնը, քանի որ ձեր հայրը հաւանութիւն տուած է որ դուք իմ կինս ըլլաք, արդէն օժիտի մասին համաձայնած ենք։ Ուզէք կամ ոչ պիտի կարգըւիմ ձեզի հետ»։

Պափթիսթա անմիջապէս ներս մտաւ, եւ Փեթրուքիօ յայտնեց անոր թէ աղջիկը բարութեամբ ընդունած էր զինքը եւ խոստում տուած էր յառաջիկայ կիրակի ամուսնանալու։ Կատարինէ հերքեց խօսքերը եւ յայտնեց թէ կիրակի օր կը նախընտրէր տեսնել Փեթրուքիօի կախուիլը քան հետը ամուսնանալ։ Մեղադրեց իր հայրը որ կ'ուզէր Փեթրու-

քիօի պէս խենթ գլուխ մարդասպանի մը հետ պառկել զինքը: Իսկ ընդհակառակը, Փեթրուքիօ հօրմէն խնդրեց բնաւ նկատի չառնել աղջկան խիստ բառերը, որովհետեւ երկուքն ալ նախապէս համաձայնած էին որ աղջիկը պիտի դժկամակէր հօրը առջեւ, մինչ առանձին եղած ատեննին Կատարինէ մոլի եւ սիրող սիրտ մը ցոյց տուած էր:

Յետոյ Փեթրուքիօ դառնալով աղջկան. «Ձեռքդ ինծի տո՛ւր, Կատար, Վենետիկ պիտի երթամ հարսնիքի օրուան ընտիր կազմածներ առնելու քեզի: Խնճոյքը պատրաստէ՛, հայր, եւ հրաւիրէ հարսանիքի հրաւիրեալները: Ապահովաբար մատանիներ, հանդերձներ եւ թանկագին կերպասներ պիտի բերեմ, որպէսզի Կատարինէն շքեղ երեւայ: Համբուրէ՛ զիս, Կատա՛ր, որովհետեւ կիրակի օր պիտի ամուսնանանք»:

Արդ, յաջորդ կիրակի օր բոլոր հարսանեկան հրաւիրեալները հաւաքուած էին, սակայն շատ սպասել պէտք եղաւ, մինչեւ որ Փեթրուքիօ յայտնուեցաւ: Կատարինէն նեղութենէն արտասուեց, խորհելով որ Փեթրուքիօ զինքը ծաղրի առարկայ դարձուցած էր, սակայն վերջապէս եկաւ ան, առանց Կատարինէի խոստացած հարսանեկան զարդրանքներէն հատ մը իսկ բերելու, ոչ ալ փեսայի մը պէս հագուած էր: Տարօրինակ կերպով անշնորհք հագուստով կը ներկայանար փեսան եւ կարծես զբօս մը կ'ուզէր ընել այն լուրջ գործը որուն համար եկած էր, մինչեւ իսկ Փեթրուքիօի ծառան եւ իծած ձիերը սոոր եւ ցնորածին ձեւով հագուած էին:

Ամէն խօսք օգուտ չըրաւ համոզելու Փեթրուքիօն որ հագուստները փոխէր, որովհետեւ ան կը պնդէր թէ Կատարինէն իրեն հետ պիտի ամուսնանար եւ ոչ թէ հագուստներուն հետ: Այսպէս հարս-

նեւորները տեսնելով որ զուր տեղն է վիճիլ հետը, ամէնը եկեղեցի գացին, մինչ Փեթրուքիօ միեւնոյն խենթ ընթացքը կը շարունակէր: Երբ քահանան հարցուց անոր թէ Կատարինէն կի՞ն կ՚ընդունէ՞ր, այնպիսի բարձր ձայնով երդում ըրաւ թէ կ՚ընդունի, որ քահանանապշահար եղաւ եւ ձեռքի գիրքը գետինը ձգեց: Երբ քահանան խոնարհեցաւ առնելու ինկած գիրքը, Փեթրուքիօ այնպիսի ապտակ մը իջեցուց անոր որ խեղճ մարդը իր գրքին հետ մէկտեղ նորէն գետին գլորեցաւ:

Ամուսնական արարողութեան ամբողջ ընթացքին Փեթրուքիօ այնպէս ոտքը գետինը կը զարնէր ու կը հայհոյէր որ զուարթաբարոյ Կատարինէն կը դողդողար եւ կը ցնցուէր վախէն: Արարողութիւնը վերջ գտաւ եւ դեռ եկեղեցին թողած չէին, երբ փեսան գինի ուզեց եւ բաժակը պարպեց ներկաներուն առողջութեանը, բարձր ձայնով մը, յետոյ գաւաթին յատակը մնացած քիչ մը գինին ուղղակի ժամկոչին երեսին նետեց: Փեսան այս արտառոց արարքին պատճառ կը բռնէր ժամկոչին մօրուքը որ կը բարակնար եւ կարծես գինին խմած ատենը տկուքը կ՚ուզէր: Անշուշտ այսպիսի ամուսնութիւն մը երբեք տեղի ունեցած չէր, սակայն Փեթրուքիօ այս վայրագութիւնը ստանձնած էր, աւելի լաւ յաջողելու համար դաւադրութեան մը մէջ որով պիտի ընտանեցնէր իր խեռ կինը:

Պափթիսթա հոյակապ հարսանեկան խնճոյք մը սարքած էր, սակայն երբ եկեղեցիէն վերադարձան, Փեթրուքիօ Կատարինէի թեւէն պինդ բռնելով յայտարարեց թէ մտադիր է իր կինը անմիջապէս տուն տանիլ: Ո՛չ մէկ խրատ աներոջ կողմէ, ոչ ալ բարկացոտ բառեր կարտղած Կատարինէէն՝ չկրցան անոր միտքը փոխել: Ան կը պահանջէր էրկան իրա-

ունքը՝ իրեն հաճելի եղած ձեւով վարուելու իր կնոջ հետ։ Այսպէս հետն առաւ տարաւ Կատարինէն եւ այնպէս կրակոտ ու վճռական ձեւացուց ինքզինքը որ մէկը չհամարձակեցաւ կեցնելու փորձ մը ընել։

Փեթրուքիօ խեղճուկ ձիու մը վրայ հեծցուց իր կինը։ Կենդանին նիհար ու վտիտ էր եւ ընտրուած էր այս նպատակին համար․ Փեթրուքիօ եւ իր ծառան նոյնչափ գէշ ձիերու վրայ հեծան։ Երեքը միասին ճամբորդեցին խորտուբորտ եւ ցեխոտ ճամբաներէ։ Երբ Կատարինէի ձին կը գայթէր, Փեթրուքիօ կը յարձակէր խեղճ ընկճուած անասունին վրայ ու կը հայհոյէր, կարծես աշխարհի մէջ իրմէ աւելի բարկացոտ մարդ չգտնուէր, մինչ անասունը հազիւ կրնար շարժիլ իր բեռան տակ։

Վերջապէս յոգնաջան ճամբորդութենէ մը ետք, տուն հասան, ճամբու ամբողջ ընթացքին Կատարինէ ուրիշ բան չլսեց, բայց եթէ վայրի յիշոցներ որոնք Փեթրուքիօի կողմէ ուղղուած էին ծառային եւ ձիերուն։

Փեթրուքիօ ազնուութեամբ բարի գալուստ մաղթեց իր կնոջը, սակայն որոշեց չթոյլատրել որ այդ գիշեր անիկա սնունդ առնէր եւ ոչ ալ հանգիստ ունենար։

Սեղանները տարածուեցան եւ ընթրիքը մատուցուեցաւ, բայց Փեթրուքիօ ամէն կերակուրի թերութիւն գտնել ձեւացնելով, միսը գետինը կը նետէր եւ կը հրամայէր ծառաներուն զայն առնիլ տանիլ։ Այս ամէնը ըրաւ Կատարինէի սիրոյն, որպէսզի անիկա անխնամ միսեր չճաշակէր։

Կատարինէ խոնջաբեկ ու անճաշ, քաշուեցաւ հանգստանալու, սակայն ամուսինը միեւնոյն թերութիւնը գտաւ անկողնին ալ․ առաւ բարձերն ու

սաւանները եւ նետեց սենեակին չորս կողմը, այնպէս որ կինը բռնադատուեցաւ աթոռի մը վրայ նըստիլ։ Խեղճը հոս ալ հանգիստ չգտաւ, որովհետեւ եթէ պատահէր որ քնանար, էրիկը կ'արթնցնէր զինքը բարձր ձայնով բարկանալով ծառաներուն որոնք իբր թէ կնոջ հարսանեկան անկողինը գէշ պատրաստած էին։

Յաջորդ օրը Փեթրուքիօ միեւնոյն ընթացքը բռնեց եւ աղուոր խօսքեր ըսաւ Կատարինէի, սակայն երբ կինը կը փորձէր բան մը ուտել, ինք անպատճառ պակասութիւն մը կը գտնէր բերուած կերակուրներուն։ Այսպէս տախտակամածին վրայ նետեց նախաճաշը ինչպէս նետած էր ընթրիքը։ Իսկ Կատարինէն, այն գոռոզ Կատարինէն, ծառաներէն սիրով կը խնդրէր որ գաղտնապէս կտոր մը ուտելիք բերէին իրեն, սակայն անոնք հրահանգուած ըլլալով Փեթրուքիօէն, կը պատասխանէին թէ չէին համարձակեր ոեւէ սնունդ տալ որ անծանօթ ըլլար իրենց տիրոջ։

«Ա՛հ, կ'ըսէր կինը, այս մարդը սովամա՞հ ընելու համար ամուսնացաւ հետս։ Իմ հօրս տունը բախող մուրացիկներն անգամ սնունդ կը ստանան, իսկ ես որ չէի գիտեր թէ ի՛նչ է բանի մը համար աղերսելը, անօթի եմ սնունդի պակասէն եւ ցնորած եմ անքնութենէ։ Յիշոցներով արթուն կը պահուիմ եւ կռիւով կը կերակրուիմ, իսկ ամէն բանէ աւելի զիս տառապեցնողը սա է թէ այս բոլորը կատարեալ սիրոյ անունով կ'ըլլան։ Ամուսինս այն յաւակնութեամբ կ'ընէ ասոնք որ եթէ քնանայի կամ ուտէի, իսկոյն պիտի մեռնէի»։

Կատարինէի առանձնախօսութիւնը ընդմիջուեցաւ Փեթրուքիօի ներս մտնելով։ Այս վերջինը չէր ուզեր որ իր կինը բոլորովին սոված մնար, ուստի

փոքր կտոր մը միս բերած էր անոր։

«Գործերը ի՞նչպէս կ՚երթան, իմ անուշիկ Կատարս, ըսաւ. ահա կը տեսնես թէ որքա՛ն ջանադիր եմ, այս մսին կտորը ես պատրաստեցի, իմ սէրս, եւ անշուշտ իմ բարութիւնը արժանի է շնորհակալութեան։ Ի՞նչ, խօսք չունի՞ս եւ շնորհակալ չե՞ս ըլլար։ Ո՛չ ուրեմն, եփած միս չես սիրեր դուն, եւ հետեւաբար իմ յանձն առած բոլոր նեղութիւններս աննպատակ եղած են»։

Փեթրուքիօ հրամայեց ծառային մէկդի տանիլ կերակուրը։

Սաստիկ անօթութիւնը խոնարհեցուցած էր հըպարտութիւնը Կատարինէի որ թէեւ ի սրտէ բարկացած, բայց ըսաւ.

«Քենէ կը խնդրեմ որ թոյլատրես չհեռացնել միսին կտորը»։

Սակայն այս կէտին չէր որ Փեթրուքիօ կ՚ուզէր բերել իր կինը, ուստի պատասխանեց.

«Ամենաչնչին ծառայութիւնը կը վճարուի շնորհակալութիւններով եւ այսպէս պէտք է ընես դուն ալ ինծի, նախ քան միսը ուտելդ»։

Կատարինէ ակամայ վրայ բերաւ.

«Քենէ շնորհակալ եմ, պարոն»։

Այս խօսքէն յետոյ, ամուսինը թոյլատրեց որ կինը աղքատիկ կերակուր մը ուտէ, եւ ըսաւ.

«Կատա՛ր, թող ազնիւ սիրտդ լաւցնէ այս կերակուրը, կե՛ր ախորժակով։ Այժմ, իմ մեղրանուշ սէրս, հօրդ տունը պիտի վերադառնանք կարելի եղած զուարթութեամբ, մետաքսեայ վերարկուներով, գլխարկներով, ոսկիէ մատանիներով, օձիքներով, շալերով, հովահարներով եւ զարդարանքներու կրկնակ փոխնորդներով։ Հոն պիտի ուտենք եւ խմենք։

Եւ որպէսզի հաւատացնէր իր կինը, թէ իրապէս ըսածները պիտի կատարէր, Փեթրուքիօ ներս կանչեց դերձակ մը եւ մանրավաճառ մը որոնք կնոջ համար պատրաստուած նոր հանդերձներ բերին։ Ամուսինը կերակուրին աւելէն ծառային տուաւ, մինչ կինը կիսով չափ գոհացուցած չէր իր անօթութիւնը։

«Ճաշեցի՞ք։ Վերջացա՞ւ»։

Մանրավաճառը գլխարկ մը ներկայացուց. «Ահա, ըսաւ, գլխարկ մը զոր ձեր մեծութիւնը ապսպրեց»։

Փեթրուքիօ յանդիմանեց մանրավաճառը, առարկելով որ գլխարկը թանաամանի մը մէջ կաղապարուած էր եւ խեցեմորթէ կամ ընկոյզի կեղեւէ մը աւելի մեծ չէր, ուստի կը փափաքէր որ ետ տանէր զայն եւ աւելի մեծ մը շինէր։

«Բայց պէտք է ունենամ այդ գլխարկը, մէջ ինկաւ Կատարինէ, բոլոր ազնուական տիկինները այս տեսակ գլխարկներ կը կրեն»։

— «Երբ դուն ազնիւ ըլլաս, այս գլխարկէն հատ մը պիտի ունենաս, բայց մինչեւ այդ ատեն պիտի չունենաս» ըսաւ էրիկը։

Կատարինէի կերած միսը կենդանացուցած էր իր ընկճուած ոգին, ուստի պատասխանեց.

«Ինչո՞ւ համար այդպէս, պարոն, կը յուսամ թէ թոյլտուութիւն ունիմ խօսելու, եւ կ'ուզեմ խօսիլ։ Ես տղայ չեմ, ոչ ալ երեխայ, քու առաւելութիւններդ թոյլ չտուին որ լսես իմ միտքս, իսկ եթէ չես կրնար, լաւ է որ ականջներդ գոցես»։

Փեթրուքիօ չուզեց լսել այս բարկացոտ խօսքերը, որովհետեւ բարեբախտաբար աւելի լաւ եղանակ մը գտած էր իր կինը վարելու, եւ չէր ուզեր անախորժ վիճաբանութեամբ մը զայն կրթել։

«Հա՛, չնչին գլխարկ մըն է, ճշմարիտ կ'ըսես։

Ես քեզ կը սիրեմ զայն չսիրելուդ համար»։

— «Սիրէ զիս կամ մի սիրեր, պատասխանեց Կատարինէ, ես կը սիրեմ գլխարկը, ուստի պէտք է որ այս գլխարկը ունենամ, կամ ոչ մէկը պիտի չընտրեմ»։

— «Դուն կը փափաքիս շրջազգեստը տեսնել», ըսաւ Փեթրուքիօ տակաւին սխալ հասկնալ ձեւացնելով։

Դերձակը առաջ անցաւ եւ ցոյց տուաւ Կատարինէի համար շինուած ընտիր շրջազգեստ մը։ Փեթրուքիօ որուն նպատակն էր կնոջը չտալ ո՛չ շրջազգեստը եւ ոչ ալ գլխարկը, նոյն չափ թերութիւն գտաւ անոնց վրայ։

«Գթութի՛ւն, երկինք, ի՛նչ նիւթ է ասիկա։ ի՛նչ, ասիկա թեզնի՞ք կը կոչէք։ Կիսաբոլորակի կը նմանի, վերէն վար կտրուած խնձորէ կարկանդակի մը պէս»։

— «Դուք պատուիրեցիք զայն ժամանակի նորաձեւութեան համաձայն», պատասխանեց դերձակը։

Իսկ Կատարինէ յայտնեց թէ բնաւ երբեք այսպիսի բարեձեւ շրջազգեստ մը տեսած չէր։ Կնոջը այս հաւանութիւնը բաւական էր Փեթրուքիօի, որպէսզի դերձակն ու մանրավաճառը իրենց ապրանքներու փոխարժէքը ստանային, ուստի գաղտնապէս խօսելով անոնց՝ իր արդարացուցիչ պատճառները յայտնեց իր երեւութապէս արտառոց վարուեցողութեան համար, եւ անմիջապէս զանոնք դուրս վռնտեց սենեակէն բարկացոտ բառերով եւ կատաղի շարժումներով։ Ապա Կատարինէի դառնալով, ըսաւ.

«Լաւ, իմ Կատարս, հօրդ տունը պիտի երթանք մեր վրայի խեղճ հագուստներովն իսկ»։

Փեթրուքիօ հրամայեց որ ձիերը պատրաստեն, որպէսզի Պափթիսթայի տունը հասնէին մինչեւ ճաշի ատեն, այսինքն մինչեւ ժամը 7, մինչդեռ այս հրամանը տուած ատեն առտու կանուխ չէր, այլ ճիշդ կէս օր: Կատարինէ՝ ընկճուած էրկանը վարուելակերպին տաստկութենէն, թէեւ համեստութեամբ մը, սիրտ ըրաւ ըսել·

«Կը համարձակիմ յայտնել ձեզ, պարոն, որ ժամը երկուքն է արդէն եւ հօրս տունը հասնելէ առաջ ընթրիքի ատեն պիտի ըլլայ»:

Սակայն Փեթրուքիօ նպատակ ունէր իր կինը այնպիսի կատարեալ կերպով մը նուաճել, որ իր կողմէ խօսուած ամէն բանի հաւանութիւն տար հօրը տունը տանելէ առաջ: Ուստի իբրեւ թէ արեւուն տէրն իսկ եղած ըլլար, եւ ժամերուն ալ կարենար հրամայել, յայտնեց թէ ճամբայ ելլելէ առաջ պիտի կրնար ունենալ իր ուզած ժամը, «որովհետեւ ինչ որ ըսեմ կամ ընեմ դուք տակաւին կը խաչաձեւէք: Այսօր պիտի չերթամ, եւ երբ երթամ, այն ժամը պիտի ըլլայ ո՛ր ժամը որ ըսեմ»:

Ուրիշ օր մը Կատարինէ բռնադատուեցաւ վարժեցնելու իր նոր գտած հնազանդութիւնը եւ մինչեւ որ ամուսինը անոր հպարտ ոգին կատարեալ հպատակութեան չբերաւ, ան չհամարձակեցաւ յիշել թէ հակառակութեան պէս բառ մը գոյութիւն ունի, եւ այն ատեն միայն Փեթրուքիօ թոյլ տուաւ որ հօրը տունը երթայ իր կինը: Մինչեւ անգամ երբ ճամբայ ելած էին, Կատարինէ ետ դառնալու վտանգին տակ կը գտնուէր դեռ, որովհետեւ համարձակած էր ակնարկել թէ արեւն էր կէսօրին ճառագայթողը, երբ էրիկը կը հաստատէր թէ լուսինն էր ան:

«Հիմա, յանուն մօրս զաւկին որ ես ինքս եմ, ըսաւ Փեթրուքիօ, ճառագայթողը լուսինը պիտի

ըլլայ, կամ աստղերը, կամ ինչ որ ես ըսեմ հօրդ-տունը հասնելէ առաջ»: Յետոյ ետ դառնալ ձեւացուց, բայց Կատարինէ, ոչ եւս կռուասէր Կատարինէն, այլ հնազանդ կինը, ըսաւ.

«Կ'աղաչեմ, յառաջ երթանք, քանի որ մինչեւ հոս եկած ենք, ճառագայթողը թող արեւը ըլլայ, լուսինը ըլլայ, կամ ինչ որ հաճելի է քեզի, եւ եթէ քեզի հաճոյք կը պատճառէ զայն հսկապատրոյգ մոմ կոչել, այսուհետեւ կ'ուխտեմ որ անիկա ինծի համար ալ այն պիտի ըլլայ»:

Սակայն Փեթրուքիօ որոշած էր փորձի ենթարկել կնոջ հնազանդութիւնը հետեւեալ կերպով:

«Կ'ըսեմ որ լուսինն է այն»:

— «Գիտեմ որ լուսինն է», պատասխանեց կինը:

«Դուն կը ստես, օրհնեալ արեւն այն», ըսաւ Փեթրուքիօ:

— «Այն ատեն օրհնեալ արեւն է, պատասխանեց Կատարինէ, որովհետեւ արեւը արեւ չէ, երբ դուն կ'ըսես որ չէ. ինչ անուն որ ուզես տալ անոր, ճիշդ ան է եւ յաւէտ անանկ պիտի ըլլայ Կատարինէի համար»:

Ասոր վրայ Փեթրուքիօ թոյլատրեց որ կինը շարունակէ իր ճամբան, բայց աւելի եւս փորձելու համար անոր խոնարհող բնութեան տեւականութիւնը, հանդիպած ծերունի պարոնի մը խօսք ուղղեց այնպիսի ձեւով մը որ իբրեւ թէ ան մանկամարդ կին մը եղած ըլլար:

«Բարի լոյս, ազնիւ տիրուհի», ըսաւ ծերունիին, ու դառնալով Կատարինէի՝ հարցուց թէ այսպիսի գեղեցիկ տիրուհի մը տեսա՞ծ էր երբեք: Յետոյ գովելով ծերուկին կարմիր ու ճերմակ այտերը, անոր աչքերը բաղդատեց երկու փայլուն աստղերու հետ:

Դարձեալ խօսեցաւ անոր ու ըսաւ.

«Գեղեցիկ ու նազելի օրիորդ, բարի լո՛յս անգամ մը եւս»:

Յետոյ կնոջը դարձաւ. «քաղցր Կատար, համբուրէ այս կինը իր գեղեցկութեան համար»:

Կատարինէ, այժմ բոլորովին պարտուած, անմիջապէս որդեգրեց իր ամուսնին կարծիքը եւ անոր նման խօսք ուղղելով ծերունի պարոնին, ըսաւ.

«Մատաղ բողբոջուն կոյս, դուն սիրուն ես, եւ թարմ եւ քաղցր. ո՞ւր կ'երթաս, եւ ո՞ւր է բնակարանդ: Երջանիկ են ծնողքը ասանկ գեղեցիկ զաւակի մը»:

— Ի՛նչ, ինչպէ՞ս ես, Կատար, ըսաւ Փեթրուքիօ, կը յուսամ թէ գժուած չես. աս մարդ մըն է, ծեր եւ խորշոմած, թառամած ու թօշնած, եւ ոչ թէ օրիորդ մը, ինչպէս դուն կ'ըսես»:

Կատարինէ պատասխանեց.

«Ներեցէք ինծի, ծերունի պարոն, արեւը այնքան շլացուց աչքերս որ ամէն բան ինծի կանաչ կ'երեւի: Արդ, կը տեսնեմ որ դուք յարգելի հայր մըն էք եւ կը յուսամ թէ պիտի ներէք իմ յիմար սխալիս»:

— «Ներեցէք, բարի ծերունի պարոն, ըսաւ Փեթրուքիօ, եւ ըսէք մեզ թէ ո՛ր կողմը կը ճամբորդէք; մենք ուրախ պիտի ըլլայինք ձեր բարի ընկերութենէն, եթէ մեր ճամբուն կը հետեւիք»:

Ծերունին պատասխանեց.

«Ազնիւ պարոն եւ զուարթ տիկին, ձեր արտակարգ հանդիպումը զիս ապշեցուց. իմ անունս Վինսենթիօ է. այցելութեան կ'երթամ զաւակներէս մէկուն որ Փատուա կը բնակի:

Փեթրուքիօն այն ատեն ճանչցաւ ծերունին որ

երիտասարդ Լիւսենթիօի հայրն էր։ Այս երիտասարդ պարոնը պիտի ամուսնանար Պափթիսթայի աւելի դեռատի աղջկան՝ Պիանկայի հետ։

Փեթրուքիօ պատմեց ծերունիին թէ իր տղան հարուստ ամուսնութիւն մը կնքելու վրայ էր եւ ծերունին շատ ուրախացաւ այս տեղեկութիւններէն։ Ամէնը միասին հաճելի ճամբորդութիւն մը ըրին, մինչեւ որ հասան Պափթիսթայի տունը ուր մեծ խումբ մը հաւաքուած էր տօնելու Պիանկայի հարսնիքը Լիւսենթիօի հետ, որովհետեւ Պափթիսթա հաճոյքով հաւանած էր Պիանկայի ամուսնութեան, կատարինէն ձեռքէ հանուելէն ետքը։

Երբ ներս մտան, Պափթիսթա բարի գալուստ մաղթեց անոնց՝ հարսանեկան խնճոյքին։ Ներկայ էր նաեւ ուրիշ նոր ամուսնացած ամոլ մը։

Լիւսենթիօ, Պիանկայի ամուսինը, եւ Հօրթենսիօ, միւս նոր ամուսնացած մարդը, չէին կրնար զսպել իրենք զիրենք խորամանկ կատակներէ որոնք կ'ակնարկէին Փեթրուքիօի կնոջ խեռ տրամադրութեանց, եւ այս սիրամոլ փեսաները վերին աստիճան գոհ երեւցան իրենց ընտրած տիկիններու մեղմ բնաւորութենէն, միեւնոյն ատեն ծիծաղելով Փեթրուքիօի նուազ բարեբախտ ընտրութեան վրայ։

Փեթրուքիօ քիչ կարեւորութիւն տուաւ անոնց կատակներուն, մինչեւ որ տիկինները ճաշէն ետքը քաշուեցան։ Այպա նշմարեց որ իր անները՝ Պափթիսթա նոյնպէս խնդուքին մէջ միացած էր իրեն դէմ, որովհետեւ երբ Փեթրուքիօ պնդեց թէ իր կինը աւելի հնազանդ է քան միւսները, կատարինէի հայրը ըսաւ. «Հիմա, որդի Փեթրուքիօ, կը վախնամ բարի տխրութեամբ մը որ ամէնքէն կռուասէրը դուն առիր»։

«Լաւ, ըսաւ Փեթրուքիօ, ես կ'ըսեմ ո՛չ, եւ

*որպէսզի ճշմարտութիւնը խօսած ըլլալուս ապահովութիւնը տամ, թո՛ղ մեզմէ իւրաքանչիւրը իր կինը կանչէ, եւ որուն կինը որ առաջին անգամ ամենէն հնազանդը ըլլայ եւ հոս գայ երբ կանչուի, թող անոր էրիկը գրաւ մը վաստկի եւ այդ գրաւը հիմակուընէ առաջարկենք»:*

*Այս գործին սիրով հաւանեցան միւս երկու ամուսինները, որովհետեւ կատարելապէս վստահ էին թէ իրենց մեղմաբարոյ կիները աւելի հնազանդ պիտի ըլլային քան պինդգլուխ Կատարինէն: Քսան* գրաունի *գրաւ մը առաջարկեցին որուն Փեթրուքիօ զուարթութեամբ առարկեց ըսելով որ այդչափ գրաւ իր բազէին կամ քերծէին վրայ կը դնէր, իսկ իր կնոջ վրայ՝ քսան անգամ աւելի շատ:*

*Լիւսենթիօ եւ Հօրթենսիօ գրաւը հարիւր* գրաու-նի *բարձրացուցին: Փորձը սկսաւ. Նախ Լիւսենթիօ իր ծառան ղրկեց Պիանկայի յայտնելու համար թէ կը փափաքէր որ իրեն գար: Ծառան վերադարձաւ ու ըսաւ.*

*«Տէ՛ր, իմ տիրուհիս ձեզ կը տեղեկացնէ թէ զբաղած է եւ չի կրնար գալ»:*

*— «Ինչպէ՞ս, միջամտեց Փեթրուքիօ, կ՚ըսէ թէ զբաղած է եւ չի՞ կրնար գալ. կնոջ մը վայե՞լ պատասխան է այդ»:*

*Բոլորը Փեթրուքիօի վրայ խնդացին եւ մաղթեցին որ Կատարինէն ատկէ աւելի գէշ պատասխան մը չի տար:*

*Կարգը հիմա Հօրթենսիօին էր իր կինը կանչելու: Ան ըսաւ իր ծառային. «գնա՛ եւ աղաչէ կնոջս որ ինծի գայ»:*

*«Օհօ՛, աղաչե՛լ անոր, նկատեց Փեթրուքիօ, ո՛չ, այն ատեն պիտի պարտաւորուի գալ»:*

*«Կը վախնամ պարոն, պատասխան տուաւ Հօր-*

*թենսիօ, որ ձեր կինը աղաչանքի ալ պիտի չզիջանի»։*

*Սակայն այս քաղաքավար էրիկը շուտով գոյնը նետեց քիչ մը, երբ ծառան վերադարձաւ առանց տիրուհիին։*

*Հորթենսիօ ծառային ըսաւ. «Ի՞նչ է, ո՞ւր է կինս»։*

*«Տէ՛ր, պատասխանեց ծառան, Տիրուհիս կ՚ըսէ թէ դուք բարեմիտ կատակ մը կ՚ընէք, եւ հետեւաբար չ՚ուզեր գալ։ Կը հրամայէ որ դուք իրեն երթաք»։*

*«Գէշէն գէշ» նկատեց Փեթրուքիօ եւ խակոյն իր ծառան ղրկեց ըսելով. «մանչո՛ւկ, գնա տիրուհիիդ եւ ըսէ թէ կը հրամայեմ իրեն որ ինծի գայ»։*

*Յումբը հազիւ ժամանակ ունեցաւ խորհելու թէ կինը պիտի չհնազանդէր էրկանը հրամաններուն, երբ Պափթիսթա արմանք զարմանք կտրած բացագանչեց. «սուրբ կոյսը վկայ, ահա Կատարինէ՛ն հոս կուգայ»։*

*Արդարեւ Կատարինէն ներս մտաւ եւ հեզութեամբ ըսաւ Փեթրուքիոյի. «Ի՞նչ է ձեր կամքը պարոն, որ զիս հոս կանչեցիք»։*

*«Ո՞ւր է քոյրդ եւ Հորթենսիոյի կինը», հարցուց ամուսինը։*

*— «Նախասենեակի կրակին քով նստեր կը խորհրդակցին», պատասխանեց Կատարինէ։*

*«Գնա՛, հոս բեր զանոնք», ըսաւ Փեթրուքիօ։*

*Կատարինէ մեկնեցաւ առանց բառ մը ըսելու իր ամուսնին հրամանը կատարելու համար։*

*«Հոս հրաշք մը կայ, ըսաւ Լիւսենթիօ, եթէ հրաշքի մասին խօսինք»։*

*«Այդպէս ալ է, վրայ բերաւ Հորթենսիօ, կը զարմանամ թէ այս ի՛նչ կը նշանակէ»։*

«Ամուսնութիւնը, ըսաւ Փեթրուքիօ, կը նշանակէ խաղաղութիւն, սէր, հանդարտ կեանք, եւ արդար գերակշռութիւն, մէկ խօսքով՝ ամէն բան որ քաղցր ու երջանիկ է»:

Կատարինէի հայրը չափազանց ուրախացաւ իր աղջկան բարեփոխութենէն եւ դառնալով՝ «հիմա իրաւացի ես, որդի Փեթրուքիօ, ըսաւ, շահեցար գրաւը: Բայց ես ուրիշ քան հազար գրաուն պիտի աւելցնեմ կնոջդ օժիտին վրայ, իբրեւ թէ ան ուրիշ դուստր մը եղած ըլլար ինծի, որովհետեւ անճանաչելիօրէն փոխուած է»:

«Ո՛չ, ըսաւ Փեթրուքիօ, գրաւը արժանաւորապէս շահած ըլլալս ցոյց տալու համար՝ տակաւին ուրիշ նշաններ ալ ցոյց պիտի տամ Կատարինէի նորակառոյց առաքինութեան եւ հնազանդութեանը»: Այս միջոցին Կատարինէն երկու տիկիններուն հետ ներս մտնելով, Փեթրուքիօ շարունակեց. «Տեսէ՛ք, ինչպէս կուգայ եւ կը բերէ ձեր յամառ կիները՝ իբր գերիներ իր կնոջական համոզկերութեան: Կատարինէ՛, քու տա գլխարկդ չի յարմարիր քեզի, հանէ՛ դա խաղալիկը եւ ոտքիդ տակ նետէ»:

Կատարինէ րոպէապէս հանեց գլխարկը եւ գետին նետեց:

«Տէր Աստուա՛ծ, ըսաւ Հորթենսիօի կինը, թո՛ղ հառաչելու պատճառ չունենամ, մինչեւ որ ասանկ անմիտ վիճակի մէջ չբերուիմ»:

Պիանկա եւս ըսաւ. «Բո՛ւհ, ի՛նչ յիմար պարտականութիւն կը կոչէք ասիկա»:

Պիանկայի էրիկը պատասխանեց անոր. «Կը մաղթեմ որ քու պարտականութիւնդ ալ նոյնչափ յիմարական ըլլար: Քու պարտականութեանդ իմաստութիւնը, գեղանի Պիանկա, ճաշէն ի վեր հարիւր գրաուն արժեց ինծի»:

— «Աւելի կը խարես դուն քեզ՝ իմ պարտականութեանս վրայ վստահելով», յարեց Գիանկա։

— «Կատարինէ՛, խոստացաւ Փեթրուքիօ, վրադ պարտք կը դնեմ հասկցնելու սա պնդողլուխ կիներուն թէ ինչպիսի՛ պարտականութիւն ունին իրենց տէրերուն եւ էրիկներուն հանդէպ»։

Եւ զարմանքի մատնելով բոլոր ներկաները, բարեփոխուած կռուասէր տիկինը նոյնչափ պերճախօսութեամբ ներբողեց հնազանդութեան կնավայել պարտականութիւնը, որչափ լռելեայն գործադրած էր Փեթրուքիօի կամքը պատրաստ հպատակութեամբ մը։

Կատարինէ այնուհետեւ անգամ մը եւս նշանաւոր եղաւ Փատուայի մէջ, ո՛չ թէ իբր կռուասէր Կատարինէ անունով, այլ Կատարինէ մը որ ամենահնազանդ եւ ամենապարտաճանաչ կինն էր։

# ԼԻՐ ԱՐՔԱՅ

*Լիր, Բրիտանիոյ թագաւորը, երեք աղջիկ ունէր, Կոներիլ՝ Ալպանիի դուքսին կինը, Ռէկան՝ Գոռնուօլի դուքսին կինը, եւ Գօրտելիա՝ մատաղատի աղջիկ մը որուն սէրը կը հետապնդէին թէ՛ Ֆրանսայի թագաւորը եւ թէ՛ Պուրկանտիի դուքսը։ Այդ նպատակով ալ Լիրի արքունիքը կը կենային անոնք այս միջոցիս։*

*Ծերունի թագաւորը տարիքէ եւ կառավարական յոգնութիւններէն մաշած, մանաւանդ ութսուն տարեկանէն աւելի ըլլալով, որոշեց չմասնակցիլ այլեւս պետական գործերուն եւ վարչութիւնը թողուլ աւելի երիտասարդ ուժերու, որպէսզի մահուան պատրաստուելու ժամանակ ունենար։ Այդ մահը պիտի պատահէր քիչ ատենէն։*

*Թագաւորը այս մտադրութեամբ իրեն կանչեց իր երեք աղջիկները եւ ուզեց հասկնալ անոնց շրթունքներէն իսկ թէ ո՛վ ամենէն շատ կը սիրէր զինքը, որպէսզի իր թագաւորութիւնը անոնց միջեւ կարենար բաժնել այն համեմատութեամբ որ անոնց սէրը իրեն արժանի թուէր։*

*Կոներիլ, մեծ աղջիկը, յայտարարեց թէ իր հայրը կը սիրէր աւելի քան որ բառերը կրնային արտայայտել. իր հայրը աւելի թանկագին էր իրեն համար քան սեփական աչքերուն լոյսն իսկ, աւելի թանկարժէք քան կեանքը եւ ազատութիւնը։ Մեծ աղջիկը խել մը սանկ արուեստական խօսքերով որ դիւրին է կեղծել երբ մարդ իրական սէր չի զգար եւ իրեն կը պակսին անկեղծ քանի մը ընտիր բառեր, իր նուիրումը յայտնեց թագաւոր հօրը։*

Լիր հրճուեցաւ իր աղջկան բերնէն իսկ լսելով սիրոյ ապահովութիւնը եւ այս խոստովանութիւնը համաձայն կարծելով անոր սրտին, հայրական խանդաղատանքի նոպայի մը մէջ, անոր եւ էրկանը ընծայեց իր ընդարձակ թագաւորութեան մէկ–երրորդը:

Ապա կանչելով երկրորդ աղջիկը, հարցուց անոր թէ ի՛նչ ունէր ըսելու:

Ռէկան, որ միեւնոյն սնամէջ մետաղէն շինուած էր ինչպէս իր քոյրը, նշանախեց մը անգամ ետ չէր մնար կեղծիքի արուեստին մէջ: Ուստի յայտարարեց թէ ինչ որ իր քոյրը խօսած էր՝ կարճ կուգար այն սէրէն զոր ինքը կը զգար նորին բարձրութեան համար, այնպէս որ ինք միւս բոլոր ուրախութիւնները մեռած կը նկատէր բաղդատմամբ այն հաճոյքին զոր կը ստանար իր սիրելի թագաւորին եւ հօրը սէրէն:

Լիր երջանկութիւն մաղթեց ինքնիրեն ասանկ սիրազեղ զաւակներ ունենալուն համար, ինչպէս կը կարծէր եւ Ռէկանի գեղեցիկ արտայայտութիւններէն ետք, անոր եւ էրկանը պակաս չէր կրնար ընծայել՝ քան թագաւորութեան մէկ երրորդը, տարածութեամբ հաւասար այն մասին զոր արդէն Գօներիլի տուած էր:

Յետոյ դառնալով կրտսեր աղջկան՝ Գօրտելիայի՝ զոր իր ուրախութիւնը կ՚անուանէր, Լիր հարցուց թէ ի՛նչ ունէր ըսելիք: Թագաւորը չէր կասկածեր որ այս աղջիկն ալ քոյրերուն պէս պիտի հաճեցընէր իր ականջները նոյն սիրազեղ խօսքերով եւ կամ անոր արտայայտութիւնները աւելի զօրեղ պիտի ըլլային քան միւսներունը, քանի որ միշտ աչքին լոյսը եղած էր ան եւ միւս երկուքէն աւելի նպաստաւորուած:

Սակայն Գորտելիա զզուած էր իր քոյրերու շողոքորթութենէն, գիտէր որ անոնց շրթունքները հեռու էին իրենց սրտերէն. եւ կը տեսնէր որ անոնց քծնող ճառերը միայն նպատակ ունին ծերունի թագաւորը զրկել իր կալուածներէն, որպէսզի իրենք եւ իրենց ամուսինները իշխէին անոր կենդանութեան ժամանակ իսկ: Այս նկատումներով Գորտելիա ուրիշ պատասխան չտուաւ, միայն սա ըսաւ թէ կը սիրէր նորին վեհափառութիւնը իր պարտականութեան համաձայն, ո՛չ աւելի եւ ոչ պակաս:

Թագաւորը ցնցուած իր սիրական զաւկին ցոյց տուած այս ապերախտութենէն, կամեցաւ որ ան իր արտասանած խօսքերը նկատի առնէ, բարեփոխէ կամ ուղղէ, որպէսզի չըլլայ թէ այդ խօսքերով իր բախտը խաթարուի:

Գորտելիա պատասխանելով հօրը, ըսաւ թէ իր հայրն էր, զինքը մեծցուցած էր եւ սիրած, ուստի այս պարտականութիւնները ամենայարմար եղանակով ետ կը վերադարձնէր, այսինքն կը հնազանդէր անոր, կը սիրէր զայն եւ ամենէն շատ կը պատուէր: Սակայն չէր կրնար իր քոյրերուն նման բերանը ձեւակերտել խոշոր ճառերու կամ խոստանալ որ աշխարհի մէջ ուրիշ բան պիտի չսիրէ: Ինչո՞ւ իր քոյրերը էրիկներ ունէին, եթէ իրենց ըսածին համաձայն աշխարհի վրայ հօրմէն զատ ուրիշ սէր չունէին: Ինք եթէ երբեք ամուսնանար, վստահ էր որ իր տէրը սիրոյն կէսը պիտի պահանջէր, պիտի պահանջէր նաեւ հոգատարութեան ու պարտականութեան կէսը: Ուրեմն եթէ քոյրերուն պէս միայն հայրը սիրէր, պէտք չէր որ ամուսնանար երբեք:

Գորտելիա անկեղծօրէն կը սիրէր իր ծերունի

հայրը, նոյնիսկ գրեթէ այն չափազանցութեամբ որ իր քոյրերը կը յաւակնէին ունենալ: Ուրիշ առիթով ան պարզօրէն կը յայտնէր այս զգացումը աւելի որդիական եւ սիրագին բառերով: Սակայն այս անգամ իր արտասանած բառերը քիչ մը անշնորհ կը հնչէին, մանաւանդ քոյրերու խորամանկ եւ շողոմ ճառերէն ետք որոնք չռայլ հատուցումներ խլեցին, ուստի խորհեցաւ թէ ամենավայելուչ բանը որ կըրնար ընել՝ սիրել եւ լռելն էր: Այս ընթացքը վարձկան նպատակներու կասկածէն հեռու պահեց իր սէրը եւ ցոյց տուաւ թէ շահու համար չէր որ կը սիրէր, իսկ իր յայտարարութիւնները, եթէ նուազ փառայոյզ, շատ աւելի ճշմարտութիւն եւ անկեղծութիւն ունէին քան քոյրերունը:

Խօսքի այս պարզութիւնը զոր հպարտութիւն կը կոչէր Լիր, այնպէ՛ս կատղեցուց ծերունի վեհապետը: Արդէն Լիր· իր ամենէն աղէկ ատենները միշտ գէշ տրամադրութիւն եւ կոշտութիւն կը ցուցնէր եւ ծերութեան ցնդածութիւնը այնչափ մթագնած էր իր դատողութիւնը որ չէր կրնար զանազանել ճշմարիտը շողոքորթութենէն, ոչ ալ նկարագեղ ճառը այն խօսքերէն որոնք սրտէ կը բխէին: Ուստի, Լիր, բարկութեան նոպայի մը մէջ, ետ առաւ իր թագաւորութեան երրորդ մասը զոր Գորտելիայի վերապահած էր: Եւ ետ առնելով անկէ, բաժնեց զայն հաւասարապէս անոր երկու քոյրերուն եւ էրիկներուն՝ Ալպանիի եւ Գոռնուօլի դուքսերուն միջեւ:

Ապա իրեն կանչեց զանոնք, եւ իր բոլոր պալատականներուն ներկայութեան ազնուականի թագ մը դրաւ անոնց միջեւ եւ երկուքին յանձնեց կառավարական ուժը, եկամուտը եւ գործադիր իշխանութիւնը:

Լիր՝ Թագաւոր անունը միայն իրեն վերապահեց ու արքայական միւս բոլոր իշխանութիւններէն հրաժարեցաւ, նաեւ սա վերապահութեամբ, որ իր աղջիկները ամէն ամիս կարգով զինքը պիտի հոգային իրենց պալատներուն մէջ իր հարիւր հետեւորդ ասպետներով:

Թագաւորութեան այս անհեթեթ բաժանումը որ դատողութենէ աւելի կիրքէ ղեկավարուած էր, զարմանքով ու ցաւով լեցուց բոլոր պալատականները: Սակայն անոնց ոչ մէկը քաջութիւնն ունեցաւ ինքզինքը յիմար Թագաւորին բարկութեան ենթարկելու, միայն Քէնթի Լորտը սկսաւ նպաստաւոր խօսք ըսել Գօրտելիայի համար, երբ բարկաճայթ Լիր հրամայեց անոր հրաժարիլ խօսելէ, բայց բարին Լորտ Քէնթ այս սպառնալիքէն չէր որ պիտի ընկըրկէր:

Քէնթ միշտ հաւատարիմ եղած էր Լիրի, զայն պատուած էր իբր Թագաւոր, սիրած էր իբր հայր, հետեւած էր անոր իբր տիրոջ մը, իր կեանքը երբեք ուրիշ արժէք չունէր իրեն՝ բայց եթէ գրաւ մը որ վտանգի դրուած է իր արքայ տիրոջ թշնամիներուն դէմ, ոչ ալ կը վախնար զայն կորսնցնելէ, երբ Լիրի ապահովութիւնն էր շարժառիթը, եւ հիմա որ Լիր ամենէ աւելի ինք իր թշնամին էր, Թագաւորին այս հաւատարիմ ծառան չէր մոռնար իր հին սկզբունքները, այլ մարդու պէս կ'ընդդիմանար Լիրի օգտին ի հաշիւ, եւ եթէ անքաղաքավար էր, պատճառը այն էր որ Լիր խենթ էր: Քէնթ անցեալ ժամանակներու ամենահաւատարիմ խորհրդատուն եղած էր Թագաւորին եւ հիմա կ'աղերսէր որ ան իր աչքերովը դիտէր դէպքերը, ինչպէս ուրիշ շատ ծանրակշիռ խնդիրներու մէջ ըրած էր, Քէնթ կ'ուզէր որ Թագաւորը իր խորհրդովը քալէր, ու լաւագոյն նկատա-

ռութիւնով ետ առնէր այս տգեղ եւ յախուռն որոշումը, որովհետեւ Քէնթ իր կեանքովը, դատաստանովը պատասխանատու կ'ըլլար որ Լիրի կրտսեր աղջիկը նուազ սէր չունէր, ո՛չ ալ դատարկ էին այն սրտերը որոնց ցած ձայնը սնամէջ ըլլալու նշան չէին տար։ Երբ ուժը կը զիջանէր շողոքորթութեան, պատիւը հասարակ բան մը կը դառնար։ Գալով Լիրի սպառնալիքներուն, ի՛նչ կրնային ըլլալ անոնք, երբ ինք իր կեանքը տրամադրած էր արդէն։ Անիկա չէր կրնար արգիլել որ պարտականութիւնը իր ձայնը չլսեցնէ։

Քէնթի ազնիւ Լօրտին պատուախնդիր համարձակութիւնը Թագաւորին բարկութիւնը աւելի եւս գրգռեց։ Լիր վայրագ հիւանդի մը նման որ կը սպաննէ իր բժիշկը եւ կը սիրէ իր մահաբեր հիւանդութիւնը, արտաքսեց իր ճշմարիտ ծառան եւ միայն հինգ օր պայմանաժամ տուաւ անոր մեկնումի պատրաստութիւններ տեսնելու, սակայն վեցերորդ օրը եթէ անոր ատելի անձը Բրիտանիոյ Թագաւորութեան մէջ գտնուէր, այդ րոպէն անոր մահը պիտի ըլլար։

Լօրտ Քէնթ հրաժեշտ առաւ Թագաւորէն եւ յայտնեց թէ քանի որ իրեն հանդէպ ասանկ վերաբերում ցոյց կը տրուէր, մնալը արդէն արտաքսում պիտի նշանակէր։ Քէնթ մեկնելէ առաջ Գօրտելիան աստուածներու պաշտպանութեան կը յանձնարարէր, որովհետեւ աղջիկը չիտակութեամբ խորհած եւ խոհեմութեամբ խօսած էր, այսու հանդերձ կը բաղձար որ Գօրտելիայի քոյրերուն խոշոր ճառերը իրական գործերով հաւաստուէին։ Հաւատարիմ Լօրտը մեկնեցաւ, իր հին ընթացքը նոր երկրի մը յարմարցնելու առաջադրութեամբ։

Ֆրանսայի Թագաւորը եւ Պուրկանտիի դուքսը

ներս կանչուեցան հիմա լսելու Լիրի որոշումը իր կրտսեր աղջկան նկատմամբ։ Անոնք պիտի յայտնէին միեւնոյն ատեն թէ հօրը դժգոհութեան առարկայ ըլլալէն յետոյ տակաւին կ՚ուզէի՞ն յարատեւել իրենց սիրաբանութիւնը աղջկան հետ, քանի որ Կորտելիա իր անձէն զատ ուրիշ բան չունէր յանձնարարելի։

Պուրկանտիի դուքսը հրաժարեցաւ սիրաբանութենէն, որովհետեւ այս պայմաններու մէջ չէր ուզեր զայն կնութեան առնել, բայց Ֆրանսայի թագաւորը հասկցաւ գործուած յանցանքին բնոյթը եւ հակառակ ուղղութիւն մը որդեգրեց։ Ան գիտէր որ Կորտելիա անկարող եղած էր իր քոյրերուն նման լեզուն շողոքորթութեան յարմարցնելու, ուստի դեռատի օրիորդին ձեռքէն բռնեց եւ ըսաւ թէ իր առաքինութիւնները թագաւորութենէ մը աւելի բարձր օժիտ էին. յետոյ հրաւիրեց Կորտելիան որ հրաժեշտ առնէ իր քոյրերէն եւ մանաւանդ հօրմէն որ անագնիւ գտնուեցաւ։ Կորտելիա պիտի մեկնէր իրեն հետ Ֆրանսայի թագուհին ըլլալու համար եւ տիրել աւելի գեղեցիկ կալուածներու՝ քան թէ քոյրերը։ Ֆրանսայի թագաւորը ապա դարձաւ Պուրկանտիի դուքսին եւ ջրվրայ դուքս կոչեց զայն արհամարհանքով, որովհետեւ այս դեռատի աղջկան հանդէպ անոր սէրը րոպէի մը մէջ հոսած գացած էր ջրի պէս։

Կորտելիա արտասուալի աչքերով հրաժեշտ առաւ իր քոյրերէն եւ խնդրեց որ լաւ սիրեն իրենց հայրը եւ իրենց յայտարարութիւնները արդարացնեն, սակայն քոյրերը կախ երեսով դիտել տուին պատուէրներ չտալ, որովհետեւ կը ճանչնային իրենց պարտքը. նաեւ խորհուրդ տուին Կորտելիայի

որպէսզի ջանայ գոհացնել իր ամուսինը որ կը տանէր զինքը իր բախտին ողորմութիւնը:

Այսպիսի հեզնութեամբ արտայայտուեցան քոյրերը, իսկ Գօրտելիա ճնշուած սրտով մեկնեցաւ, որովհետեւ գիտէր քոյրերուն խորամանկութիւնը եւ կը բաղձար որ հայրը աւելի լաւ ձեռքերու մէջ թողած ըլլար:

Գօրտելիա հազիւ թէ մեկնած էր երբ քոյրերուն սատանայական տրամադրութիւնները սկսան երեւիլ իրենց ճշմարիտ գոյներով: Մինչեւ իսկ առաջին ամիսը լրանալէ առաջ, երբ Լիր պայմանադրութեամբ իր մեծ աղջկան Կօներիլի մօտ կ'անցնէր իր ժամանակը, հասկցուեցաւ գործադրութեանց եւ խոստումներու տարբերութիւնը: Այս թշուառական աղջիկը ստանալով այն ամէնը որ կրնար տալ իր հայրը, մինչեւ իսկ գլխի թագը, սկսաւ նախանձիլ թագաւորականութեան այն փոքր մնացորդներէն զորս ծերունին իրեն վերապահած էր՝ երեւակայութիւնը տակաւին թագաւոր ըլլալու գաղափարով գոհացնելու համար: Կօներիլ չէր հանդուրժեր տեսնել իր հայրը եւ հարիւր սպասաւորները: Ամէն անգամ որ կը հանդիպէր հօրը, խոժոռ կերպարանք մը կ'առնէր եւ երբ ծերունին կ'ուզէր խօսիլ հետը, հիւանդութիւն կը կեղծէր կամ ուրիշ պատճառ մը կը բռնէր անոր աչքէն ազատելու, որովհետեւ պարզ էր որ անոր ծերութիւնը բեռ մը կը նկատէր, իսկ սպասաւորները՝ անպէտ ծախք մը: Այսպէս Կօներիլ ոչ միայն ինքը թուլցաւ թագաւորին հանդէպ իր պարտքի արտայայտութեան մէջ, այլ օրինակովը եւ մանաւանդ հրահանգներովը ծառաներն ալ անհոգ վարուեցողութեան մը առաջնորդեց: Անոնք կը մերժէին թագաւորին հրամաններուն հնա-

զանդիլ եւ դեռ աւելի արհամարհանքով չլսել կը ձեւացնէին:

Լիր չէր կրնար չնշմարել իր աղջկան ընթացքին այս փոփոխումը, սակայն այս բոլորին դէմ կրցածին չափ գոցեց իր աչքերը, նման այն մարդոց որոնք ընդհանրապէս չեն ուզեր իրենց սխալներու եւ յիմարութեան բերած անհաճոյ հետեւանքներուն հաւատալ:

Յոռի վարուեցողութիւնը չ'ուծացներ ճշմարիտ սէրը եւ հաւատարմութիւնը, ոչ ալ լաւ վերաբերմունքը կրնայ հաշտեցնել կեղծիքը եւ թափուր սիրտը: Ասիկա բացայայտ կերպով ցոյց կուտայ Քէնթի Լորտին բարի օրինակը. Քէնթ թէեւ արտաքսուած Լիրէն եւ կեանքը վտանգի տակ եթէ Բրիտանիա գտնուէր, նախընտրեց մնալ եւ կրել բոլոր հետեւանքները՝ քանի պատեհութիւն մը կը մնար իր թագաւոր տիրոջ օգտակար ըլլալու: Տեսէք թէ հէք հաւատարմութիւնը երբեմն ի'նչ չնչին վարպետութիւններու եւ ծպտումներու կը ստիպուի ենթարկուիլ, այսու հանդերձ այս ձեւը ստորին կամ անարժէք չի նկատուիր, քանի որ պարտականութեան մը հանդէպ միայն ծառայութիւն կ'ուզէ մատուցանել:

Մէկդի դրած իր մեծութիւնը եւ ուժը, սպասաւորի մը ծպտումին տակ, այս բարի ազնուականը ներկայացաւ թագաւորին եւ իր ծառայութիւնները առաջարկեց:

Այս ձեւափոխութիւնով թագաւորը չճանչցաւ Քէնթը, միայն գոհ կը մնար ազնուականին պարզորոշ կամ գրեթէ բութ պատասխաններէն որոնք հակադրութիւն մը կը կազմէին այն ողորկ ու անհուն շողոքորթութեան որմէ պատճառ ունէր գանգատելու և որուն արդիւնքները անհամապատասխան էին իր աղջիկներու խօսքերուն:Ուստի չուտափոյթ կար-

կաղրութիւն եղաւ ու Լիր իր ծառայութեան մէջ առաւ Քէնթը՝ Կայիուս անունով, որովհետեւ այդ անունով կը ճանչցնէր ան ինքզինքը: Լիր բնաւ չկասկածեցաւ որ Կայիուս իր երբեմնի մեծ սիրականը, Քէնթի բարձր եւ հզօր ազնուականն էր: Եւ շատ չանցաւ, Կայիուս գտաւ միջոցը իր հաւատարմութիւնն ու սէրը ցոյց տալու իր արքայական տիրոջ, որովհետեւ Կօներիլի մատակարարը նոյն օրը Լիրի հանդէպ անպատկառ եղանակով վարուելով, ծաղրական նայուածք եւ լեզու գործածեց, հետեւաբար այլեւս կասկած չէր մնար որ իր տիրուհիէն ծածուկ կը քաջալերուէր, իսկ Կայիուս չկրնալով հանդուրժել սանկ բաց դիմադարձութեան մը, առանց այլ եւ այլի մատակարարին կրունկներուն վրայ ցատկեց եւ անպատկառ ստրուկը շան բունին մէջ թըխմեց: Բարեկամական այս ծառայութեան համար Լիր աւելի եւս կապուեցաւ անոր:

Նոր պայմաններուն մէջ մինակ Քէնթը չէր որ բարեկամ էր Լիրի: Այդ ժամանակները թագաւորները եւ մեծ անձնաւորութիւնները սովորութիւն ունէին պահել հտպիտ մը որ լուրջ զբաղումներէ ետք զիրենք կը զբօսցնէր, եւ Լիր քանի իր պալատին տէրն էր, այս տեսակ խենթուկ մը կամ զուարճաբան մը կը պահէր, իսկ խիղճ հտպիտը իր անձին եւ աստիճանին համեմատ ցոյց կուտար իր սէրը հանդէպ թագաւորին որուն իշխանութենէ հրաժարելէն ետքն ալ տակաւին փարած կը մնար անոր եւ սրամիտ խօսքերով կը զուարճացնէր զայն: Սակայն երբեմն ետ չէր կենար ծաղրելէ իր տիրոջ անխոհեմութիւնը որով թագը գլխէն հանած եւ ամէն ինչ իր աղջիկներուն շնորհած էր: Հտպիտը ոտանաւորով կ՚արտայայտուէր եւ կ՚ըսէր թէ թագաւորին աղջիկները յանկարծական ուրախութենէն լացին, իսկ

ինքը՝ Հոպիտը տխրութենէն երգեց որ խորամանկ երեւցող Թագաւոր մը գնաց յիմարներուն խառնուելու:

Այսպիսի վայրի ասութիւններով եւ երգի կըտորներով որոնցմէ շատ գիտէր, հաճելի բայց պատուաւոր խենթուկը իր սիրտը դուրս կը թափէր մինչեւ իսկ Կոներիլի ներկայութեանը եւ դառն ամբաստանութիւններ ու զուարթաբանութիւններ կ՚ընէր որոնք սրամիտ էին: Հոպիտը կը բաղդատէր Թագաւորը մացառի ճնճղուկին հետ որ կկուին ձագերը կը սնուցանէ մինչեւ որ բաւական մեծնան անոնք եւ յետոյ իր նեղութեանց փոխարէն գլուխը փրցնեն: Կ՚ըսէր Թէ էշ մը կրնայ գիտնալ որ կառքը կը քաշէ ձին, այսինքն ըսել կ՚ուզէր որ Լիրի աղջիկները փոխանակ իրենց հօրը ետեւէ քալելու, առջեւէն կը քալէին: Կը յայտարարէր Թէ Լիր այլ եւս Լիր չէր, այլ Լիրի ստուերը: Այս ազատախօսութեան համար մէկ երկու անգամ քանակոծելու ըսպառնալիք եղաւ Հոպիտին:

Գաղութիւնը եւ յարգանքէ զրկուիլը բոլորը չէր որ պիտի կրէր այս յիմար որդեսէր հայրը իր անարժան աղջիկէն: Կոներիլ պարզապէս կը յայտնէր Թէ պալատին մէջ մնալը անյարմար էր քանի որ հարիւր ասպետ պահելուն կը պնդէր. ապրելու այս ձեւը անօգուտ եւ Թանկ էր ու կը ծառայէր միայն արքունիքը աղմուկով եւ կերուխումով լեցնելու, ուստի կը խնդրէր որ Լիր անոնց Թիւը նուազեցնէր, միայն ծեր մարդիկը պահելով շուրջը, իրեն պէս ու տարիքին համապատասխան:

Լիր նախ չկրցաւ հաւատալ իր աչքերուն կամ ականջներուն, ոչ ալ ուզեց հաւատալ Թէ այսպէս անազնիւ խօսողը իր աղջիկն էր: Ան չէր կրնար երեւակայել Թէ ան որ իրմէ Թագ մը ընդունած էր, հի-

մա կ'ուզէր կրճատել իր շքախումբը եւ կը զլանար ծեր տարիքի պատշաճ յարգանքը: Սակայն աղջիկը պնդելով իր պարտազանց պահանջին վրայ, ծերունիին բարկութիւնը չափազանց գրգռուեցաւ: Լիր ատելի գիշատիչ թռչուն կոչեց զայն եւ ըսաւ թէ սուտ կը խօսի, որովհետեւ հարիւր ասպետները վայելուչ ընթացքի ու ժուժկալ սովորութեան տէր մարդիկ էին, ամէնքը մարզուած պարտականութեան մանրամասներուն մէջ եւ իրարանցումի ու կերուխումի անընդունակ:

Լիր հրամայեց ձիերը պատրաստել, որովհետեւ իր հարիւր ասպետներով միւս աղջիկան՝ Ռէկանի մօտ պիտի երթար: Ծերունին խօսեցաւ ապերախտութեան մասին ու յայտնեց թէ ապերախտութիւնը քարասիրտ սատանայ մըն էր ու զաւկի մը մէջ աւելի տգեղ կ'երեւէր քան ծովու հրէշը: Սոսկալի էր լսել այն անէծքները զոր ըրաւ ան իր երէց աղջկանը. կ'աղօթէր որ երբեք չկրնար զաւակ մը ունենալ, կամ եթէ ունենար, այդ զաւակը ապրէր փոխադարձելու համար այն արհամարհանքը եւ հեգնանքը զոր ցոյց տուած էր իրեն հանդէպ, որպէսզի զգար թէ երախտամոռ զաւակ մը որքան աւելի հատու է քան օձը, որուն ատամը կը խայթէ: Կօներիլի ամուսինը՝ Ալպանիի դուքսը սկսաւ արդարացնել ինքզինքը թէ բաժին չունէր այն անազնուութենէն որ Լիր կրնար ենթադրել, սակայն թագաւորը չէր ուզեր մտիկ ընել, եւ կատղած՝ հրամայեց որ ձիերը թամբուին ու ճամբայ ելաւ դէպի Ռէկանի բնակարանը:

Լիր սկսաւ խորհիլ թէ որչա՛փ փոքր էր Գօրտելիայի թերութիւնը բաղդատմամբ անոր քրոջը վերաբերումին, ու խորհելով արտասուեց. ամչցաւ որ Կօներիլի պէս արարած մը այնչափ զօրութիւնը

ունէր իր տղամարդութեան վրայ որ արտասուել կուտար։

Ռէկան եւ իր ամուսինը իրենց արքունիքը մեծ շքով ու վայելչութեամբ կը պահէին։ Լիր իր Կայիուս ծառան նամակներով աղջկանը ղրկեց, որպէսզի ընդունելութեան կարենային պատրաստուիլ, մինչ ինք եւ շքախումբը պիտի հետեւէին։ Սակայն կը թուի թէ Կօներիլ խօսք մէկ ըրած էր Ռէկանի հետ, որովհետեւ նոյնպէս նամակներ կը ղրկէր անոր, ամբաստանելով որ հայրը դիմադարձութիւն ըրած եւ յոռի ընթացքի մը մէջ գտնուած էր, ի վերջոյ խորհուրդ կուտար անոր չընդունիլ հօրը մեծ շքախումբը։ Այս նամակատարը Կայիուսի հետ միեւնոյն ատեն հասաւ եւ երկուքը իրարու հանդիպեցան։ Եւ ո՞վ կրնար ըլլալ ան եթէ ոչ Կայիուսի հին թշնամին՝ մատակարարը զոր նախապէս գետին տապալած էր ան Լիրի հանդէպ անպատկառ ընթացքին պատճառով։ Կայիուս մարդուն երեւոյթին չհաւնեցաւ եւ կասկածելով անոր ճամբորդութեան նպատակին մասին, սկսաւ անարգել զայն ու կռուի հրաւիրեց, բայց մարդը մերժեց։ Ասոր վրայ Կայիուս պատուաբեր բարկութեան նոպայով մը լաւ մը տփեց զայն, ինչպէս վայել է չարագործի մը եւ ստոր լրատարի մը։ Այս բանը Ռէկանի եւ էրկանը ականջը հասնելով, հրամայեցին Կայիուսը ոտնակապերու մէջ դնել, թէեւ ան թագաւոր հօրը պատգամաբերը եղած ըլլար ու այդ հանգամանքով ամենաբարձր յարգանքին արժանի։ Այսպէս երբ թագաւորը դղեակը մտաւ, առաջին անգամ տեսաւ իր հաւատարիմ ծառայ Կայիուսի անչնորհք դիրքը։

Ասիկա գէշ նշան մըն էր թէ լաւ ընդունելութիւն պիտի չըլլար Լիրի, բայց աւելի յոռին հետեւեցաւ, որովհետեւ երբ հարցուց իր աղջկան ու փեսային

նկատմամբ, պատասխանեցին թէ բոլոր գիշերը ճամբորդութենէ յոգնած ըլլալով, չէին կրնար տեսնել զինքը։ Երբ Լիր դրական ու բարկացոտ եղանակով մը պնդեց տեսնել զանոնք, եկան ողջունելու եւ գիտէ՞ք որու հետ — աւելի Կօներիլի՝ որ եկած էր պատմել ամէն ինչ եւ դրդել քոյրը իր Թագաւոր հօրը դէմ։

Այս տեսքը շատ յուզեց ծերունին որ աւելի եւս բորբոքեցաւ երբ տեսաւ որ Ռէկան իր քրոջը ձեռքը կը բռնէր։ Լիր հարցուց Կօներիլի թէ չէ՞ր ամչնար սպիտակ մօրուքին նայելու, բայց Ռէկան խորհուրդ տուաւ նորէն Կօներիլի հետ տուն դառնալ եւ ապրիլ խաղաղութեամբ իր հետեւորդներուն կէսը արձակելով ու աղջիկէն ներողութիւն խնդրելով, որովհետեւ ծեր էր եւ խոհեմութեան պէտք ունէր, յետոյ պէտք էր կառավարուիլ եւ առաջնորդուիլ այնպիսի մարդերէ որոնք աւելի խոհեմութեան տէր էին քան ինքը։ Լիր ցոյց տուաւ այն այլանդակ վիճակը որ պիտի առաջանար եթէ ծունկի գալով իր իսկ աղջիկէն սնունդ եւ հագուստ խնդրէր, ուստի ասանկ անբնական ստորադասման դէմ պատճառաբանեց ու յայտարարեց թէ որոշած է երբեք չվերադառնալ Կօներիլի, այլ մնալ Ռէկանի հետ հարիւր ասպետներով։ Հասկցուց թէ Ռէկան թագաւորութեան կէսը ընդունած էր եւ իր աչքերը Կօներիլի պէս կատաղի չէին, այլ մեղմ ու բարի։ Ապա Լիր յայտարարեց որ կը նախընտրէր Ֆրանսա երթալ եւ խեղճուկ թոշակ մը խնդրել թագաւորէն որ իր կրտսեր աղջկան հետ ամուսնացած էր առանց ժառանգութեան բաժնի, քան Կօներիլի վերադառնալ իր չքախումբին կէսը զեղչելով։

Սակայն Լիր կը սխալէր Ռէկանէն աւելի ազնիւ վարմունք ակնկալելով, որովհետեւ Ռէկան յայ-

տարարեց թէ յիսուն ապետը շատ կը գտնէր եւ քսանը հինգը բաւական էին, այսպէս իբրեւ թէ անորդիական ընթացքի մը մէջ գլել անցնիլ ուզէր։

Այն ատեն Լիր գրեթէ սրտաբեկ, դարձաւ Կոներիլի ու ըսաւ թէ կը կամենար հետը ետ դառնալ, որովհետեւ անոր յիսունը երկու անգամ քսանը հինգ էր, ուստի սէրը Ռէկանի սէրէն երկու անգամ աւելի։ Բայց Կոներիլ ինքզինքը արդարացուց ու ըսաւ. «Ի՛նչ պէտք քսանը հինգ ապետ ունենալու, տասը, հինգն իսկ աւելորդ է, երբ իմ ծառաներս, քրոջս ծառաները կրնան սպասարկել»։ Այսպէս երկու չարասիրտ աղջիկները քիչ քիչ կ'ուզէին նըւազեցնել անոր ամբողջ հետեւորդները։ Ամէն յարդանք որ կը տրուէր իրեն նպատակ ունէր յիշեցնել որ ինքը մի անգամ թագաւոր եղած էր, սակայն այդ յարգանքը շատ քիչ էր մէկու մը որ թագաւորութեան մը հրամայած էր։ Երկու քոյրերը կարծես կը ջանային զիրար գերազանցել իրենց հօրը հանդէպ ցոյց տուած անգթութեան մէջ, հօր մը՝ որ այնչափ բարի եղած էր անոնց։ Արդարեւ չքեղ խումբ մը էական չէ երջանկութեան համար, սակայն խիստ փոփոխում մըն է երբ մէկը թագաւորի մը վիճակէն մուրացկանի վիճակին կը հասնի, միլիոններու հրամայելէ ետք՝ սպասաւոր մը չ'ունենար։ Աւելի աղջիկներուն ապերախտութիւնը պատառ պատառ կ'ընէր խեղճ թագաւորին սիրտը, քան ենթարկուած չքաւորութիւնը։ Իրեն հանդէպ ցոյց տրուած յոռի վարմունքէն եւ թագաւորութիւնը յիմարաբար ուրիշին տուած ըլլալու նեղութենէն Լիրի միտքը սկսաւ ցնցուիլ, եւ մինչ մէկ կողմէ կ'ըսէր թէ ի՛նչ ընելը չէր գիտեր, միւս կողմէ կ'ուխտէր վրէժխընդիր ըլլալ այս անբնական ջատուկներէն եւ անոնցմէ նմոյշներ շինել որ երկրի սարսափը ըլլային։

Այսպէս մինչդեռ զուր տեղը կը սպառնար բաներով որոնք իր բազուկի կարողութենէն վեր էին, գիշերը վրայ հասաւ: Անձրեւախառն փոթորիկ մը որոտման ու փայլատակումի հետ երկիրը կը դղրդէր, իսկ աղջիկները տակաւին կը պնդէին իրենց որոշման վրայ եւ չէին թայլատրեր հետեւորդները: Ճարահատ, Լիր բերել տուաւ ձիերը, նախընտրեց դիմաւորել դուրսը փոթորիկին գերագոյն կատաղութիւնը քան միեւնոյն տանիքին տակ կենալ այս ապերախտ աղջիկներուն հետ: Կօներիլ ու Ռէկան կ'ըսէին թէ յամառ մարդեր իրենք իրենց համար կը ստեղծէին վիրաւորանքներ որոնք արդար պատիժ էին ու այս պայմաններուն տակ թողուցին որ մեկնի Լիր ու դուռը գոցեցին ետեւէն:

Հովերը ուժգին կը փչէին, անձրեւն ու փոթորիկը կը սաստկանար. ծերունին առաջ խոյացաւ կռուելու տարրերուն դէմ որոնք նուազ խայթող էին քան իր աղջիկներու անազնուութիւնը: Այս կողմերը մղոններ տարածութեան վրայ թուփ մը հազիւ կը գտնուէր. բացաստանի մը վրայ, մութ գիշերուան փոթորիկի կատաղութեան ենթակայ, Լիր Արքան կը թափառէր ու կ'արհամարհէր քամիներն ու որոտումը: Լիր կը հրաւիրէր հովերը որպէսզի երկիրը դէպի ծովը քշէին, կամ ուռեցնէին ծովուն ալիքները մինչեւ երկիրը խեղդուէր որ մարդուն նման ապերախտ կենդանիի մը նշանը ա'լ չմնար: Ծերունի թագաւորը խեղճ հապիտէն զատ ուրիշ ընկեր չունէր հիմա հետը, իսկ այս հապիտը զուարթ խորհուրդներով տակաւին կը ջանար դժբախտութիւնը կատակի դարձնել. Կ'ըսէր թէ մարդու մը համար լողալու դէշ գիշեր մըն է եւ թագաւորը աղէկ գործ մը կ'ընէր եթէ վերադառնար եւ իր աղջիկներուն օրհնութիւնը հայցէր: Հապիտը երգում

կ՚ընէր թէ գիշերը քաջ էր եւ կրնար տիկնոջ մը հըպարտութիւնը գոհացնել:

Քէնթի հաւատարիմ կոմսը բացատանին մէջ գտաւ Լիրը եւ անուհետեւ չբաժնուեցաւ անկէ, թէեւ Թագաւորը չէր գիտեր թէ կոմսն էր ան:

«Աւա՜ղ, տէր, ըսաւ Քէնթի Կոմսը, հոս էք: Գիշերասէր արարածները ասանկ գիշեր չեն սիրեր: Այս ահարկու փոթորիկը գազաններն անգամ իրենց որջերը քշած է: Մարդուն բնութիւնը չի կրնար դիմանալ վշտին կամ երկիւղին»:

Լիր յանդիմանեց զայն ու ըսաւ թէ փոքր չարիքները չէին զգացուեր հոն ուր աւելի մեծ հիւանդութիւն մը հաստատուած էր: Երբ միտքը հանդարտ է, մարմինը ատեն ունի փափկանալու, սակայն իր մտքի փոթորիկը խլած է իր զգայարանքներէն միւս բոլոր զգացումները եւ միայն սիրտն է որ կը բաբախէ: Լիր որդիական ապերախտութեան մասին խօսեցաւ եւ ապերախտութիւնը նմանցուց բերնի մը որ կը փրցնէ այն ձեռքը որ իրեն կերակուր տուած էր, որովհետեւ ծնողքները զաւակներուն համար ձեռքեր, սնունդ եւ ամէն բան էին:

Սակայն Կայիուս կ՚աղաչէր ու կը պնդէր որ Թագաւորը բաց օդին մէջ չկենայ: Վերջապէս համոզեց բացատանին աղքատիկ փոքր խրճիթը մտնել, սակայն նախ հոպլիտը ներս մտաւ ու յանկարծ ետ քաշուեցաւ սարսափահար, բացագանչելով որ ոգի մը տեսած էր: Քննութենէ մը վերջ հաստատուեցաւ որ այս ոգին ուրիշ բան չէր բայց եթէ Պեդլամցի խեղճ մուրացիկ մը որ այս ամայի խրճիթը սպրդած էր պատսպարուելու համար: Մուրացիկը հիմա սատանաներու նկատմամբ անանկ բաներ կ՚ըսէր որ հոպլիտը կը վախնար: Անիկա այն խելագարներէն էր որոնք կամ խենթ են եւ կամ խենթութիւն

կը կեղծեն, որպէսզի աւելի ողորմութիւն փրցնեն կարեկից գիւղացիներէն: Անոնք կը շրջին գաւառները եւ իրենք զիրենք խեղճ Թօմ կը կոչեն, կը պոռան ու կ'ըսեն. «ո՞վ խեղճ Թօմին բան մը կուտայ». ու իրենց թեւերուն մէջ գնդասեղ, գամ ու փուշ կը խօթեն ու կ'արիւնոտեն եւ այս սոսկալի գործողութիւններով, աղօթքով, յիմար երգումներով կը յուզեն, կ'ահաբեկեն գաւառացի ժողովուրդը եւ ողորմութիւն կը փրցնեն: Մուրացիկը այս տեսակ խեղճուկ մըն էր ու Լիր այդ թշուառ, կիսամերկ վիճակին մէջ տեսնելով զայն, կրցաւ համոզուիլ որ անիկա հայր մըն էր որ իր բոլոր ինչքը աղջիկներուն բաժնելով այդ վիճակին մատնած էր ինքզինքը, որովհետեւ թագաւորը կը խորհէր թէ աշխարհի վըրայ միայն անագնիւ աղջիկները կրնային մարդ մը մատնել այդպիսի թշուառութեան:

Բարեսիրտ Կայիուս թագաւորին արտասանած այս եւ ուրիշ շատ մը խօսքերէն որոշակի նշմարեց որ անոր խելքը վրան չէր բոլորովին եւ աղջիկներուն յոռի վարուեցողութիւնը իրապէս յիմարացուցեր էր զայն: Ճիշդ այս պարագային էր որ Քէնթի արժանաւոր կոմսը իր հաւատարմութեան աւելի էական ծառայութիւնները պիտի կրնար մատուցանել Լիրի: Արդարեւ Քէնթ թագաւորին հաւատարիմ մնացած քանի մը ծառաներու օգնութեամբ Լիրը Տուվրի դղեակը փոխադրեց ուր անձնական բարեկամներ ունէր եւ իր ազդեցութիւնը իբր Քէնթի կոմս մասնաւորապէս ուժեղ էր: Իսկ ինքը՝ կոմսը դէպի Ֆրանսա նաւարկելով, փութաց Գօրտելիայի արքունիքը եւ այնպիսի յուզիչ խօսքերով ներկայացուց Գօրտելիայի թագաւոր հօրը խղճալի վիճակը եւ կենդանի գոյներով նկարագրեց քոյրերու տմարդութիւնը՝ որ բարեսիրտ ու սիրազեղ Գօրտելիա

արցունքները աչքին՝ աղաչեց իր Թագաւոր ամուսինէն որ թոյլ տար նաւ նստիլ դէպի Անգլիա բաւականաչափ զօրքով եւ նուաճելով անգութ աղջիկներն ու իրենց ամուսինները, վերահաստատէր իր Թագաւոր հայրը գահուն վրայ:

Այս աղաչանքը շնորհուեցաւ եւ Գօրտելիա արքայական բանակով մը ցամաք ելաւ Տուվր:

Իսկ Լիր Արքայ դիպուածով, կրցած էր խոյս տալ Քէնթի կողմէ կարգուած պահակներու հսկողութենէն որոնք պաշտօն ունէին հոգ տանիլ անոր յիմարութեանը:

Արդ, Գօրտելիայի հետեւորդներէն քանի մը հոգի զտան զայն երբ Տուվրի շրջակայ արտերուն մէջ կը թափառէր, խղճալի վիճակով եւ բոլորովին խելագար: Ան բարձրաձայն կ'երգէր, գլուխը թագ մը դրած էր շինուած խոտէ, եղինձէ եւ ուրիշ սէզերէ զորս հաւաքած էր ցորենի արտերէն:

Գօրտելիա թէեւ անհամբեր կը փափաքէր տեսնել իր հայրը, բայց բժիշկներու խորհուրդովը պարտաւորուեցաւ յետաձգել հանդիպումը մինչեւ որ քունով եւ դեղերու ազդեցութեամբ աւելի վայելուչ երեւոյթի մը տիրանար: Այսպէս ճարտար բժիշկներու օժանդակութիւնովը՝ որոնց խոստացաւ Գօրտելիա իր բոլոր ոսկին ու գոհարեղէնները՝ Լիր շուտով ի վիճակի եղաւ տեսնել իր աղջիկը:

Հօր եւ աղջկան հանդիպումը յուզիչ տեսարան մը կը պարզէր: Լիր երկու պայքար ունեցաւ, մէկը ուրախութեան զգացումն էր որ նորէն կը տեսնէր իր սիրական զաւակը, միւսը՝ ամօթի զգացումը, քանզի կ'ընդունէր որդիական ազնուութիւն անկէ զոր արտաքսած էր անհաճոյ եղած այնքան փոքր սխալի մը համար: Այս երկու զգացումները կը պայքարէին իր հիւանդութեան մնացորդներուն

հեռ: Իր կիսախելագար ուղեղին մէջ այնպէս մը կը դառնար ամէն բան որ հայրը կը յիշէր ո՛ւր բնակիլը, չէր յիշեր թէ ո՛վ էր զինքը այնչափ ազնուօրէն համբուրողը եւ խօսողը: Լիր կը խնդրէր ներկաներէն չինդալ վրան եթէ կը սխալէր որ այս տիկինը իր Գորտելիա աղջիկն էր: Արքան ապա ծունկի կուգար իր զաւակէն ներողութիւնը խնդրելու, իսկ աղջիկը, բարեսիրտ կին, այդ միջոցին օրհնութիւն կը խընդրէր անկէ ու կ'ըսէր թէ վայել բան չէր ծունկ չօքել, որովհետեւ ինք իր պարտքը կը կատարէր իբր զաւակ, ճշմարիտ ու խոկական Գորտելիա:

Գորտելիա կը համբուրէր իր հայրը ու կ'ըսէր թէ կը համբուրէր, որպէսզի սրբէր քոյրերուն անազնուութիւնը: Անոնք ամչնալու էին որ բարեսիրտ ծերունի հայրը իր սպիտակ մօրուքով վռնտեցին ցուրտ օդին մէջ եւ անանկ առեն մը՝ երբ ինք թշնամիի մը շունն անգամ պիտի թոյլատրէր որ այդ գիշեր քովը մնար կրակին մօտ:

Գորտելիա պատմեց հօրը թէ ի՛նչ պայմաններով եկած էր Ֆրանսայէն ու կ'առաջարկէր տրամադրել իր օժանդակութիւնը: Լիր պատասխանեց որ Գորտելիա մոռնայ ու ներէ, որովհետեւ ինք զառամած ու յիմար, իր ըրածը չէր գիտցած: Գորտելիա ապահովաբար մեծ պատճառ ունէր չսիրելու բայց քոյրերը ոչ մէկ պատճառ ունէին:

Այս նկատողութիւններուն Գորտելիա պատասխան տուաւ ու յայտնեց որ պատճառ չունէր չսիրելու եւ ոչ աւելի քան իր քոյրերը:

Այժմ թողունք այս ծերունի թագաւորը իր պարտաճանաչ ու սիրալիր զաւկին՝ որուն պաշտպանութեան տակ քունի եւ դեղերու օգնութեամբ կարելի եղաւ վերջապէս դարմանել աններդաշն ու ցնցուած զգայարանքները, ու վերադառնանք մէկ

երկու խօսք ըսելու յիշեալ անգութ աղջիկներու նըկատմամբ :

Ապերախտութեան այս հրէշները որոնք այնչափ կեղծիք ցոյց տուին իրենց ծերունի հօրը, չէին կըրնար աւելի հաւատարիմ մնալ իրենց էրիկներուն հանդէպ: Անոնք շուտով ձանձրացան անգամ առերեւոյթ պարտականութենէ ու սէրէ, եւ բացորոշապէս ցոյց տուին թէ իրենց սէրը ուրիշի մը վրայ հաստատած էին, որովհետեւ պատահեցաւ որ անոնց մեղապարտ սիրոյ առարկան միեւնոյն անձը ըլլար: Էտմօնտ կը կոչուէր այս արարածը, Գլուստէրի հանգուցեալ կոմսին բնական զաւակը, որ իր դաւաճանութիւններով յաջողած էր ժառանգազրկել կոմսութենէ իր էտկար եղբայրը, օրինական ժառանգը, եւ չարանենգ միջոցներով ինք կոմս եղած էր: Անարգ մարդ մըն էր ան ու սիրոյ յարմար առարկայ մը Կոներիլի եւ Ռէկանի պէս չարասէր արարածներու :

Այս միջոցին մեռաւ Ռէկանի էրիկը՝ Գօռնուօլի դուքսը, եւ Ռէկան անմիջապէս յայտարարեց թէ մտադիր է պսակուիլ Գլուստըրի կոմսին հետ, ինչ որ քրոջը նախանձը գրգռեց: Անարգ կոմսը երկուքին ալ տարբեր առիթներով սիրաբանած էր: Կոներիլ սակայն միջոցը գտաւ իր քրոջմէն ազատելու եւ թունաւորեց զայն, բայց լրտեսուելով բանտարկուեցաւ իր էրկանը Ալպանիի դուքսին կողմէ:

Կոներիլ այլեւս տեսնելով որ իր մեղապարտ սէրը մինչեւ իր էրկանը ականջը հասած էր, յուսահատութեան նոպայի մը մէջ վերջ տուաւ կեանքին: Այսպէս, երկնքի արդարութիւնը վերջապէս պատժեց երկու չարասէր քոյրերը:

Մինչ մարդոց աչքերը այս դէպքին վրայ յառած էին ու կը զարմանային երկու արժանի մահերու յայտնագործած արդարութեան վրայ, յանկարծ նոյն աչքերը ուղղուեցան ուրիշ տեղ մը։ Ամէնուն ուշադրութիւնը դրաւեց տիկին Գորտելիայի տխուր ճակատագիրը. խորհրդաւոր զօրութիւն մը նուազ բարերախտ վախճանի մը հասցուցեր էր այս մանկամարդ ու առաքինի աղջիկը. յայտնի է սակայն որ անմեղութիւնն ու մաքրակեացութիւնը միշտ չեն յաջողիր այս աշխարհիս մէջ։

Կոներիլի եւ Ռէկանի ղրկած զօրքերը Գլոստըրի չար կոմսին հրամանատարութեամբ յաղթական ելան եւ Գորտելիա գերի բռնուելով բանտին մէջ վերջացուց իր կեանքը։ Մեռաւ այս անմեղ տիկինը մատաղ տարիքի մէջ, որդիական սիրոյ փայլուն օրինակ մը տալէ ետք աշխարհին։

Լիր այնուհետեւ երկար չապրեցաւ։ Մեռնելէ առաջ Քէնթի կոմսը ուզեց յայտնել իր ինքնութիւնը եւ հասկցնել որ Կայիուս սպասաւորը ուրիշ մէկը չէր բայց եթէ նոյն ինքը Քէնթ։ Սակայն Լիրի խելագար միտքը այլեւս չէր կրնար ըմբռնել այդպիսի բանի մը կարելիութիւնը, ուստի Քէնթ հրաժարեցաւ երկար բարակ բացատրութիւններ տալէ, իսկ Լիր շուտով կնքեց իր մահկանացուն։

Քէնթի կոմսը իր կարգին տարիներու եւ վշտի բեռան տակ չդիմանալով հետեւեցաւ Լիրի դէպի գերեզման։

Սակայն երկնքի դատաստանը պատժեց Գլոստըրի չար կոմսը որուն դաւաճանութիւնները մէջ տեղ ելան, եւ եղբօրը՝ օրինաւոր կոմսին հետ կռուի բռնուելով խողխողուեցաւ։ Այնուհետեւ Ալպանիի դուքսը որ անմեղ էր Գորտելիայի մահուան մէջ եւ

*երբեք քաշջալերած չէր իր տիկինը Լիրի դէմ, Բրիտանիոյ դահը բարձրացաւ։ Այս եղելութիւնները պատմել աւելորդ է, որովհետեւ մեր պատմութիւնը կը վերաբերի Լիրի եւ աղջիկներուն որոնք արդէն մեռած էին։*

# ԱՄԱՌ ԳԻՇԵՐՈՒԱՆ ՄԸ ԵՐԱԶԸ

*Աթէնք քաղաքը օրէնք մը ունէր որուն համաձայն իր քաղաքացիները իրաւունք ունէին բռնադատելով ամուսնացնել իրենց աղջիկները ոեւէ անձի հետ որ իրենց հաճոյ կը թուէր: Որովհետեւ եթէ աղջիկ մը մերժէր ամուսնանալ այն մարդուն հետ զոր հայրը իրր էրիկ ընտրած էր, օրէնքը իրաւասութիւն կուտար հօրը մահուան դատապարտել տալու իր աղջիկը, բայց յայտնի է որ հայրերը յաճախ չեն բաղձար իրենց աղջիկներուն մահը, անգամ եթէ անոնք քիչ մը յամառ ըլլան, ուստի· այս օրէնքը երբեք կամ հազուադէպօրէն գործադրութեան դրուած էր: Միայն Աթենացի մատաղատի օրիորդները երբեմն սպառնալիքի տակ կը դրուէին ծնողներու կողմէ յանուն այդ օրէնքի սարսափներուն:*

*Սակայն այս օրէնքին հետ կապ ունեցող դէպք մը տեղի ունեցաւ:*

*Եկէոս անուն ծեր մարդ մը արդարեւ ներկայացաւ այն ատենի Աթէնքի տիրող դուքսին՝ Թէսէոսի՝ գանգատելու որ իր Հերմիա աղջիկը կը մերժէր հընազանդիլ իրեն եւ չէր ամուսնանար Աթենացի ազնուական երիտասարդի մը՝ Տիմիդրիոսի հետ, որովհետեւ Լիզանտէր անուն ուրիշ Աթենացի երիտասարդ մը կը սիրէր: Եկէոս արդարութիւն պահանջեց Թէսէոսէն եւ փափաք յայտնեց որ սոյն անգութ օրէնքը ի զօրու դրուի իր աղջկան պարագային:*

*Հերմիա ինքզինքը պաշտպանեց արդարացնելով*

իր անհնազանդութիւնը․ ըսաւ թէ Տիմիդրիոս նախապէս սիրահարած էր իր սիրելի բարեկամուհի Հելէնայի հետ եւ Հելէնա խենթենալու աստիճան կը սիրէր Տիմիդրիոսը, բայց այս պատուաբեր պատճառաբանութիւնը չյուզեց խստասիրտ Եկէոսը։

Տէսէոս թէպէտ մեծ եւ գթասիրտ իշխան մըն էր, բայց ուժ չունէր իր հայրենիքի օրէնքները փոխելու, ուստի Հերմիայի միայն չորս օր ատեն տըւաւ մտածելու։ Պայմանաժամը լրանալէն ետք, եթէ Հերմիա տակաւին մերժէր ամուսնանալ Տիմիդրիոսի հետ՝ պիտի ենթարկուէր մահուան։

Երբ Հերմիա դուքսին ներկայութենէն արձակուեցաւ, իր սիրահարին Լիզանտէրի գնաց եւ պատմեց այն վտանգը որուն մէջ կը գտնուէր։ Այսպէս կամ պէտք էր Լիզանտէրէն հրաժարիլ եւ Տիմիդրիոսի հետ ամուսնանալ եւ կամ չորս օր ետք իր կեանքը վրայ պիտի տար։

Այս չարագուշակ լուրերը լսելով Լիզանտէր շատ տրտմեցաւ, սակայն միեւնոյն ատեն յիշելով որ մօրաքոյր մը ունէր որ Աթէնքէն քիչ մը հեռու կը բնակէր, խորհեցաւ թէ հոն անգութ օրէնքը կարելի չէր գործադրել Հերմիայի դէմ, որովհետեւ օրէնքը քաղաքին սահմաններէն անդին ուժ չունէր։ Ուստի Հերմիայի առաջարկեց նոյն գիշերը խոյս տալ հօրը տունէն եւ հետը միասին մօրաքրոջը տունը երթալով ամուսնանալ։

«Քեզի պիտի հանդիպիմ, ըսաւ Լիզանտէր, քաղաքէն դուրս քանի մը մղոն հեռու անտառին մէջ, այն հաճոյալի վայրը ուր յաճախ Հելէնայի հետ մայիսի հաճելի ամսուն շրջագայած ենք»։

Հերմիա ուրախութեամբ համաձայնեցաւ այս առաջարկին եւ միմիայն իր Հելէնա բարեկամուհիին ըսաւ մտադրած փախուստը։ Հելէնա մեծ

անազնուութեամբ, ինչպէս աղջիկները յիմար բաներ կ'ընեն սիրոյ համար, որոշեց երթալ այս բանը իմացնել Տիմիդրիոսի, թէպէտ չէր կրնար ուեւէ շահ յուսալ իր բարեկամուհիին գաղտնիքը մատնելէն, միայն չնչին հաճոյքը պիտի ունենար հետեւելու անտառին մէջ իր անհաւատարիմ սիրահարին, որովհետեւ աղէկ գիտէր թէ Տիմիդրիոս հոն պիտի երթար հետապնդելու Հերմիան:

Անտառը ուր Լիզանտէր եւ Հերմիա կ'առաջադրէին հանդիպիլ իրարու, սիրական այցելավայրն էր այն փոքր էակներուն որոնք ծանօթ են պարիկ կամ fրզմեզադէկ (քան մեզ աղէկ) անունով:

Օպերոն, պարիկներու թագաւորը եւ թագուհին՝ Թիթանիա իրենց բոլոր հետեւորդներու մանր շարքովը այս անտառին մէջ կը սարքէին կէս գիշերեայ իրենց կերուխումները:

Ոգիներու այս փոքր թագաւորին եւ թագուհիին միջեւ այն ժամանակ ցաւալի անհամաձայնութիւն մը կար: Անոնք կը խուսափէին իրարու հանդիպելէ այս հաճելի անտառին ստուերոտ արահետներուն մէջ լուսինկայ լոյսով, այլապէս կը կռուէին եւ այն աստիճան կատաղօրէն որ իրենց բոլոր օդապայ պարիկները կը սողային խոզկաղինի բաժակներուն մէջ եւ երկիւղէ կը պահուըտէին:

Այս դժբախտ անհամաձայնութեան պատճառը Թիթանիան էր որ կը մերժէր Օպերոնի տալ ոգիներէ փոխուած փոքր մանուկ մը որուն մայրը Թիթանիայի բարեկամուհին եղած էր: Այս վերջինին մահէն ետք Պարիկ թագուհին գողցաւ տղեկը իր դայեակէն եւ անտառներուն մէջ մեծցուց:

Այն գիշեր որ սիրահարները իրարու պիտի հանդիպէին այս անտառին մէջ, Թիթանիա կը պտըտէր քանի մը պատուակալ աղջիկներով: Եւ ահա

*հանդխպեցաւ Օպերոնի որուն կ'ընկերանար իր Պարիկ պալատականներու խումբը:*

*«Յոռի հանդիպում լուսնկայ լոյսով, հպարտ Թիթանիա», ըսաւ Պարիկ Թագաւորը:*

*«Ի՛նչ, դո՞ւն ես, նախանձոտ Օպերոն, պատասխանեց Թագուհին. պարիկնե՛ր, փախէք այս տեղէն, ես կը ժխտեմ անոր ընկերութիւնը»:*

*«Կեցի՛ր, անձնապաստան Պարիկ, ըսաւ Օպերոն, միթէ քու տէրդ չե՞մ ես: Ինչո՞ւ Թիթանիա կը նեղացնէ իր Օպերոնը: Տուր փոխուած մանուկը որ մանկլաւիկս ըլլայ»:*

*«Հանգստացո՛ւր սիրտդ, պատասխանեց Թագուհին, քու ամբողջ կիսական թագաւորութիւնդ չի կրնար տղան գնել ինծմէ»: Ու Թիթանիա թողուց իր տէրը մեծ զայրոյթով:*

*«Աղէ՛կ, ճամբադ գնա, ըսաւ Օպերոն, առաւօտը բացուելէ առաջ այս վիրաւորանքին փոխարէն պիտի չարչրկեմ քեզ»: Օպերոն յետոյ կանչել տուաւ իր գլխաւոր սիրական եւ մասնաւոր խորհրդական Պիւքը:*

*Պիւք խորամանկ եւ նենգաւոր ոգի մըն էր որ ծաղրակա չարաճճիութեամբ կը խաղար չրջակայ գիւղերուն մէջ: Մերթ կաթնավաճառատուները կը մտնէր եւ կաթին իւղը կ'առնէր, մերթ իր թեթեւ եւ զուարթ ձեւը խնոցին մէջ կը մխրճէր եւ երբ իր երեւակայական ձեւով կը պարէր ամանին մէջ, կաթնավաճառ աղջիկը զուր տեղը կ'աշխատէր իր սերը կարագի փոխելու: Գիւղական սիրահար հովիւներն ալ աւելի յաջողութիւն մը չէին ունենար: Երբ որ Պիւք կասկումի կաթսային մէջ նախընտրէր գործադրել իր քմահաճոյքը, վստահաբար գարեջուրը կ'աւրուէր: Երբ քանի մը բարի դրացիներ կը հաւաքուէին զուարճացուցիչ ճերմակ գարեջուր խմե-*

լու, Պիւք Գարեջուրի ամանին մէջ կը ցատկէր խորոված խեչափառի ձեւով եւ երբ պառաւ կին մը խմէր ամանէն, անոր պռկունքներուն դէմ կը ճօճէր եւ գարեջուրը կը թափէր պառաւին թոռմած ծնօտին վրայ: Անմիջապէս ետք երբ նոյն պառաւը լրջօրէն կը նստէր տխուր ու տրտում պատմութիւն մը պատմելու իր դրացուհիին, Պիւք կը սահեցնէր անոր տակէն եռոտանի աթոռը եւ վար կը ձգէր խեղճ կինը: Դրացիները կը բռնէին իրենց կողերը եւ կնոջ վրայ կը խնդային, երդում ընելով որ ասկէ աւելի զուարթ ժամանց երբեք չէին ունեցած:

«Հոս եկուր Պիւք, ըսաւ Օպերոն գիշերուան այս զուարթ թափառաշրջիկին, գնա բեր այն ծաղիկը զոր աղջիկները անձօր սէր կը կոչեն, այդ փոքր ծիրանի ծաղկին հիւթը երբ քնացողի մը աչքի կոպերուն քսուի եւ այդ աչքերը արթննալով բացուին, առաջին առարկան որ տեսնեն, կը սիրահարին: Այդ ծաղկին հիւթէն մաս մը իմ Թիթանիայի կոպերուն վրայ պիտի կաթեցնեմ երբ քուն ըլլայ: Երբ Թիթանիա աչքերը բանայ, ո՛ր բանին վրայ որ առաջին անգամ նայի, պիտի սիրահարի, եթէ անիկա մինչեւ իսկ առիւծ մը, արջ մը, խաղցող կապիկ մը կամ գործունեայ կապիկ մը ըլլայ, եւ այս հմայքը իմ գիտցած ուրիշ մէկ դիւթանքովս անոր աչքերէն վերցնելէ առաջ, տղեկը ինծի պիտի տալ տամ որ մանկլաւիկս չինեմ»:

Պիւք որ սրտանց չարութիւն կը սիրէր, մեծապէս զբօսնեցաւ իր տիրոջ մտադրած զուարճութենէն եւ վազեց գտնելու ծաղիկը: Մինչդեռ Օպերոն Պիւքի վերադարձին կը սպասէր, դիտեց Տիմիդրիոսը եւ Հելէնան որոնք անտառ կը մտնէին: Օպերոն լսեց որ Տիմիդրիոս կը մեղադրէր Հելէնան իրեն հետեւելուն համար ու շատ անազնիւ խօսքեր

կ՚ըսէր անոր։ Հելէնա կը պատասխանէր մեղմ դիտողութիւններով եւ կը յիշեցնէր անոր նախկին սէրը եւ ճշմարիտ հաւատարմութեան խոստումները, բայց Տիմիդրիոս կը լքէր զայն վայրի գազաններու վտանգին, իսկ Հելէնա կարելի արագութեամբ անոր ետեւէն կինը վազէր։

Կիւսական Թագաւորը միշտ բարեացակամ ըլլալով անկեղծ սիրողներու՝ մեծ կարեկցութիւն զգաց Հելէնայի հանդէպ, եւ գուցէ Օպերոն տեսած էր Հելէնան այն երջանիկ ժամանակները երբ կը սիրուէր Տիմիդրիոսէ եւ լուսնկայ լոյսով կը պտըտէին այս հաճելի անտառին մէջ։ Ամէն պարագայի տակ, երբ Պիւք ծերանեգոյն փոքր ծաղիկով վերադարձաւ, Օպերոն ըսաւ իր սիրականին.

«Առ ծաղկէն մաս մը։ Աթենացի անուշ աղջիկ մը եկաւ հոս որ կը սիրէ արհամարհոտ երիտասարդ մը. եթէ այդ երիտասարդը գտնես քուն վիճակի մէջ, կաթեցուր քիչ մը սիրոյ հիւթ աչքերուն վրայ, բայց հաշուէ որ այդ բանը ընես այն ատեն երբ աղջիկը մօտ է, որպէսզի երբ արթննայ, տեսնելիք առաջին առարկան այս արհամարհուած օրիորդը ըլլայ։ Մարդը պիտի ճանչնաս իր կրած աթենական հանդերձներէն»։

Պիւք խոստացաւ այս գործը մեծ նրբամտութեամբ կարգադրել, իսկ Օպերոն գնաց աննշմար Թիթանիայի հիւղը ուր Թագուհին կը պատրաստուէր հանգստանալ։ Կիւսական պարդասննեակը գետեզերք մըն էր ուր կ՚աճէին վայրի զամբուղը, կոկոնծուկներ եւ անուշահոտ մանիշակներ՝ նստարան մը տակ որ շինուած էր այծտերեւէ, մշկավարդէ եւ էլէկանթինէ։ Գիշերուան մէկ քանի ժամը հոս կը նիրհէր Թիթանիա եւ իր ծածկոցը օձի մը կիտուածանկար շապիկը կը կազմէր որ թէպէտ փոքր վե–

*բարկու մըն էր, այլ սակայն բաւական լայն էր յաւէրժահարս մը մէջը փաթաթելու համար:*

*Օպերոն տեսաւ որ Թիթանիա հրամաններ կուտար իր պարիկներուն թէ ի՛նչ զբաղումներ պիտի ունենային իր քնանալու միջոցին:*

*«Ձենէ մէկ քանին, կ՚ըսէր Նորին Վեհափառութիւնը, մշկավարդի կոկոններուն մէջ դոդօշներ պիտի սպաննէ, ուրիշներ պէտք է պատերազմին չըղջիկներուն դէմ՝ անոնց կաշեայ թեւերը ձեռք բերելու նպատակով, որպէսզի իմ փոքր օդապաններուս վերարկուներ շինենք, իսկ ձենէ ուրիշ մաս մը պիտի հսկէ որ աղխտաբեր բուն եւ անոր գիշերային կռինչը քովս չմօտենայ: Բայց նախ երգեցէք որ քնանամ»:*

*Այս հրամանին վրայ պարիկները սկսան երգել սա երգը:*

Կրկնակ լեզուով բծաւոր օձեր,
Մ՛ի տեսնուիք դուք փշոտ ոզնիներ.
Կովծուծ, կուրօձեր դուք վնաս մի տաք,
Մեր կիւս թագուհիին չըլլայ մօտենաք:
Քաղցրաձայն Փիլոմէլ,
Երգէ քունն անուշ,
Օրօ՛ր, օրօ՛ր, օրօ՛ր,
Վնաս, դիւթանք, հմայք,
Չըլլայ մեր սիրուն տիկնոջ մօտենաք:

*Երբ պարիկները այս քներգով քնացուցին իրենց թագուհին, գացին հեռացան իրենց յանձնուած կարեւոր ծառայութիւնները կատարելու: Այն ատեն Օպերոն մեղմիւ մօտեցաւ իր Թիթանիային եւ կաթեցուց անոր աչքերու կոպերուն վրայ սիրոյ հիւթէն, ըսելով.*

Արթննալուդ ինչ որ տեսնես,
Անկեղծ սիրով մը սիրես:

Բայց դառնանք Հերմիայի որ այդ գիշեր հօրը տունէն փախած էր, որպէսզի խուսափէր մահուան դատապարտութենէ: Հերմիա երբ անտառը մտաւ, հոն գտաւ իր սիրելի Լիզանտէրը որ կը սպասէր մօրաքրոջը տունը առաջնորդելու, սակայն անտառին կէսը կտրել անցնելէ առաջ այնչափ յոգնեցաւ որ Լիզանտէր համոզեց զայն պառկիլ հանգստանալ մինչեւ առաւօտ մամուռէ փափուկ նստարանի մը վրան:

Պուք հոս գտաւ զանոնք եւ տեսաւ որ քնացող գեղեցիկ երիտասարդը Անթենական ձեւով հագուած էր, իսկ քովը սիրուն օրիորդ մը կը քնանար: Պուք եզրակացուց թէ ասոնք պիտի ըլլային այն Անթենացի աղջիկն ու արհամարհոտ սիրողը որոնց համար ղրկած էր զինքը Օպերոն: Եւ բնականօրէն ենթադրեց թէ քանի որ մէկտեղ առանձնացած էին, արթննալէ յետոյ առաջին անգամ զիրար պիտի տեսնէին, ուստի առանց աղմուկի ծիրանի ծաղկին հիւթը երիտասարդին աչքերուն մէջ թափեց:

Սակայն տարօրինակ զուգադիպութեամբ մը երբ Լիզանտէր աչքերը բացաւ, փոխանակ Հերմիայի տեսաւ Հելէնան որ այդ ճամբէն կուգար: Եւ սիրոյ դիւթանքը այնչափ զօրեղ եղաւ որ Հերմիայի հանդէպ ունեցած սէրը բոլորովին ցնդեցաւ եւ Լիզանտէր սիրահարեցաւ Հերմիայի:

Եթէ Լիզանտէր արթննալու պահուն Հերմիան տեսած ըլլար, Պուքի գործած սխալը անհետեւանք պիտի մնար, որովհետեւ այդ հաւատարիմ օրիորդը այնքան կը սիրէր որ աւելի սիրել չէր կրնար: Սակայն կիւսական սիրոյ դիւթանքով մը Լիզանտէր հիմա կը բռնադատուէր եւ կը մոռնար հաւատարիմ Հերմիան ու կը վազէր ուրիշ օրիորդի մը ետեւէն, կը լքէր զայն քնացած վիճակի մէջ բոլորովին մենա-

ուրիկ գիշեր ատեն անտառին խորը, եւ ասիկա իրաւ որ դէշ բախտ մըն էր:

Դժբախտութիւնը պատահեցաւ այսպէս. Հելէնա, ինչպէս առաջ պատմեցինք, կը ջանար Տիմիթրիոսի հասնիլ երբ ան կոշտ կերպով խոյս կուտար, սակայն այս վազքը չէր կրնար երկար շարունակել, քանզի այրերը միշտ աւելի կը վազեն քան կիները: Հելէնա շուտով աչքէ կը կորսնցնէր Տիմիթրիոսը ու երբ յուսահատ ու լքեալ հոս հոն կը թափառէր, հասաւ այն տեղը ուր Լիզանտէր կը քնանար:

«Ա՜հ, ըսաւ, Լիզանտէրն է որ գետինը կը պառկի. մեռա՞ծ է թէ քուն»:

Յետոյ մեղմիւ դպելով անոր ըսաւ. «Ազնիւ պարոն, եթէ ողջ էք, արթնցէ՛ք»: Ասոր վրայ Լիզանտէր բացաւ իր աչքերը եւ որովհետեւ սիրոյ դիւթանքը սկսաւ գործել, անմիջապէս արտակարգ սիրոյ եւ հիացման բառեր ուղղեց անոր: Ըսաւ թէ Հելէնա գեղեցկութեամբ շատ կը գերազանցէ Հերմիան, ինչպէս տատրակ մը կը գերազանցէ ագռաւը, թէ ինք սիրոյ կրակին մէջէ կը վազէ եւ նման սիրահարական խօսքեր: Հելէնա դիտնալով որ Լիզանտէր իր բարեկամուհիին սիրահարն էր ու հանդիսաւորապէս նշանուած անոր հետ ամուսնանալու, վերին աստիճան կատղեցաւ խօսելու այս եղանակէն, որովհետեւ խորհեցաւ թէ Լիզանտէր կը ծաղրաբանէր:

«Ո՜հ, կ'ըսէր Հելէնա, միթէ ծնա՞յ որ ամէն մարդէ ծաղրուիմ եւ անգոսնուիմ, բաւական չէ՞ երիտասարդ, բաւական չէ՞ որ քաղցր նայուածք մը կամ ազնիւ խօսք մը երբեք չկրնամ լսել Տիմիթրիոսէ, եւ դուք կը յաւակնիք այս արհամարհոտ եղանակով հետս սիրաբանելու: Լիզանտէ՛ր, կը խոր-

հէի որ դուք աւելի ճշմարիտ ազնուութեան տէր էիք»։

Հելէնա մեծ ցասումով արտասանեց այս խօսքերը եւ փախաւ, բայց Լիզանտէր հետեւեցաւ անոր, բոլորովին մոռնալով որ իր Հերմիան կը քնանար տակաւին։

Երբ արթնցաւ Հերմիա, վախցաւ որ մինակ էր. թափառեցաւ անտառին մէջ չգիտնալով Լիզանտէրի տեղը եւ փնտռտուքի ուղղութիւնը։ Միաժամանակ Տիմիթրիոս չկրնալով գտնել Հերմիան եւ հակառակորդ Լիզանտէրը, յոգնեցաւ ապարդիւն որոնումէն եւ խոր քուն մտաւ։ Այս վիճակին մէջ Օպերոն նըշմարեց զինքը եւ իմանալով Պուքի սխալը, քնացող Տիմիթրիոսի աչքերուն քսեց սիրոյ հիւթը։ Տիմիթրիոս իսկոյն արթնցաւ եւ առաջին անգամ Հելէնան տեսնելով, Լիզանտէրի պէս սկսաւ սիրոյ խօսքեր ուղղել անոր։ Ճիշդ այդ պահուն երեւցաւ Լիզանտէր որուն կը հետեւէր Հերմիա, որովհետեւ Պուքի դըժբախտ սխալին պատճառով հիմա Հերմիան էր որ կը վազէր իր սիրողին ետեւէն։ Լիզանտէր եւ Տիմիթրիոս երկուքը մէկանց սկսան Հելէնայի հետ սիրաբանիլ, որովհետեւ երկուքն ալ միեւնոյն զօրեղ դիւթանքի ազդեցութեան տակ կը գտնուէին։

Զարմանահար Հելէնա կարծեց թէ Տիմիթրիոս, Լիզանտէր եւ երբեմնի սիրելի Հերմիան միատեղ խաղ սարքած զինքը կը ծաղրէին։

Հերմիա Հելէնայի չափ զարմացած էր, որովհետեւ չէր գիտեր թէ ինչու Լիզանտէր եւ Տիմիթրիոս որոնք երկուքն ալ առաջ կը սիրէին զինքը, հիմա Հելէնայի սիրահարներ դարձած էին, ուստի խնդիրը զուարթաբանութիւն չէր նկատեր։

Երկու աղջիկները որոնք նախապէս թանկագին

*բարեկամներ էին իրարու, հիմա ծանր խօսքեր կը փոխանակէին։*

*«Անազնիւ Հերմիա, աղաղակեց Հելէնա, դուն դրդեցիր Լիզանտէրը որ զիս զայրացնէ կեղծ գովեստներով, յետոյ միւս սիրահարիդ՝ Տիմիթրիոսի չհրամայեցի՞ր որ զիս աստուածուհի, հաղուադիւտ, թանկագին եւ երկնային կոչէ։ Ան զիս կ'ատէ եւ դուն դրդեցիր որ ծաղրի նիւթ ընէ զիս։ Անազնիւ Հերմիա, դուն կը միանաս մարդոց հետ որ խեղճ բարեկամուհիդ անգոսնեն։ Դուն մոռցա՞ր մեր դըպրոցական բարեկամութիւնը։ Հերմիա՛, յաճախ երկուքս կը նստէինք միեւնոյն բազմոցին վրայ եւ միեւնոյն երգը կ'երգէինք, մեր ասեղներով միեւնոյն ծաղիկը կ'ասեղնագործէինք։ Մեծցանք մէկտեղ զոյգ կեռասի մը ձեւով եւ քիչ անգամ բաժնուեցանք իրարմէ։ Հերմիա՛, բարեկամական չէ ասիկա, օրիորդի մը անվայել է միանալ մարդոց, որպէսզի հէք բարեկամուհի մը ծաղրէ»։*

*«Կը զարմանամ որ զայրոյթով կը խօսիս, պատասխանեց Հերմիա, քեզ չեմ ծաղրեր, կը թուի թէ դուն ես զիս ծաղրողը»։*

*«Հա՛, շարունակէ, ըսաւ Հելէնա, լուրջ հայեացքներ կեղծէ ու դիմածռութիւն ըրէ երբ կռնակս դարձնեմ, յետոյ աչք խփեցէք իրարու եւ քաղցր հեգնութիւնը շարունակեցէք։ Եթէ դուք գութ, շընորհ ու վարուելակերպ ունենայիք, զիս այսպէս պիտի չգործածէիք»։*

*Մինչդեռ Հելէնա ու Հերմիա բարկացոտ բառեր կը փոխանակէին, անդին Լիզանտէր եւ Տիմիթրիոս անտառին մէջ կը կռուէին իրարու հետ Հելէնայի սիրոյն համար։ Աղջիկները տեսնելով որ երկու պարոնները թողուցին զիրենք, ելան մեկնեցան անտառին մէջ փնտռելու իրենց սիրահարները։*

Թագաւոր Պարիկը փոքր Պուքի հետ կը լսէր այս վէճերը եւ աղջիկներու մէկնումէն անմիջապէս ետքը ըսաւ. «Պո՛ւք, ասիկա քու անհոգութեանդ հետեւանքն է, արդեօք դիտմա՞մբ ըրիր»:

«Հաւատացէ՛ք, ստուերներու արքայ, պատասխանեց Պուք, սխալ մը եղաւ. չըսի՞ք ինծի թէ մարդը պիտի ճանչնամ իր աթենական հագուստներէն. սակայն չեմ ցաւիր սխալին վրայ, որովհետեւ անոնց հակառակութիւնը սքանչելի զբօս մըն է»:

«Դուն լսեցիր, ըսաւ Օպերոն, որ Տիմիթրիոս եւ Լիզանտէր մեկնեցան կռուի յարմար տեղ մը գըտնելու: Քեզի կը հրամայեմ որ գիշերը թանձր մառախուղ մը կուտակես եւ այս կռուասէր սիրահարները այնպէս խոտոր առաջնորդես մութին մէջ որ չկրնան գտնել զիրար: Մէկուն ձայնը միւսին նմանցուր եւ ծաղրանքով ստիպէ որ քեզի հետեւին եւ անոնք թող կարծեն թէ իրենց հակառակորդին լեզուն է որ կը լսեն: Նայէ՛ որ կատարես պատուէրս, մինչեւ որ աղէկ մը յոգնին եւ աւելի հեռուն չկրնան երթալ: Իսկ երբ տեսնես որ քնուն են, կաթեցո՛ւր սա միւս ծաղիկին հիւթը Լիզանտէրի աչքերուն մէջ եւ երբ արթըննայ Հելէնայի նոր սէրը մոռցած պիտի ըլլայ եւ Հերմիայի հին սէրը պիտի վերադառնայ, այն ատեն երկու գեղանի աղջիկներն ալ պիտի երջանկանան իրենց սիրած երիտասարդին հետ: Բոլորը պիտի խորհին թէ կաչկանդիչ երազ մը տեսած են: Շուտով գործին նայէ, Պո՛ւք, իսկ ես կ'երթամ տեսնել թէ ի՛նչ քաղցր սէր գտած է իմ Թիթանիաս»:

Թիթանիա տակաւին կը քնանար: Օպերոն անոր քով տեսաւ շինական մը որ անտառին մէջ մոլորած էր ու նոյնպէս կը քնանար: Օպերոն խորհեցաւ. «Այս մարդը իմ Թիթանիայիս ճշմարիտ սիրահարը ըլլալու է», ու շինականին գլուխը իշու մը գլուխ

անցուց, բայց այնքան լաւ յարմարեցաւ որ կարծես թէ բնականէն ուսերուն վրայ մեծցած ըլլար: Օպերոն իշուն գլուխը թէեւ մեղմիւ հաստատեց, բայց մարդը նորէն արթնցաւ, կանգնեցաւ ու անգիտակից Օպերոնի արարքին՝ շարժեցաւ դէպի խրճիթը ուր կիսական Թագուհին կը քնանար:

«Ա՜հ, ի՛նչ հրեշտակ է որ կը տեսնեմ, գեղեցկութեանդ չափ խելօ՞ք ես», ըսաւ Թիթանիա, բանալով աչքերը եւ ծիրանի ծաղկին հիւթը սկսաւ ազդել:

«Ինչո՞ւ տիրուհի, նկատեց շինականը, եթէ բաւական նրբամիտ ըլլամ անտառի ճամբէն դուրս ելլելու, նպատակիս բաւական ծառայած կ՚ըլլամ»:

«Մի՛ փափաքիր անտառէն դուրս երթալ, պատասխանեց սիրահարած Թագուհին, հասարակ ոգի մը չեմ, կը սիրեմ քեզ, եկուր ինծի հետ, եւ ես պարիկներ պիտի տամ քեզի որ սպասարկեն»:

Թիթանիա կանչեց իր պարիկներէն չորսը որոնց անուններն էին՝ Ոլոռն-ծաղիկ, Սարդի ոստայն, Գիշերային թիթեռնիկ եւ Մանանեխի հունտ: «Ծառայեցէք այս քաղցր պարոնին, ըսաւ Թագուհին, ցատկռտեցէք իր ճամբուն վրայ եւ պարեցէք: Ծիրանով ու խաղողով կերակրեցէք զինքը եւ մեղուներէն մեղրի չեչեր գողնալով բերէք»: Թագուհին դառնալով շինականին՝ «Եկուր նստէ քովս, եւ թոյլ տուր որ հաճելի մազոտ այտերդ գգուեմ, իմ գեղեցիկ էշս, թոյլ տուր որ համբուրեմ աղուոր ու երկար ականջներդ, իմ հոգեա՛կս»:

«Ո՞ւր է Ոլոռն-ծաղիկը», ըսաւ իշագլուխ գիւղացին, ուշադիր չըլլալով կիսական Թագուհիին սիրաբանութեանը եւ հպարտանալով իր նոր սպասաւորներէն:

«Ահաւասիկ, տէր», պատասխանեց Ոլոռն-ծաղիկը:

«Քերէ՛ գլուխս, ըսաւ չինականը, ո՞ւր է Սարդի ոստայնը»։

«Հոս եմ տէր», պատասխանեց Սարդի ոստայնը։

«Բարեսիրտ Սարդի ոստայն, խօսեցաւ յիմար չինականը, սպաննէ սա կարմիր բոռը որ հոն դըժ-նեկին (բոյս մը՝ տէվէ տիքէնի) գագաթը կը գտնուի եւ ինծի բեր մեղրի պարկը։ Շատ չմաչիս գործին մէջ, պարոն Սարդի ոստայն, հոգ տար որ մեղրի պարկը չպատռի, պիտի ցաւիմ եթէ մեղրի պարկով քեզ ողողուած տեսնեմ։ Ո՞ւր է Մանանեխի հունտը»։

«Ահաւասիկ տէր, ի՞նչ է ձեր կամքը»։

«Ոչի՛նչ, միայն օգնէ պարոն Ոլոռն ծաղիկին գլուխս քերելու։ Պէտք է սափրիչի մը երթամ, պր. Մանանեխի հունտ, որովհետեւ դէմքիս վրայ սքան-չելի մազեր բուսած են»։

«Իմ քաղցրիկ սէրս, ըսաւ Թագուհին, ի՞նչ կ՚ուզէք ուտել։ Ես յանդուգն պարիկ մը ունիմ որ պիտի երթայ սկիւռի մը մթերքը փնտռել եւ քեզի թարմ կաղիններ պիտի բերէ»։

«Կը նախընտրեմ բուռ մը չոր ոլոռն, ըսաւ չի-նականը, որ իշու գլխով իշու ախորժակ ստացած էր, բայց կ՚աղաչեմ, թո՛ղ մարդերէդ ոչ մէկը զիս չանհանգստացնէ, քնանալու միտք ունիմ»։

«Քնացիր ուրեմն, ըսաւ Թագուհին, պիտի հոտ-ուըտամ քեզ բազուկներուս մէջ։ Ո՜հ, որչա՛փ կը սիրեմ քեզ, որչա՛փ խենթի պէս կը սիրեմ քեզ»։

Երբ կիսամկան Թագաւորը տեսաւ որ չինակա-նը կը քնանար Թագուհիին բազուկներուն մէջ, տես-նըւելու չափ առաջացաւ եւ մեղադրական խօսքերով ըսաւ թէ անիկա իր շնորհները իշու մը վրայ կը շը-ռայլէ։ Այս բանը Թագուհին չէր ըրնար հերքել, ո-րովհետեւ չինականը իր բազուկներուն մէջ կը քնա-

նար իչու գլուխով զոր Թագուհին ծաղիկներով պըսակած էր։

Երբ Օպերոն ատեն մը նեղը դրաւ զայն, դարձեալ պահանջեց մանուկը զոր չկրցաւ մերժել Թագուհին, մանաւանդ ամչցաւ որ տէրը իր նոր սիրականին հետ բռնած էր զինքը։

Այսպէս Օպերոն ստանալով փոքր տղան որ երկար ատենէ ի վեր կը փափաքէր իրեն մանկլաւիկ ընել, խղճաց Թիթանիայի այս ամօթալի վիճակին վրայ եւ միւս ծաղիկէն քիչ մը հիւթ սրսկեց անոր աչքերուն մէջ։ Պարիկ Թագուհին անմիջապէս վերստացաւ իր զգայականութիւնը եւ զարմացաւ իր վերջին յիմար սիրահարութեան վրայ որմէ կը նողկար։ Օպերոն չինականէն նոյնպէս վերցուց իշու գլուխը եւ թոյլ տուաւ որ մրափը աւարտէ իր ուսերու յիմար գլխովը։

Օպերոն եւ Թիթանիա այժմ կատարելապէս հաշտուած ըլլալով, Օպերոն պատմեց սիրահարներու պատմութիւնը եւ անոնց կէս գիշերի վէճերը, իսկ Թագուհին համաձայնեցաւ երթալ տեսնելու անոնց արկածներու վախճանը։

Կիւսական Թագաւորը ու Թագուհին գտան սիրահարները եւ գեղանի օրիորդները մարգագետնի վրայ, քուն վիճակի մէջ, իրարմէ քիչ հեռու, որովհետեւ Պիւք իր նախորդ սխալը դարմանելու համար խորհած էր պանոնք բոլորը միեւնոյն տեղը բերել, իրարմէ անտեղեակ, իսկ Լիզանտէրի աչքերէն արդէն վերցուցած էր հմայքը Կիւսական Թագաւորէն ստացած հակադեղովը։

Նախ արթնցաւ Հերմիա ու կորսնցուցած Լիզանտէրը քովը քնացած վիճակի մէջ գտնելով, կը նայէր ու կը զարմանար այս տարօրինակ անհաստատամտութեան վրայ։ Լիզանտէր իսկոյն բացաւ

*աչքերը եւ տեսնելով իր սիրելի Հերմիան, վերստացաւ դատողութիւնը որ կիւսական հմայքով մթագնած էր, վերստացաւ նաեւ Հերմիայի սէրը: Երկուքը սկսան գիշերուան արկածներու մասին խօսիլ ու խորհիլ որ եթէ անոնք իրապէս պատահած էին, կը նշանակէ թէ երկուքն ալ նոյն մոլորեցնող երազը տեսած էին:*

*Մինչ այս՝ Հելէնա ու Տիմիթրիոս արթնցեր էին ու կը խօսէին: Սիրուն Հելէնան հաճոյքով կը լսէր Տիմիթրիոսի յարատեւ սիրոյ արտայայտութիւնները որոնք հաճելի ու զարմանալիօրէն անկեղծ էին:*

*Գիշերաշրջիկ այս դեղանի օրիորդները, այլեւս դադրած հակառակորդ ըլլալէ, դարձեալ հաւատարիմ բարեկամներ եղան, մոռցան բոլոր անազնիւ խօսքերը եւ հանդարտօրէն խորհրդակցեցան թէ ի՛նչ պիտի ըլլար իրենց բռնելիք լաւագոյն ուղղութիւնը: Եւ չուտով համաձայնեցան որ Տիմիթրիոս հրաժարէր իր յաւակնութիւններէն հանդէպ Հերմիայի եւ ազդեցութիւն բանեցնելով հօրը վրայ մահուան անգութ դատավճիռը ետ առնել տար: Տիմիթրիոս կը պատրաստուէր Աթէնք վերադառնալ այս նպատակին համար, երբ Հերմիայի հայրը երեւցաւ: Եկէոս անտառը եկած էր իր փախստական աղջիկը հետապնդելու:*

*Երբ Եկէոս իմացաւ որ Տիմիթրիոս պիտի չկարգուի իր դստեր հետ, ա՛լ չհակառակեցաւ Լիզանտէրի ամուսնութեան, ու հաւանութիւն տուաւ որ չորս օր ետք պսակուին, ճիշդ այն օրը որ Հերմիա դատապարտութեամբ իր կեանքը պիտի կորսնցնէր: Իսկ Հելէնա ուրախութեամբ հաւանեցաւ նոյն այդ օրը ամուսնանալ իր սիրած եւ հիմա հաւատարիմ Տիմիթրիոսի հետ:*

*Կիւսական թագաւորն ու թագուհին որոնք ան-*

տեսանելի հանդիսատեսներն էին այս հաշտութեան, տեսան սիրողներու պատմութեան երջանիկ վախճանը զոր յաջողցուցեր էր Օպերոն իր միջոցներով ու այնչափ հրճուեցան որ վճռեցին վերահաս հարսնիքները իրենց կիսական թագաւորութեան մէջ տօնել զբօսներով ու խրախճանութեամբ:

Իսկ հիմա, եթէ պարիկներու պատմութենէն ու չարաճճիութիւններէն վիրաւորուողներ կան որ անհաւատալի եւ արտառոց կը գտնեն զանոնք, այդպիսիները միայն պէտք է խորհին որ քնացած ու երազած են, որովհետեւ այս բոլոր արկածները տեսիլքներ էին զոր իրենց քունին մէջ տեսան: Ուստի ընթերցողներէն ոչ մին վշտանալու չափ անիրաւ կամ անարդար պիտի ըլլայ Ամառ Գիշերուան սիրուն եւ անվնաս Երազէ մը:

# ՀԱՄԼԷԹ

Տանիմարքայի Համլէթ թագաւորը յանկարծամահ ըլլալով, իր կինը՝ Կերթրուտ թագուհին երկու ամիս չանցած ամուսնացաւ անոր Գլօտիոս եղբօրը հետ: Այս դէպքը այդ ատեն ամէնուն կողմէ նկատուեցաւ անխոհեմութեան արտառոց արարք մը, անզգայութիւն եւ կամ աւելի գէշ բան մը, որովհետեւ Գլօտիոս իր անձնական կամ մտային արժանիքներով ոչ մէկ կերպ չէր նմաներ թագուհիին հանգուցեալ էրկանը: Գլօտիոս ստոր ու անարժան էր բնաւորութեամբ որքան անարգ էր արտաքին երեւոյթով: Կասկածներ չուշացան արթննալ քանի մը մտքերու մէջ թէ Գլօտիոս իր թագաւոր եղբօրը դէմ գաղտնի դաւադրած էր այրիին հետ ամուսնանալու եւ Տանիմարքայի գահը բարձրանալու նպատակով: Երիտասարդ Համլէթ իշխանը որ մեռնող թագաւորին որդին ու գահին օրինաւոր ժառանգն էր՝ կը զրկուէր իր իրաւունքէն:

Թագուհիին անխորհուրդ գործը ոչ մէկուն վրայ այնչափ ազդեցութիւն ըրաւ որչափ երիտասարդ Համլէթի՝ որ կռապաշտութեան աստիճան կը սիրէր ու կը յարգէր իր հօր յիշատակը: Իշխանը պատուոյ զգացումի տէր եւ մաքրակենցութեան բուռն կողմնակից մը ըլլալով, սրտախոց եղաւ իր մօրը՝ Կերթրուտի անարժան ընթացքէն: Մէկ կողմէ հօրը մահուան վիշտը եւ միւս կողմէ մօրը ամուսնութեան ամօթը խորունկ մելամաղձութեան մատնեցին զինքը եւ կորսնցնել տուին ուրախութիւնն ու գուարթ արտայայտութիւնները: Իշխանը այլեւս հաճոյք չէր

տներ ընթերցումներէ, իշխանական մարզանքներն ու զբօսները որոնք յատուկ են երիտասարդութեան՝ հաճելի չէին իրեն, կը ձանձրանար աշխարհէն որ սիգառատ պարտէզ մը կը թուէր եւ ուր բոլոր օգտակար ծաղիկները չնչահեղձ եղած՝ միմիայն սէզերը կրնային զարգանալ։ Իր օրինաւոր ժառանգութենէն, գահէն զրկուելու հեռապատկերը անշուշտ շատ կը ճնշէր Համլէթի վրայ, քանզի երիտասարդ եւ բարձր մտքի տէր իշխանի մը համար ատիկա դառն վէրք մը եւ կոշտ անպատուութիւն մըն էր, սակայն այդ չէր որ կը մաշեցնէր զինքը ու կը հեռացնէր իրմէ բոլոր զուարթ տրամադրութիւնները որքան այն՝ որ մայրը կը մոռնար հօրը յիշատակը։ Համլէթի հայրը սիրող ու ազնիւ ամուսին մը եղած էր, իսկ Կերթրուտ միշտ սիրալիր ու հնազանդ կին մը կ'երեւէր եւ անանկ կը փարէր էրկանը որ կարծես թէ անոր սէրը կ'աճէր։ Այժմ սակայն, երկու ամսուան մէջ, կամ ինչպէս երիտասարդ իշխանին կը թուէր, երկու ամիսէն պակաս ժամանակի մը մէջ՝ մայրը նորէն կ'ամուսնանար եւ կ'ամուսնանար տագեր հետ, Համլէթի հօրեղբօրը հետ, ասիկա արդէն ինքն ըստինքեան անմաքուր եւ ապօրինի ամուսնութիւն մըն էր, ո՛չ միայն մերձաւոր ազգականութեան պատճառով, այլ նաեւ այն անվայել աճապարանքով որով կնքուած էր այս միութիւնը. ասկէ զատ, Թագուհին անարքայավայել նկարագրի տէր մէկը ընտրած էր, բան մը որ կը ծանրացնէր գործը եւ տասը թագաւորութիւններու կորուստէն աւելի կը կեղեքէր մարդոց սիրտն ու ամպ մը կը կուտակէր յարգելի իշխանին մտքին վրայ։

Թագուհին եւ Թագաւորը ամէն բան ըրին Համլէթը զուարթացնելու, բայց ի զուր, անիկա կը շարունակէր սեւ հագուստով երեւիլ արքունիքին մէջ

իբր սգակիր եւ մօրը ամուսնութեան օրն անգամ չէր փոխեր իր ձեւը ի յարգանս, նոյն իսկ կարելի չեղաւ զինքը մասնակից ընել այդ անպատիւ օրուան տօնախմբութիւններուն եւ ուրախութեանց։

Ինչ որ ամենէն աւելի կը խռովէր Համլէթի հոգին, հօրը մահուան եղանակի անստուգութիւնն էր։ Գլոտիոս ըսած էր թէ հայրը օձէ մը խայթուած էր, բայց Համլէթ նուրբ կասկածներ ունէր թէ այդ օձը Գլոտիոսն էր, ուրիշ խօսքով Գլոտիոս մեռցուցած էր իր եղբայրը թագին տիրանալու համար եւ խայթող օձը այժմ կը բազմէր իր զոհին գահուն վրայ։

Համլէթ չէր գիտեր իր խորհուրդին ստուգութիւնը, մօրը մեղսակցութեան չափը, այսինքն անոր հաւանութիւնը կամ գիտութիւնը, եւ կամ անմեղութիւնը սպանութեան մէջ, բայց այս բոլորը միտքն կ'անցնէին եւ կասկածներ էին որոնք չարունակաբար կը յոգնեցնէին զինքը եւ մտացիր կ'ընէին։

Զրոյց մը հասած էր երիտասարդ Համլէթի ականջին թէ ուրուական մը, որ ճիշդ մեռած հօրը կը նմանէր, երկու կամ երեք գիշեր յաջորդաբար տեսնուած էր պահակներու կողմէ կէս գիշերին պահակաբեմին վրայ, պալատին առջեւ։ Այս կերպարանքը յաճախ կ'երեւէր ոտքէն գլուխը հագած նոյն զրահէ հագուստը զոր սովորաբար կը կրէր հանգուցեալ թագաւորը։ Տեսնողներէն մէկը Համլէթի մտերիմ բարեկամներէն էր եւ բոլորը համաձայն էին ուրուականի երեւալու ժամանակին ու եղանակին նկատմամբ։ Ան կուգար երբ ժամը ճիշդ տասներկու կը զարնէր, տժգոյն կ'երեւէր, տխուր քան բարկացոտ դէմք մը ունէր, մօրուքը ահարկու էր եւ գոյնը ողջ եղած ատենուան պէս արծաթի ճերմկութիւն ունէր, չէր պատասխաներ երբ խօսք կ'ուղղէին, անգամ մը կարծուեցաւ թէ գլուխը վեր

կ՚առնէր, եւ շարժում մը կ՚ընէր խօսելու նպատակով, բայց այդ րոպէին առտուան աքլորը կանչելով, ցնցումով հեռացած ու աներեւոյթ եղած էր տեսութենէ:

Երիտասարդ իշխանը ապշահար կ՚ըլլար այս օտարոտի պատմութենէն եւ շատ վայելուչ եւ իրականին համաձայն կը գտնէր չհաւատալու համար, ուստի կ՚եզրակացնէր թէ տեսնուածը հօրը ուրուականն է ու կը վճռէր նոյն գիշերը հսկել զինուորներուն հետ, որպէսզի առիթ մը ունենար տեսնելու զայն: Համլէթ կը խորհէր թէ այդպիսի երեւոյթ մը զուր տեղը չէր գար եւ հաղորդելիք բան մը ունէր. թէպէտ ուրուականը լուռ եղած էր մինչեւ այն ատեն, բայց պիտի խօսէր իրեն: Իշխանը անհամբերութեամբ սպասեց գիշերուան եւ երբ մութը կոխեց, պահակաբեմին վրայ դիրք բռնեց Հօրաթիօի եւ պահակ Մարսիլլոսի հետ. երեւոյթը այս տեղ էր որ կուգար շրջելու: Գիշերը ցուրտ եւ օդը անսովոր կերպով խիստ ըլլալով, Համլէթ, Հօրաթիօ ու միւս ընկերը խօսք բացին օդին նկատմամբ, բայց խօսակցութիւնը յանկարծ կ՚ընդհատէր Հօրաթիօ եւ կը ծանուցանէր ուրուականին գալուստը:

Հօրը ոգիին տեսքը յանկարծական զարմանքի ու երկիւղի մատնեց Համլէթը որ նախ հրեշտակներէն ու երկնքի ծառաներէն պաշտպանութիւն կը հայցէր, որովհետեւ չէր գիտեր թէ եկողը բարի՞ ոգի մը մըն էր թէ չար, բարութեա՞ն համար կուգար թէ չարութեան, սակայն Համլէթ աստիճանաբար աւելի քաջութիւն ստացաւ: Իրեն կը թուէր թէ հայրը խղճալիօրէն իր վրայ կը նայէր եւ կարծես կը բաղձար խօսիլ հետը. հայրը որչա՛փ կը նմանէր իր կենդանութեան պատկերին. Համլէթ չէր կրնար չխօսիլ ուրուականին հետ ու կանչեց. «Համլէ՛թ,

թագաւո՛ր, հա՛յր», կ՚աղաչէր որ ըսէր թէ ինչո՛ւ գերեզմանը թողած կուգար նորէն այցելելու երկիրն ու լուսնկայ լոյսը։ Կը խնդրէր գիտնալ թէ կա՞ր ընելիք բան մը, որպէսզի ոգին խաղաղութիւնստանար։

Ուրուականը հրամայեց Համլէթի իրեն հետեւիլ աւելի հեռաւոր տեղ մը ուր կարենային առանձին մնալ, բայց Հորաթիօ եւ Մարսելլոս կ՚ուզէին որ իշխանը հրաժարէր ուրուականին հետեւելէ, որովհետեւ կը վախնային թէ կրնար չար ոգի մը ըլլալ որ փորձէր մօտակայ ծովը տանիլ կամ ահարկու վիհի մը գագաթը՝ ուր նողկալի կերպարանք մը առնելով իշխանը զրկէր բանականութենէ։ Անոնց խորհուրդներն ու աղաչանքները չկրցան փոխել Համլէթի որոշումը, ան հոգ չէր ըներ իր կեանքը, որպէսզի վախնար, գալով իր հոգիին, ուրուականը ի՞նչ կրնար ընել, քանի որ հոգին ըստ ինքեան անմահ է։ Այսպէս Համլէթ առիւծի պէս համարձակութիւն ստացաւ եւ ճողոպրելով իր բարեկամներէն որոնք ամէն բան կ՚ընէին զայն բռնելու համար, հետեւեցաւ դէպի հոն ուր կ՚առաջնորդէր ուրուականը։

Երբ առանձին մնացին, ուրուականը խզեց լռութիւնը եւ ըսաւ թէ Համլէթի հօրը ոգին է ինքը եւ անգթօրէն սպաննուած է։ Ուրուականը սկսաւ պատմել սպանութեան եղանակը զոր գործած էր հարազատ եղբայրը՝ Գլոտիոս, Համլէթի հօրեղբայրը։ Թագաւորը արդէն շատ կասկածներ ունէր թէ Գլոտիոս կ՚ուզէր իր թագին ու անկողնին յաջորդել։ Երբ ինքը՝ թագաւոր Համլէթ՝ սովորութեան համաձայն կը քնանար կէս օրէ ետք պարտէզին մէջ, դաւաճան եղբայրը սպրդած էր եւ թունաւոր բանգի (henbane) հիւթը թափած էր ականջներուն մէջ։

Այս Թոյնը այնչափ ազդեցիկ է որ սնդիկի պէս արագ շրջան կ'ընէ մարմնի երակներէն ներս, կը թանձրացնէ արիւնը եւ կեղեւանման բորոտութիւն մը առաջ կը բերէ մորթին վրայ: Ահա այսպէս քնանալու միջոցին եղբօր մը ձեռքով կորուած էր իսկոյն իր Թագէն, Թագուհիէն ու կեանքէն: Ուրուականը երդում ընել կուտար Համլէթի որ եթէ երբեք կը սիրէր իր Թանկագին հայրը, պէտք էր վրէժխնդիր ըլլար այս նենգաւոր սպանութենէն. ան կ'ողբար մօրը անկումը մինչեւ այն աստիճան որ անհաւատարիմ գտնուած էր ու յետոյ ամուսնացած էր զինքը սպաննողին հետ: Ուրուականը կը զգուշացնէր Համլէթը վրէժի գործին մէջ եւ խորհուրդ կուտար գիտցածին պէս վարուիլ չարասէր հօրեղբօրը դէմ, բայց բնաւ չբռնանալ մօրը անձին, այլ Թողուլ զայն երկնքի դատաստանին ու խղճի խայթերուն եւ փուշերուն:

Համլէթ խոստացաւ պահել ուրուականին բոլոր հրահանգները եւ կերպարանքը անյայտացաւ:

Երբ Համլէթ առանձին մնաց, հանդիսաւոր որոշում մը տուաւ: Այն բոլորը որ ունէր յիշողութեան մէջ, այն ամէնը որ սորված էր գրքերէ եւ զննութիւններէ պէտք էր մոռնալ բոլորապէս եւ ուղեղին մէջ մէկ բան կենդանի մնար — ուրուականին պատմած յիշատակը եւ պատուէրները: Համլէթ ունեցած խօսակցութեան մանրամասները միայն իր սիրելի բարեկամ Հորաթիօին պատմեց ու պատուիրեց անոր ու Մարսելոսի որ այդ գիշերուան դէպքի մասին ամենախիստ գաղտնապահութիւն ունենան:

Համլէթ որ տկար ու ահաբեկ եղած էր նախապէս, ուրուականին երեւելէն սարսափ զգաց եւ միտքն ու բանականութիւնը ազդուեցան: Միաժամանակ վախնալով որ այս արդիւնքը կրնար զննու-

թեան առարկայ ըլլալ եւ հօրեղբայրը կասկածի մղէր ու զգոյշ պահէր իրեն դէմ, օտարոտի որոշում մը տուաւ, որպէսզի բնաւ չկասկածուէր թէ հօրը մահուան գաղտնիքը ամբողջովին գիտէ: Համլէթ իրական ու ճշմարիտ խենթութիւն կը կեղծէր, խորհելով թէ նուազ կասկածի առարկայ պիտի դառնար, երբ հօրեղբայրը հաւատար որ անկարող է ոեւէ լուրջ ծրագիր հետապնդելու, այսպէս իր մտքի իսկական խռովքը լաւագոյն կերպով պիտի ծածկըւէր կեղծ յիմարութեան դիմակին տակ:

Այդ ատենէն սկսեալ Համլէթ որոշ վայրագութիւն եւ տարօրինակութիւն կեղծեց իր երեւոյթին, խօսքին եւ ընթացքին մէջ եւ այնպէ՛ս լաւ կատարեց իր դերը որ թէ՛ թագաւորը եւ թէ թագուհին խաբուեցան: Անոնք չէին խորհեր թէ հօրը մահը բաւարար պատճառ մըն էր մտային խանգարում առաջ բերելու, որովհետեւ անտեղեակ էին ուրուականի երեւումէն, եւ կ'եզրակացնէին որ հիւանդութեան պատճառը սիրահարութիւն էր, իսկ այդ սիրոյ առարկան կը կարծէին գտած ըլլալ:

Համլէթ սրտի անձկութեան մէջ իյնալէ առաջ, ջերմօրէն սիրած էր Օֆելիա անուն գեղանի օրիորդ մը որ դուստրն էր թագաւորին պետական գործերու գլխաւոր խորհրդական Փօլոնիոսի: Այս օրիորդին նամակներ ու մատանիներ ղրկած էր, սիրոյ առաջարկներ ըրած եւ պատուաւորապէս անոր սէրը թախանձած էր, իսկ Օֆելիա հաւատացած էր անոր ուխտերուն եւ թախանձանքներուն: Համլէթի տրտմութիւնը պատճառ մըն էր որ լքուէր Օֆելիան որուն հանդէպ խենթութիւն կեղծելու գաղափարը յղանալէն սկսեալ անազնուութեամբ եւ կոշտութեամբ կը վարուէր, բայց օրիորդը փոխանակ կեղծութեամբ մեղադրելու, ինքզինքը կը համոզէր թէ

Համլէթ իր մտքի հիւանդութեան հետեւանքով անփափկանկատ կ'ըլլար : Օֆելիա կը բաղդատէր Համլէթի խոր թախիծով վատթարացած ազնուամիտ ու ընտիր կարողութիւնները քաղցր կոչնակներու հետ որոնք իրենք իրենց կրնան ամենաընտիր նուագը հնչեցնել, սակայն երբ կ'աններդաշնակուին կամ կոշտօրէն կը ձեռնուին, միայն բիրտ ու անհաճոյ ձայն մը կը հանեն :

Համլէթի ձեռնարկած խռովայոյզ գործը, սիրաբանութեան գրօսալի վիճակին հետ չէր յարմարեր, ո'չ ալ սիրոյ հեղգ զգացումը կրնար ընկերանալ վրէժխնդրութեան հետ, բայց իշխանը անկարող էր իրմէ հեռու վանել Օֆելիայի հանդէպ փափուկ մտածումները : Այսպէս երբ օր մը կ'անդրադառնար ազնիւ օրիորդին հանդէպ իր վարուելակերպի բըրտութեան վրայ, սկսաւ նամակ մը գրել անոր լի բուռն սիրով ու շռայլ բառերով, ինչպէս յարմար էր իր ենթադրեալ խենթութեան : Սակայն չէր մոռնար խանդաղատանքի մեղմ հպումներ խառնել իր տողերուն մէջ, ցոյց տալու համար պատուական Օֆելիայի թէ խորունկ սէր մը տակաւին կը հանգչէր իր սրտին յատակը : Համլէթ իր նամակին մէջ կը հրաւիրէր Օֆելիան կասկածիլ որ աստղերը կրակէ էին, կասկածիլ՝ որ արեւը կը շարժէր, կասկածիլ՝ որ ճշմարտութիւնը սուտ ըլլար, բայց երբեք չկասկածիլ թէ կը սիրէր զայն : Այսպիսի շռայլ պարբերութիւններ կը լեցնէին նամակը : Օֆելիա հլութեամբ իր հօրը ցոյց տուաւ այս նամակը եւ ծերունին պարտաւոր զգաց թագաւորին ու թագուհիին հաղորդելու որոնք այնուհետեւ կ'ենթադրէին թէ Համլէթի խենթութեան իսկական պատճառը սիրահարութիւնն է : Թագուհին կը մաղթէր որ Օֆելիայի գեղեցիկ հըրապոյրները իսկական պատճառ ըլլային Համլէթի

բրտութեան, որովհետեւ կը յուսար թէ օրիորդին առաքինութիւնները յաջողապէս կրնային իշխանը սովորական վիճակին բերել, ի պատիւ երկուքին:

Համլէթի հիւանդութիւնը սակայն աւելի խորունկ էր քան կ'ենթադրէր թագուհին եւ այս եղանակով կարելի չէր բուժել զայն: Հօրը ուրուականը կը հալածէր տակաւին անոր երեւակայութիւնը, հօրը մահուան վրէժի սրբազան պատուէրը հանգիստ չէր տար անոր մինչեւ իրագործուէր: Յապաղումի ամէն ժամ մեղք մը կը թուէր Համլէթի եւ բռնաբարում մը հօրը հրամաններուն:

Սակայն դիւրին գործ չէր թագաւորին դէմ դաւել, երբ ան պահակներով շրջապատուած էր: Եթէ դիւրին իսկ ըլլար, Համլէթի մօրը՝ թագուհիին ներկայութիւնը խոչընդոտ մըն էր իր նպատակի ճամբուն վրայ զոր չէր կրնար անտես ընել, որովհետեւ թագուհին ընդհանրապէս թագաւորին հետ կը մնար: Ասկէ զատ, այն պարագան թէ բռնակալը իր մօրը ամուսինն էր, խղճի խայթ կը պատճառէր իրեն եւ նպատակին արժէքը կ'իջեցնէր: Մարդ արարած մը սպաննելու պարզ գործը ըստինքեան զարշելի եւ սոսկալի էր Համլէթի պէս բնականօրէն մեղմ տրամադրութիւն ունեցող մէկու մը համար: Հոգիի թախիծն ու վհատութիւնը որով կը տառապէր երկար ատենէ ի վեր, անվճռականութիւն եւ տատամսում առաջ բերած էին իշխանին մէջ որ ծայրայեղութիւններու չէր դիմեր, նոյն իսկ հակառակ իր կամքին քանի մը տարակոյսներ կ'ունենար. արդեօք տեսնուած ոգին իրա՞ւ իր հայրն էր, կամ թէ սատանան չէ՞ր կրնար ըլլալ ան, որ լսածին համաձայն, կարողութիւն ունէր ուզած ձեւն առնելու եւ կրնար հօրը կերպարանքը առնել, որպէսզի իր տկարութենէն եւ թախծութենէն օգտուելով սպա-

նութեան պէս յուսահատ գործի մը մղէր: Համլէթ վճռեց աւելի որոշ ապացոյցներ ձեռք բերել, քան վստահիլ տեսիլքի մը կամ երեւոյթի մը որ կրնար ցնորք մը ըլլալ:

Մինչ այս անվճռական մտավիճակով կը մնար, արքունիքը կուգայ՛ն քանի մը դերասաններ որոնցմէ Համլէթ նախապէս հաճոյք կը զգար, մանաւորապէս կը սիրէր լսել դերասանի մը ողբերգական ճառը որ նկարագրութիւնն էր Տրովադայի թագաւոր ծերունի Փիրամի մահուան եւ վիշտը՝ անոր թագուհիին Հեգիւպայի: Համլէթ բարի գալուստ մաղթելով իր հին բարեկամ դերասաններուն, կը յիշէր այդ արտասանութեան պատճառած հաճոյքը եւ կը խնդրէր դերասանէն որ կրկնէ զայն:

Դերասանը կատարեց Համլէթի խնդիրքը եւ կենդանի եղանակով ներկայացուց տկար ու ծերունի թագաւորին սպանութիւնը, ժողովրդին ու քաղաքին հրոյ ճարակ ըլլալը, խօլական վիշտը ալեհեր թագուհիին որ պալատին մէջ վեր վար ու բոպիկ կը թափառէր, միայն քուրջ մը գլխուն վրայ փոխանակ թագի մը, զոր կրած էր, եւ աճապարանքով խլուած ծածկոց մը միայն մէջքին՝ փոխանակ արքայական շրջազգեստի մը զոր կը կրէր սովորաբար: Այս կենդանի տեսարանը արցունքներ քամեց հանդիսականներէն որոնք իրական կարծեցին զայն, քանզի դերասանն անգամ արտասանեց ձայնաբեկ եղանակով ու իրական արցունքներ հոսեցուց:

Ներկայացումը խորհրդածութեան առիթ մը եղաւ Համլէթի որ կը մտածէր. եթէ դերասանը ինքզինքը կը յուզէր պարզ վիպական արտասանութենէ մը եւ կ'արտասուէր մէկու մը համար զոր երբեք տեսած չէր, եթէ կ'արտասուէր Հէգիւպայի համար որ դարեր առաջ մեռած էր, հապա որքան աւելի նը-

սեմ ըլլալու էր ինք որ կրքի իրական դրդապատճառ մը եւ հրահանգներ ունէր, եւ դեռ այնչա՛փ քիչ յուզուած էր այս միջոցին որ իր վրէժխնդրութիւնը գուլ ու աղօտ մոռացկոտութեան մէջ կը նիրհէր: Համլէթ տակաւին կը շարունակէր խօկալ դերասաններու եւ դերասանութեան նկատմամբ, կը խորհէր այն զօրեղ ազդեցութեան մասին որ լաւ խաղ մը կը թողու հանդիսատեսին վրայ, ու յանկարծ կը յիշէր մարդասպանի մը պարագան որ բեմին վրայ սպանութիւն մը տեսնելով այնչափ ազդուեցաւ դերասանին կարողութենէն ու պարագաներու նմանութենէն որ տեղին վրայ խոստովանեցաւ իր գործած ոճիրը: Ուստի Համլէթ որոշեց որ դերասանները իր հօրը սպանութեան նման բան մը խաղային հօրեղբօրը առջեւ եւ ինք մօտէն հսկէր անոր վրայ թողած ազդեցութիւնը ու երեւոյթներէն կարող ըլլար հետեւցնել թէ ստուգիւ ա՞ն էր սպաննողը թէ ոչ: Այս նպատակով իշխանը կը հրամայէր թատերախաղ մը պատրաստել որուն ներկայացման կը հրաւիրէր թագաւորն ու թագուհին:

Թատերախաղին պատմութիւնը Վիէննայի մէջ դուքսի մը վրայ կատարուած սպանութիւնն էր: Դուքսին անունը Կոնզակօ էր, կնոջը՝ Պափթիսթա: Խաղը ցոյց կուտար թէ ոմն Լիւսիանոս, դուքսին մերձաւոր ազգականներէն մին, պարտէզին մէջ կը թունաւորէր դուքսը՝ անոր կալուածները ձեռք ձըգելու համար եւ մարդասպանը քիչ ատեն ետք Կոնզակօի կնոջ սիրոյն կը տիրանար:

Խաղին ներկայացման ներկայ էր թագաւորը, իր թագուհիին եւ պալատականներուն հետ, բայց չէր կռահեր ծուղակը: Իսկ Համլէթ ուշադրութեամբ նստած էր թագաւորին մօտ դիտելու համար անոր շարժումները: Խաղը կը սկսէր Կոնզակօի ու իր կնոջ

միջեւ խօսակցութեամբ մը որով կինը սիրոյ բողոքներ կ՚ընէր ու կ՚ըսէր թէ երբեք պիտի չվերամուսնանար, եթէ Կոնզակօէն ետք ապրէր, ու կը փափաքէր անիծուիլ եթէ երբեք երկրորդ ամուսին մը առնէր, մանաւանդ կ՚աւելցնէր որ միայն չարասիրտ կիները կրկին կ՚ամուսնանային որոնք կը սպաննէին իրենց առաջին էրիկները: Համլէթ կը դիտէր որ այս արտայայտութեան վրայ իր թագաւոր հօրեղբայրը գոյնը կը փոխէր եւ թագուհիին հետ գէշ կացութեան մը մատնուած էր: Սակայն պատմութեան համաձայն երբ Լիւսիանոս եկաւ թունաւորել Կոնզակօն որ կը քնանար պարտէզին մէջ, զօրեղ նմանութենէն այնչափ խղճահարուեցաւ բռնակալը, որ չկրցաւ դիտել խաղին մնացեալ մասը, ու իր սենեակի լոյսերը վառել տալով յանկարծական տկարութիւն զգաց կամ ձեւացուց եւ խստիւ մեկնեցաւ թատրոնէն, ուրկէ ետքը խաղը չշարունակուեցաւ: Այժմ Համլէթ բաւական բան տեսած էր գոհացում ստանալու համար որ ուրուականին խօսքերը ճշմարիտ էին, պատրանք չէին: Իշխանը ուրախութեան մէջ էր մարդու մը պէս որ յանկարծ կասկածներ կը ճշդէ ու խիղճը կը հանդարտեցնէ, ու երդում կ՚ընէր Հորաթիօի որ ուրուականին խօսքերը այլեւս շատ թանկ կը գնահատէր: Համլէթ վրէժի միջոցներու մասին որոշում տալէ առաջ, հաստատապէս տեղեկացաւ թէ հայրը սպաննողը իր հօրեղբայրն էր, այս պատճառով ալ իր թագուհի մայրը զինքը կը կանչէր մասնաւոր խորհրդակցութեան մը:

Թագաւորին փափաքովն էր որ թագուհին կը կանչէր Համլէթը, որպէսզի յայտնէր անոր իրենց երկուքին դժգոհութիւնը, սակայն թագաւորը կամենալով գիտնալ այս բոլոր անցուդարձերը եւ խորհելով որ թագուհին իր տղուն խօսքերը կողմնապա-

հութեամբ պիտի հաղորդէր իրեն, հրամայեց իր պետական խորհրդական ծերունի Փօլոնիուսի կանգնիլ Թագուհիին ներքնասենեակի վարագոյրներուն ետեւ, ուրկէ առաց տեսնուելու պիտի լսէր խօսակցութիւնը: Այս հնարքը յատկապէս յարմարցուած էր Փօլոնիուսի հակումներուն, որովհետեւ պետական քաղաքականութեան եւ ծուռ սկզբունքներու մէջ մեծցած ըլլալով, ան հաճոյք կը զգար իրերուն ծանօթանալու անուղղակի եւ խորամանկ եղանակով մը:

Համլէթ երբ մօրը ներկայացաւ, այս վերջինը սկսաւ պախարակել զինքը ամենախիստ կերպով իր գործերուն եւ ընթացքին համար, ըսաւ որ մեծ վիրաւորանք հասցուցած էր իր հօրը, այսինքն Թագաւորին, իր հօրեղբօրը որուն հետ ամուսնացած էր եւ հետեւաբար Համլէթի հայրը կը նկատուէր: Համլէթ սաստկապէս բարկացաւ որ իր մայրը սիրելի ու պատուելի հայր անունը կուտար իրական թշուառականի մը որ իր ճշմարիտ հօրը սպաննողն իսկ էր եւ սուր կերպով պատասխանեց.

«Մա՛յր, դուք շատ յանցապարտ գտնուած էք հօրս հանդէպ»:

Թագուհին նկատեց որ դատարկ պատասխան մըն էր ատիկա:

«Պատասխանս հարցումին արժանավայել է», ըսաւ Համլէթ:

Թագուհին նկատեց անոր թէ կը մոռնա՞ր որու հետ կը խօսէր:

«Աւա՜ղ, պատասխանեց Համլէթ, կ՚ուզէի մոռնալ, դուք Թագուհին էք, ձեր էրկանը եղբօրը կինը, եւ դուք մայրս էք. կը բաղձայի որ չըլլայիք այն որ էք»:

«Քանի որ այդպէս է, վրայ բերաւ Թագուհին,

եւ այդքան քիչ յարգանք ցոյց կուտաք ինծի, ես ալ կը կանչեմ մարդիկ որոնք կրնան խօսիլ ձեզի հետ»: Եւ պիտի երթար կանչել Թագաւորը կամ Փոլոնիուսը, բայց Համլէթ թոյլ չէր տար եւ կ'ուզէր մինակ մնալ հետը, որպէսզի իր խօսքերով զգաստութեան բերէր: Համլէթ մօրը դաստակէն կը բռնէր ու սեղմելով կը նստեցնէր: Թագուհին անոր լուրջ եղանակէն վախցած եւ մտատանջ որ յիմարութեամբ չարիք մը հասցնէր իրեն— կ'աղաղակէր: Այս միջոցին վարագոյրներուն ետեւէ ձայն մը լսուեցաւ, «օգնութի՛ւն, օգնութի՛ւն, Թագուհին վտանգի տակ է»: Համլէթ ինկապէս խորհելով որ պահուողը Թագաւորն է, քաշեց իր սուրը եւ ձայնին եկած տեղը սկսաւ զարնել, մինչեւ որ ձայնը դադրեցաւ եւ հետեւցուց թէ մարդը մեռած է: Սակայն երբ առաջ քաշեց մարմինը, տեսաւ որ Թագաւորը չէր, այլ Փոլոնիուսը, ծերունի, կամահաճոյ խորհրդականը որ իբր լրտես կանգնած էր վարագոյրին ետեւ:

«Մե՛ղք, ըսաւ Թագուհին, ի՛նչ յանդուգն ու արիւնահեղ գործ կատարեցիք»:

«Արիւնահեղ գործ մը, մայրի՛կ, բայց ձեր գործէն նուազ եպերելի, դուք որ Թագաւոր մը սպաննեցիք եւ անոր եղբօրը հետ ամուսնացաք»:

Համլէթ շատ առաջ գացած էր եւ չէր կրնար թողուլ որ մեկնի մայրը: Հիմա կրնար պարզօրէն խօսիլ անոր եւ կը շարունակէր. Թէպէտ ծնողաց թերութիւնները փափկութեամբ պէտք է նկատի առնուին իրենց զաւակներէն, սակայն մեծ ոճիրներու պարագային զաւակը թոյլատրելի է խստութեամբ խօսիլ նոյն իսկ իր մօրը, մանաւանդ երբ խստութեան նպատակը զայն մոլար ճամբաներէ հեռացնելն է: Առաքինի իշխանը յուզիչ բառերով ցոյց տուաւ Թագուհիին իր ատելի յանցանքը որով մոռ-

ցած էր մեռնող Թագաւորը, հայրը, եւ կարճ ատենի մէջ ամուսնացած էր անոր եղբօրը եւ համբաւաւոր սպաննիչին հետ: Ասանկ արարք մը, մանաւանդ իր առաջին էրկանը տուած ուխտէն յետոյ, բաւական էր բոլոր կիներու խոստումները եւ ամէն առաքինութիւն կեղծիք նկատելու, ամուսնական պայմանադրութիւնները խաղամոլներու երդումէն նուազ արժէքաւոր սեպելու, եւ կրօնքը խեղկատակութիւն եւ պարզ բառերու ձեւ մը ընդունելու:

Համլէթ կ'ըսէր թէ մայրը այնպիսի գործ մը ըրած է որ երկինքն անգամ կը կարմրէր, իսկ երկիրը հիւանդացած էր որովհետեւ անոր նման արարած մը կ'ապրեցնէր: Իշխանը երկու նկար ցոյց կուտար մօրը, մէկը հանգուցեալ Թագաւորին, անոր առաջին էրկան, եւ կը հրաւիրէր դիտել տարբերութիւնը. ի՜նչ շնորհ կար թառած հօրը յօնքերուն վրայ եւ ինչպէ՜ս աստուածային կ'երեւէր ան. Ապողոնի գանգուրները, Արամազդի ճակատը, Արէսի աչքերը, եւ կեցուածք մը նման Հերմէսի որ նոր իջած է երկնահամբոյր բլուրի մը վրան: Այս մարդը, կ'ըսէր Համլէթ, մօրը ամուսինը եղած էր: Յետոյ ցոյց կուտար այն մարդը զոր ընտրած էր անոր տեղ, ինչպէ՜ս խորշակահար եւ բորբոսած կ'երեւէր ան, որովհետեւ այդպէս ժանտահարած էր իր օգտակար եղբայրը: Թագուհին սաստիկ կ'ամչնար որ Համլէթի խօսքերէն հարկադրուած կը գդար իր աչքերը դարձնելու իր ներքին աշխարհը եւ տեսնելու հոն հոգիի սեւութիւնն ու այլանդակութիւնը: Համլէթ կը հարցնէր մօրը թէ ի՞նչպէս կրնար ապրիլ այդ մարդուն հետ, կին ըլլալ անոր, որ սպաննած էր իր առաջին էրիկը եւ ձեռք ձգած էր թագը գողի մը խարդախ միջոցներով: Խօսակցութեան այս միջոցին հօրը ուրուականը երեւցաւ ճիշտ ողջ ատենուան ու

վերջերս տեսնուած ձեւով ու սենեակէն ներս մտաւ։ Համլէթ մեծ սարսափով հարցուց անոր թէ ի՛նչ կ՚ուզէր, բայց ուրուականը յայտնեց որ կուգար յիշեցնելու վրէժի խոստումը, զոր Համլէթ մոռցած կ՚երեւէր։ Ուրուականը կը հրաւիրէր իշխանը խօսիլ մօրը հետ որ վշտի ու սարսափի մէջ այլապէս պիտի մեռնէր։ Ուրուականը կ՚անհետանար եւ ոչ ոք, բայց միայն Համլէթ կը տեսնէր զայն. մայրը ահաբեկած էր իշխանին խօսակցութենէն որ տեղի կ՚ունենար ոչինչի հետ եւ Համլէթ չէր կրնար ցոյց տալ անոր ուրուականին դիրքն ու կերպարանքը, ասկէ կը հետեւցնէր թագուհին թէ եղածը Համլէթի անկարգ խելքին հետեւանքն էր։ Սակայն իշխանը դիտել կուտար մօրը որ իր յանցանքներն էին որ հօրը հոգին երկրի վրայ բերած էին եւ ոչ թէ իր խենթութիւնը։ Ցոյց կուտար իր զարկերակը մօրը եւ կ՚ըսէր թէ բարեխառնութեամբ կը զարնէ ան ու յիմարի մը զարկին չի նմանիր։ Կը խնդրէր արցունքներով որ մայրը խոստովանէր Աստուծոյ առջեւ եղելութիւնը, ու ապագային խուսափէր թագաւորին ընկերակցութենէն, այլեւս չըլլալ անոր կին, ու երբ մօր մը արժանի ընթացք ունենար եւ յարգէր հօրը յիշատակը, ինք պիտի օրհնութիւն խնդրէր անկէ իբր զաւակ։

Մայրը խոստացաւ կատարել այս հրահանգները եւ խորհրդակցութիւնը վերջացաւ։

Համլէթ հիմա ժամանակ ունէր ստուգելու իր սպաննած մարդը։ Դժբախտաբար տեսաւ որ Փոլոնիուսն էր այն, օրիորդ Օփելիայի հայրը, այն Օփելիայի զոր կը սիրէր կաթոգին եւ մէկ կողմ քաշելով անշունչ մարմինը, արտասուեց։

Փոլոնիուսի դժբախտ մահը պատրուակ մը եղաւ թագաւորին, որպէսզի Համլէթը դուրս ղրկէր

երկրէն: Ան կ'ուզէր մահուան ենթարկել զայն, իբրեւ վտանգաւոր մէկը, բայց կը վախնար ժողովրդէն որմէ կը սիրուէր Համլէթ, իսկ Թագուհին, հակառակ իր բոլոր թերութիւններուն, կաթոգին կը սիրէր իր զաւակը, իշխանը: Ուստի խորամանկ Թագաւորը պատրուակելով որ Փոլոնիուսի մահուան պատժէն ազատելու համար պէտք էր իշխանին ապահովութիւնը մտածել, Անգլիա գացող նաւու մը վրայ դնել տուաւ զայն, երկու պալատականներու հսկողութեան տակ, որոնց հետ նամակներ կը ղրկէր Անգլիական արքունիքին: Այս ժամանակ Անգլիա հարկատու էր Տանիմարքայի եւ Թագաւորը մասնաւոր պատճառներով կը պահանջէր Անգլիական արքունիքէն Համլէթի մահապատիժը՝ իսկոյն որ Անգլիա ոտք կոխէր ան: Համլէթ դաւաճանութենէ կասկածելով, գիշեր ատեն գաղտնի ձեռք անցուց նամակները եւ ճարտարօրէն սրբելով իր անունը, երկու պալատականներուն անունը դրաւ որոնց հսկողութեան յանձնուած էր ինք, որպէսզի անոնք կրէին մահապատիժը: Յետոյ կնքելով նամակները, տեղը դրաւ:

Շատ չանցաւ, ծովահէնները նաւուն վրայ կը յարձակէին ու ծովային կռիւ մը կը սկսէր, որու ընթացքին Համլէթ ուզելով ցոյց տալ իր քաջութիւնը, սուրը ձեռքին՝ միայնակ կը ցատկէր թշնամի նաւուն վրայ, մինչդեռ իր նաւը վատօրէն կը հեռանար: Երկու պալատականները իր բախտին ձգելով իշխանը, կը փութային Անգլիա հասնիլ ուր պիտի կրէին իրենց արժանի պատիժը նամակներուն մէջ Համլէթի կատարած փոփոխութեանց համաձայն:

Ծովահէնները իրենց ձեռքին մէջ ունենալով իշխանը, ազնիւ թշնամիներու վերաբերում ունեցան եւ գիտնալով իրենց գերիին ինքնութիւնը, կը յու-

*սային թէ իշխանը ի վարձատրութիւն իրենց օգտակար պիտի ըլլար արքունիքին մէջ, հետեւաբար Տանիմարքայի ամենամօտ նաւահանգիստին ծովեզերքը դուրս հանեցին զայն: Այդ տեղէն Համլէթ գրեց թագաւորին, հաղորդելով հայրենիք վերադառնալու իր տարօրինակ բախտը, ինչպէս նաեւ յաջորդ օրը անոր ներկայանալու իր մտադրութիւնը:*

*Երբ իշխանը տուն վերադարձաւ, առաջին բանը որ պարզուեցաւ իր աչքերուն առջեւ, տխուր տեսարան մըն էր:*

*Երբեմնի սիրելի, մատաղատի ու գեղեցիկ Օֆելիայի յուղարկաւորութիւնն էր այն:*

*Իր հօրը մահէն յետոյ Օֆելիայի խելքը ցնդըւած էր, որովհետեւ հայրը բռնի սպաննուած էր իշխանի մը ձեռքով զոր կը սիրէր: Փափկասուն Օֆելիա այնչափ ազդուած էր այս դէպքէն որ կարճ ատենի մէջ կատարելապէս կը յիմարանար, աստանդական կը թափառէր ու ծաղիկներ կը բաժնէր պալատական տիկիններուն. կ'ըսէր որ այդ ծաղիկները իր հօրը թաղման համար էին, սիրոյ ու մահուան երգեր կ'երգէր, երբեմն նոյն իսկ այնպիսի բաներ որոնք իմաստ չունէին բնաւ:*

*Քաղաքին մօտերը ուռիի ծառ մը կար որ առուակի մը եզերքը կ'աճէր հակած դիրքով ու տերեւները հոսանքին մէջ կը ցոլանային: Օր մը Օֆելիա այս առուակին եզերքը եկաւ, երբ հսկողութիւն չէր ըլլար վրան, ծաղկեպսակներ շինած՝ մարգարտածաղիկներէ, եղինճէ, ծաղիկներէ ու սէզերէ:Օֆիլիա կ'ուզէր ուռիի ճիւղերէն կախել իր ծաղկեպսակները ու երբ ծառէն կը մագլցէր, ճիւղ մը կոտրեցաւ ու սիրուն օրիորդը, ծաղկեպսակն ու բոլոր հաւաքածները միասին ջրին մէջ գահավիժեցան: Հոն Օֆելիայի զգեստները պահ մը ջրին երեսը կը պահէին*

*զինքը, մինչ ինք հին երգերու կտորներ կ՚երգէր, առանց գիտնալու թէ վտանգի մէջ էր, կամ իբրեւ թէ ջրի արարած մը եղած ըլլար, սակայն շատ չէր անցներ հանդերձները թրջած ու ծանրացած վար կը քաշէին զինքը իր քաղցրահնչիւն երգերէն եւ տըղմաթաթաւ ու եղկելի մահուան մը գիրկը կը նետէին:*

*Այս սիրուն ու մատաղատի օրիորդին յուղարկաւորութիւնն էր որ կը կատարէր իր եղբայրը Լիրթէս· Թագաւորը, Թագուհին եւ ամբողջ արքունիքը ներկայ էին երբ Համլէթ կը հասնէր: Ան չէր գիտեր թէ ինչ կը նշանակէր այս հաւաքումը ու կը կանգնէր մէկ կողմ, արարողութիւնը չխանգարելու համար: Կը տեսնէր գերեզմանին վրայ սփռուած ծաղիկներ, ինչպէս սովորութիւն է մատաղատի աղջիկներու թաղմանը, եւ Թագուհին ինքը նետելով ծաղիկներ կ՚ըսէր·*

*«Քաղցրութիւնները քաղցրին կը նուիրուին· կը խորհէի քու հարսնութեան անկողինդ գեղեցկացընել, անուշ աղջիկ, փոխանակ գերեզմանդ զարդարելու: Դու իմ Համլէթիս կինը պիտի ըլլայիր»:*

*Համլէթ կը լսէր Օֆելիայի եղբօր խօսքերը որով ան կը բաղձար որ գերեզմանէն մանիշակներ բուսնէին, կը տեսնէր վիշտէն բոլորովին յիմարացած եղբօր ոստումը օրիորդին փոսին մէջ, եւ անոր խնդիրքը ներկաներէն, որպէսզի աշխարհի լեռները վրան դիզէին քրոջը հետ թաղուելու համար: Հիմա Համլէթի սէրը կը վերադառնար, որովհետեւ չէր կրնար հանդուրժել որ եղբայր մը այդչափ վշտահար ըլլար, մինչդեռ ինք Օֆելիան քառասուն հազար եղբայրներէ աւելի կը սիրէր: Իշխանը այսպէս ինքնամփոփուելով կը նետէր ինքզինքը գերեզմանին մէջ ուր կը գտնուէր Լիրթէս, եւ նոյնչափ խելացը-*

նոր եղանակով։ Լիրթէս ճանչնալով Համլէթը որ հօրն ու քրոջը մահուան պատճառ եղած էր, կը բռնէր անոր կոկորդէն իբր թշնամիի մը, մինչեւ որ ներկաները կը բաժնէին։ Ցուղարկաւորութենէն ետք Համլէթ ներողութիւն կը խնդրէր իր փութկոտ քայլին համար որ կարծես գերեզմանին մէջ Լիրթէսի դէմ խրոխտալու երեւոյթ մը առած էր, սակայն իրականին մէջ անկարող եղած էր հանդուրժել որ ո եւէ մէկը զինքը գերազանցէր Օֆելիայի մահուան հանդէպ վշտակցութիւններով։ Հետեւաբար երկու ազնուական երիտասարդները առայժմ կը հաշտուէին։

Սակայն Թագաւորը Լիրթէսի վշտէն ու զայրոյթէն օգտուելով կը ջանար Համլէթը մեռցնել։ Լիրթէս Թագաւորին խորհրդով խաղաղութեան ու հաշտութեան պիտակին տակ, Համլէթը սրախաղութեան փորձի մը կը հրաւիրէր, իսկ Համլէթ ընդունելով հրաւէրը, մրցման օր մը կը նշանակուէր։

Այս խաղին ներկայ էր ամբողջ արքունիքը, եւ Լիրթէս՝ Թագաւորին հրահանգով թունաւոր զէնք մը կը պատրաստէր։ Բոլոր պալատականները մեծ գրաւներ կը դնէին այս խաղին վրայ, քանզի Համլէթ եւ Լիրթէս ծանօթ էին իբր գերազանց սուսերամարտներ։ Համլէթ, առանց կասկածելու Լիրթէսի դաւաճանութեան, կ՚առնէր խաղասուրերէն մէկը եւ կ՚ընտրէր հատ մը, ու չէր զններ Լիրթէսի զէնքը որ փոխանակ խաղասուրի կամ բութ սուրի մը ինչպէս սրախաղութեան մէջ պայման է, կը գործածէր սրածայր եւ թունաւոր հատ մը։

Լիրթէս նախ կը խաղար Համլէթի հետ, ու թոյլ կուտար որ ան քանի մը առաւելութիւններ շահի, զորս կեղծաւոր Թագաւորը կը խոշորցնէր, կը գովաբանէր չափէ աւելի, կը խմէր Համլէթի յաջողու-

թեանը ու մեծ գրաւներ կը դնէր խաղին ելքին վըրայ: Սակայն քանի մը դադարէ ետք, Լիրթէս տաքնալով, իր թունաւոր զէնքով, սաստիկ ու մահացու հարուած մը կուտար Համլէթի: Բորբոքած բայց առանց գիտնալու ամբողջ դաւաճանութիւնը, Համլէթ ծեծկըւուքին մէջ կը փոխանակէր իր անմեղ զէնքը Լիրթէսի մահամեր զէնքին հետ եւ այդ սուրովն իսկ կը հատուցանէր Լիրթէսի հարուածը, արդարօրէն բռնելով զայն իր դաւաճանութեան մէջ: Այս րոպէին թագուհին կը ճչար թէ թունաւորուած է: Անիկա առանց զգուշացուելու խմած էր բաժակէ մը զոր թագաւորը Համլէթի համար պատրաստած էր, որպէսզի սրամարտութեան մէջ երբ տաքնար ու ըմպելի ուզէր այս բաժակը հրամցուէր անոր: Այս ըմպելիին մէջ դաւաճան թագաւորը մահաբեր թոյն մը խառնած էր, որպէսզի երբ Լիրթէս վրիպէր, ըմպելին ապահովէր Համլէթի մահը, բայց մոռցեր էր թագուհին զգուշացնել ամանէն որմէ խմելով կը մեռնէր ան անմիջապէս, եւ վերջին շունչով կը բացագանչէր իր թունաւորուիլը:

Համլէթ դաւաճանութենէ մը կասկածելով դըռները գոցել կուտար դաւը գտնելու համար, իսկ Լիրթէս կը յայտնէր թէ հեռուն փնտռելու պէտք չի կար, որովհետեւ ինքն էր մատնիչը: Համլէթի տըւած հարուածին վէրքը արդէն մահ կը բերէր Լիրթէսի որ կը խոստովանէր գործած դաւաճանութիւնը որուն ինք զոհ գացած էր, կը յայտնէր Համլէթի սուրին թունաւոր ծայրը ու կ'ըսէր թէ Համլէթ կէս ժամ հազիւ կրնար ապրիլ, որովհետեւ ոչ մէկ դեղ կրնար բուժել զայն: Լիրթէս Համլէթի ներողամըտութիւնը կը հայցէր ու թագաւորը ամբաստանելով դաւին իբր հեղինակ, կ'աւանդէր հոգին:

Երբ Համլէթ տեսաւ իր վախճանը որ կը մօտե-

նար եւ ստուգելով որ տակաւին Թոյն կը մնար սուրին ծայրը, յանկարծ դարձաւ դէպի իր կեղծ հօրեղբայրը եւ սուրին ծայրը անոր սիրտը մխեց: Այսպէս կատարեց այն խոստումը զոր ըրած էր իր հօրը ոգիին որուն մահուան հատուցումը կը տրուէր մարդասպանին:

Համլէթ զգալով որ իր շունչը կը խուսափէր ու կեանքը կը մեկնէր իրմէ, դարձաւ իր սիրելի բարեկամին Հօրաթիօի՝ որ ականատես եղած էր այս ճակատագրական ողբերգութեան եւ հոգեւարքի շունչով մը խնդրեց անկէ որ ապրէր՝ աշխարհի պատմելու համար իր պատմութիւնը, որովհետեւ Հօրաթիօ շարժում մը կ՚ընէր ինքնասպան ըլլալու իշխանին մահուան հետ: Հօրաթիօ կը խոստանար հաւատարիմ պատմութիւն ՞ը ընել իբրեւ մէկը որ տեղեակ է բոլոր պարագաներուն:

Այսպէս գոհացում գտնելով, Համլէթի սիրտը դադրեցաւ բաբախելէ, իսկ Հօրաթիօ եւ հանդիսականները արցունքներով երկնքի հրեշտակներու պահպանութեանը կը յանձնէին այս ազնիւ իշխանի հոգին, որովհետեւ Համլէթ սիրազեղ ու ազնիւ իշխան մըն էր որ մեծապէս կը սիրուէր իր տոհմիկ ու իշխանավայել յատկութիւններուն համար, եւ եթէ ապրած ըլլար, անկասկած Տանիմարքայի ամենէն երեւելի ու կատարեալ Թագաւորը պիտի ըլլար:

# ՁՄԵՌՈՒԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

*Լէոնթէս՝ Սիկիլիոյ թագաւորը եւ իր թագուհին՝ գեղանի ու առաքինի Հերմիոն ամենամեծ ներդաշնակութեամբ կ'ապրէին: Լէոնթէս այնչափ երջանիկ էր իր պատուական տիկնոջ սիրով որ չգոհացուած փափաք չունէր, միայն երբեմն կը բաղձար վերստին տեսնել իր հին ընկերակից ու դասընկեր Պոհեմիայի Փոլիքսենէս թագաւորը եւ անոր ներկայացնել թագուհին: Լէոնթէս ու Փոլիքսենէս իրենց մանկութենէն միատեղ մեծցած էին, սակայն իրենց հայրերու մահը կը հարկադրէր զիրենք բաժնուիլ իրարմէ եւ թագաւորել երկու տարբեր երկիրներու վրայ, այս պատճառով երկար տարիներ իրարու չէին հանդիպած, թէպէտ նուէրներ, նամակներ եւ բարեկամական դեսպանութիւններ յաճախ կը փոխանակէին:*

*Կրկնակ հրաւէրներէ ետք, վերջապէս Փոլիքսենէս Պոհեմիայէն Սիկիլիական արքունիքը կուգար իր բարեկամ Լէոնթէսի այցելութիւն տալու:*

*Այս այցելութիւնը նախ Լէոնթէսի հաճոյք կը պատճառէր, որովհետեւ առիթը կը ներկայանար իր երիտասարդութեան բարեկամը յանձնարարելու թագուհիին մասնաւոր ուշադրութեան; եւ այս սիրելի բարեկամին ու հին ընկերոջ ներկայութիւնը կարծես կ'ամբողջացնէր իր երջանկութիւնը: Երկուքը հին տարիներու մասին կը խօսէին, իրենց դպրոցական օրերն ու պատանեկան չարաճճիութիւնները կը յիշէին եւ կը պատմէին Հերմիոնի՝ որ այս խօսակցութեանց կը մասնակցէր միշտ զուարթօրէն:*

Երկար բնակութենէ մը ետք, երբ Փոլիքսենէս կը պատրաստուէր մեկնիլ, Հերմիոն իր ամուսնին փափաքովը իր թախանձանքները կը միացնէր Լէոնթէսի աղերսներուն, որպէսզի Փոլիքսենէս երկարէր իր այցելութիւնը:

Եւ ահա բարեսիրտ թագուհիին տառապանքը կը սկսէր այս րոպէէն, որովհետեւ Փոլիքսենէս մերժելով Լէոնթէսի խնդրանքը՝ տեղի կուտար Հերմիոնի մեղմ ու համոզկեր խօսքերուն եւ քանի մը շաբաթ եւս կը յետաձգէր իր մեկնումը: Լէոնթէս անձնուած նախանձէ կը բռնուէր, հակառակ անոր որ երկար ատեն ճանչցած էր Փոլիքսենէսի անարատ վարքն ու պատուախնդիր սկզբունքները, ինչպէս եւ թագուհիին գերազանց տրամադրութիւնները: Փոլիքսենէսի հանդէպ Հերմիոնի ցոյց տուած ամէն ուշադրութիւն թէպէտ ամուսնին մասնաւոր փափաքովը կ'ըլլար եւ պարզապէս հաճոյակատար ըլլալու համար էր, սակայն այսու հանդերձ կ'աւելցընէր դժբախտ թագաւորին հոգեկան հիւանդութիւնը: Լէոնթէս որ սիրալիր ու հաւատարիմ բարեկամ մը եղած էր եւ ամուսիններէն լաւագոյնն ու ամենաանձնուէրը, յանկարծ վայրենի ու տմարդի հրէշի մը կը փոխուէր: Լէոնթէս կը կանչէր իր արքունիքի իշխաններէն Գամիլլօն, կը պատմէր անոր՝ սնուցած կասկածները եւ կը հրամայէր թունաւորել Փոլիքսենէսը:

Գամիլլօ բարի մարդ մըն էր եւ լաւ գիտէր որ Լէոնթէսի նախանձը իրականին մէջ ամենափոքր հիմ մը անգամ չունէր, ուստի իմացնելով Փոլիքսենէսի իր թագաւոր տիրոջ հրամանները, կը համաձայնէր հետը փախչիլ Սիկիլեան տիրապետութենէն դուրս: Այսպէս Փոլիքսենէս, Գամիլլօի օգնութեամբ ապահով կը հասնէր Պոհեմիոյ իր սեփական թագա-

ւորութիւնը ուր այդ ատենէն սկսեալ Գամիլլօ կը բնակէր Թագաւորին պալատը եւ Փոլիքսենէսի գըլխաւոր բարեկամն ու սիրականը կը դառնար։

Փոլիքսենէսի փախուստը ա՛լ աւելի կը կատղեցընէր նախանձոտ Լէոնթէսը որ Թագուհիին յարկաբաժինը կ'երթար եւ Հերմիոնը բանտ կը ղրկէր այն միջոցին երբ անիկա նստած իր փոքր զաւկին Մամիլլոսի հետ, անոր լաւագոյն պատմութիւններէն մին կը լսէր զուարճանալու համար։

Մամիլլոս թէեւ մատաղատի տղայ մը, բայց կաթոգին կը սիրէր իր մայրը եւ այժմ որ կը տեսնէր անոր անպատուութիւնը եւ իրմէ բաժնելով բանտ նետուիլը, խորապէս վշտահար կ'ըլլար. մեղմիւ կը սկսէր թօշնիլ ու ծիւրիլ, կորսնցնելով ախորժակն ու քունը, ու այն աստիճանին կը հասնէր որ կարծես վշտէն պիտի սպաննուէր։

Երբ Թագուհին բանտ կը ղրկէր, Թագաւորը կը հրամայէր Սիկիլիացի երկու իշխաններու՝ Գլէոմենէսի եւ Տիոնի որպէսզի երթան Դելփիս եւ Ապողոնի տաճարին պատգամը հարցնեն եթէ Թագուհին իրաւ տակաւին կը սիրէր զինքը։

Հերմիոն քիչ ժամանակ բանտ մնալէն ետք, աղջիկ մը ծնաւ որուն տեսքէն կը մխիթարուէր ու կ'ըսէր. «Իմ դժբախտ փոքրիկ բանտարկեալս, քեզի չափ ես ալ անմեղ եմ»։

Հերմիոն լաւ բարեկամուհի մը ունէր, ազնուասիրտ Փոլինան որ Սիկիլեան ազնուական Անթիկոնոսի կինն էր։ Այս տիկինը լսելով իր արքայական տիրուհիին ծննդաբերութիւնը, գնաց Հերմիոնի բանտը եւ Հերմիոնի սպասարկող օրիորդ Էմիլիայի ըսաւ. «Կ'աղաչեմ Էմիլիա, ըսէ բարի Թագուհիին որ եթէ նորին վեհափառութիւնը կը համարձակի ինծի

վստահիլ իր երեխան, հօրը՝ Թագաւորին կը տանիմ որ զուցէ ողոքի անմեղ մանկան տեսքէն»:

«Արժանայարգ տիկին, պատասխանեց Էմիլիա, Թագուհիին պիտի տեղեկացնեմ ձեր ազնիւ առաջարկը. այսօր իսկ ան կը փափաքէր բարեկամ մը ունենալ որ համարձակէր Թագաւորին ներկայացնել մանուկը»:

«Եւ ըսէ իրեն, աւելցուց Փօլինա, որ Լէոնթէսի առջեւ քաջութեամբ պիտի պաշտպանեմ զինքը»:

«Ցաւէտ օրհնեալ ըլլաք շնորհալի Թագուհիին հանդէպ ձեր բարութեան համար», ըսաւ Էմիլիա:

Եւ Հերմիոնի գնաց որ հրճուանքով Փօլինայի յանձնեց իր մանուկը, որովհետեւ երկիւղ ունէր թէ ոչ ոք պիտի յանդգնէր զայն ներկայացնելու իր հօրը:

Փօլինա առաւ նորածին մանուկը եւ հակառակ ամուսնին որ կը ջանար արգիլել զինքը՝ վախնալով Թագաւորին զայրոյթէն, յաջողեցաւ ընդունուիլ Թագաւորին ներկայութեանը: Փօլինա հօրը ոտքերու առջեւ դրաւ մանուկը եւ վսեմ ճառ մը խօսեցաւ ի պաշտպանութիւն Հերմիոնի, խիստ բառերով մեղադրեց Թագաւորը անմարդկայնութեամբ եւ աղերսեց որ գթայ անմեղ կնոջն ու երեխային վրայ: Սակայն Փօլինայի եռանդուն ջատագովութիւնը կը ծանրացնէր միայն Լէոնթէսի դժգոհութիւնը որ կը հրամայէր անոր էրկանը հեռացնել զայն իր ներկայութենէն:

Բարեսիրտ Փօլինան սխալած էր, որովհետեւ իր մեկնելէն քիչ ետք անգութ հայրը կը հրամայէր Անթիկոնոսի՝ Փօլինայի էրկան՝ մանուկը ծովուն բացերը տանիլ եւ լքել ամայի եզերք մը՝ փճանալու:

Անթիկոնոս Գամիլլօի պէս չէր եւ չափազանց կը հնազանդէր Լէոնթէսի հրամաններուն, որովհետեւ

*անմիջապէս կ'առնէր մանուկը, նաւ կը տանէր եւ կը բացուէր ծովուն մէջ, հանդիպած առաջին ամայի եզերքը զայն լքելու մտադրութեամբ:*

*Թագաւորը այնպէս սաստիկ նախապաշարուած էր Հերմիոնի դէմ որ չէր կրնար սպասել Կլէոմենէսի ու Տիոնի վերադարձին՝ զորս ղրկած էր Դելփիս՝ Ապողոնի պատգամը հարցնելու համար, այլ՝ Թագուհիին ապաքինումէն առաջ ու այն ժամանակ երբ կ'ողբար ան իր մանկան կորուստը, պալատի իշխաններէն եւ ազնուականներէն բաղկացած հանրային դատավարութեան առջեւ կը հանէր զայն:*

*Երբ երկրին բոլոր իշխանները, դատաւորներն ու ազնուականութիւնը մէկտեղ հաւաքուած կը դատէին Հերմիոնը որ կեցած էր իր հպատակներուն առջեւ իբր կալանաւոր անոնց դատավճիռն ընդունելու, Կլէոմենէս եւ Տիոն ժողովէն ներս մտան եւ կնքուած պատգամախօսութիւնը Թագաւորին ներկայացուցին: Լէոնթէս հրամայեց խախտել կնիքը եւ բարձրաձայն կարդալ այն խօսքերը որոնք այսպէս գրուած էին.—*

«Հերմիոն անմեղ է, Փոլիքսենէս՝ անպարտ, Կամիլլօ՝ հաւատարիմ հպատակ մը, Լէոնթէս՝ նախանձոտ բռնակալ մը, եւ թագաւորը անժառանգ պիտի ապրի, եթէ չգտնէ այն որ կորսուած է»:

*Թագաւորը չուզեց հաւատալ պատգամի խօսքերուն, առարկելով թէ Թագուհիին բարեկամներուն կողմէ հնարուած խարդախութիւն մըն է ու կը փափաքէր որ դատաւորը շարունակէր դատավարութիւնը, սակայն մինչ Լէոնթէս կը խօսէր, մարդ մը կը մտնէր ներս եւ կ'ըսէր թէ իշխան Մամիլլոս լսելով որ իր մայրը մահուան պիտի դատապարտուէր, վշտահար ու ամօթահար կը մեռնէր յանկարծակի:*

Հերմիոն լսելով իր սիրական տղուն մահը որ տեղի կ'ունենար մօրը դժբախտութեան համար, կը նուաղէր, իսկ Լէոնթէս սրտապատառ կը սկսէր խղճահարիլ դժբախտ Թագուհիին վրայ ու Փոլինայի եւ միւս սպասարկող տիկիններուն կը հրամայէր որ մէկդի տանին զայն ու միջոցներ գործածեն սթափեցնելու:

Փոլինա շուտով կը վերադառնար սակայն հաղորդելու Թագաւորին Հերմիոնի մահը:

Երբ Լէոնթէս իմացաւ Թագուհիին մահուան գոյժը, զղջաց անոր հանդէպ ցոյց տուած անգթութեան համար, եւ հասկնալով որ իր յոռի ընթացքը բզկտած էր Հերմիոնի սիրտը, հաւատաց անոր անմեղութեանը, ինչպէս նաև ճշմարտութեանը պատգամի խօսքերուն որ կ'ըսէր. «Եթէ չգտնէ այն որ կորսուած է»: Լէոնթէս այս խօսքէն կը հետեւցնէր թէ ակնարկը իր աղջկան մասին էր ու անժառանգ պիտի մնար, քանի որ Մամիլլոս երիտասարդ իշխանը մեռած էր եւ հիմա պատրաստ էր իր թագաւորութիւնը տալ, վերագտնելու համար իր կորսուած դուստրը: Լէոնթէս խղճի խայթէ բռնուեցաւ եւ երկար տարիներ սգալի մտածումներով եւ զղջի վշտերով կ'անցընէր:

Անթկոնոսի նաւը որ բաց ծովը կը տանէր մանուկ իշխանուհին, փոթորիկէ քշուելով հասաւ Պոհիմիոյ ծովեզերքը, ճիշդ Փոլիքսենէսի թագաւորութեան երկիրը, եւ փոքրիկ երեխան հոս ձգուեցաւ:

Անթիկոնոս երբեք չկրցաւ Սիկիլիա վերադառնալ, որովհետեւ երբ դէպի նաւ կուգար, արջ մը անտառէն դուրս ելաւ եւ պատառ պատառ ըրաւ զայն. այսպէս Անթիկոնոս Լէոնթէսի չար հրաման-

ներուն հնազանդելուն համար գտաւ արդար պատիժ մը։

Լքուած մանուկը թանկագին հանդերձներով եւ գոհարեղէններով զարդարուած էր, որովհետեւ Հերմիոն չքած էր զայն երբ Լէոնթէսի կը դրկէր, իսկ Անթիկոնոս անոր վերարկուին վրայ գնդասեղով թուղթ մը փակցուցած էր փերտիթա (կորուսեալ) մակագրութեամբ, նաեւ բառեր որոնք մթին կերպով կը ծանօթացնէին անոր բարձր ծագումն ու անտեղիտալի բախտը։

Մարդասէր հովիւ մը գտաւ այս լքուած հէք երեխան, փոքրիկ Փերտիթան, ու տունը՝ իր կնոջը տարաւ որ գգուանքով կը դիեցնէր զայն, սակայն հովիւին աղքատութիւնը փորձութիւն մըն էր որպէսզի պահէր գտած հարուստ աւարը եւ մեկնէր այդ շրջանէն ուրիշ տեղ մը՝ հարստութեան աղբիւրը ծածկելու համար։ Հովիւը Փերտիթայի գոհարեղէններու մէկ մասով ոչխարներու հօտեր գնեց եւ հարուստ հովիւ մը դարձաւ։ Ան մեծցուց Փերտիթան իբր իր աղջիկը որ կը կարծէր թէ հովիւի մը դուստր ըլլալէ զատ ուրիշ բան չէր։

Փոքրիկ Փերտիթան մեծնալով սիրուն աղջիկ մը եղաւ ու թէեւ հովիւի մը դուստրէն աւելի լաւ կրթութիւն չունէր, սակայն իր արքայական մօրմէն ժառանգած բնական շնորհքները այնքան փայլեցան իր անուս մտքին մէջ որ մէկը պիտի չհասկընար իր վարքէն թէ հօրը արքունիքը մեծցած չէր։

Պոհեմիոյ Փոլիքսենէս թագաւորը մէկ հատիկ զաւակ մը ունէր Ֆլորիզէլ անուն։ Այս երիտասարդ իշխանը օր մը երբ կը որսար հովիւին տան մօտերը, տեսաւ ծերուկին կարծեցեալ դուստրը՝ Փերտիթան, ու իսկոյն սիրահարեցաւ անոր գեղեցկութենէն, համեստութենէն եւ թագուհիանման ընթաց-

քէն: Եւ յետոյ Տորիքլէս անունով ու ազնուական պարոնի ծպտումին տակ չուտով ծերունի Հովիւին տեւական այցելուն դարձաւ:

Ֆլորիզէլի յաճախակի բացակայութիւնը արքունիքէն՝ տաղնապի մատնեցին Փոլիքսենէսը որ տղուն վրայ հսկիչներ նշանակելով տեղեկացաւ թէ իշխանը սիրահարած էր Հովիւին սիրուն աղջկանը:

Այն ատեն Փոլիքսենէս կանչեց Լէոնթէսի կատաղութենէն կեանքը ազատող հաւատարիմ Գամիլլոն եւ փափաք յայտնեց որ իրեն ընկերանայ դէպի Փերտիթայի Հովիւ հօրը տունը:

Փոլիքսենէս ու Գամիլլօ, երկուքն ալ ծպտուած, հասան ծերունի Հովիւին բնակարանը ուր ոչխար խուզելու խնճոյք մը կը տօնուէր· Նորեկները թէեւ անծանօթ էին, սակայն ոչխար-խուզի տօնին ամէն հիւր ընդունելի ըլլալով, անոնք ալ հրաւիրուեցան ներս եւ մասնակցեցան ընդհանուր խրախճանութեան:

Ուրախութիւնն ու զուարթութիւնը կ՚իշխէին հոն, սեղաններ կը տարածուէին եւ մեծ պատրաստութիւններ կը տեսնուէին գեղջուկ խնճոյքին համար, քանի մը պատանիներ ու պատանուհիներ կը պարէին տան առջեւ մարգագետնին վրայ, մինչ երիտասարդներէն ուրիշներ դրան առջեւ չրջուն մանրավաճառէ մը ժապաւէն, ձեռնոց ու նման խաղալիկներ կը գնէին:

Մինչդեռ այս ժիր տեսարանը կը շարունակուէր, Ֆլորիզէլ ու Փերտիթա կը նստէին հանդարտօրէն հանգիստ անկիւն մը ու կարծես իրարու խօսակցութենէ աւելի գոհ կը մնային քան զբօսներու մասնակցութենէն եւ անմիտ զուարճութիւններէն:

Թագաւորը այնպէս ծպտուած էր որ իր տղան կարելի չէր որ ճանչնար զինքը, այս պատճառով

յաջողեցաւ բաւական մօտենալ անոնց լսելու համար խօսակցութիւնը: Պարզ այլ վայելուչ եղանակը որով կը խօսակցէր Փերտիթա Ֆլորիզէլի հետ, քիչ չզարմացուցին Փոլիքսենէսը որ ըսաւ Գամիլլօի. «Ասիկա ամենասիրուն խոնարհածին պատանուհին է զոր երբեք տեսած եմ, ամէն ինչ որ կ՚ընէ կամ կ՚ըսէ իրմէ աւելի մեծ բան մը կ՚երեւի եւ չափազանց ազնուական քան այս տեղը»:

«Արդարեւ մածունի եւ սերի թագուհին իսկ է», պատասխանեց Գամիլլօ:

«Կ՚աղաչեմ, իմ ազնիւ բարեկամս, ըսաւ թագաւորը ծերունի հովիւին, ի՛նչ աղուոր գեղջուկ սիրահար է այդ պարոնը որ կը խօսակցի ձեր դստեր հետ»:

«Տորիգլէս կը կոչեն զայն, կը սիրէ աղջիկս, եւ ճիշդը խօսելով դժուար է ըսել թէ երկուքէն ո՛ր մէկը միւսը աւելի կը սիրէ: Եթէ երիտասարդ Տորիգլէս ամուսնանայ աղջկանս հետ, երազածը պիտի կրնայ ձեռք բերել». այս վերջին խօսքով հովիւը Փերտիթայի մնացորդ դոհարեղէնները կ՚ակնարկէր: Հովիւը այս թանկարժէք քարերու մէկ մասովը հօտեր գնած էր, իսկ մնացորդը պահած էր աղջկան ամուսնութեան իբր բաժին:

Փոլիքսենէս յետոյ խօսքը իր զաւկին ուղղելով կ՚ըսէր. «Երիտասա՛րդ, ձեր սիրտը ի՞նչ բանով լեցուած է որ հեռու կը պահէ ձեզ խրախճանութեանց մասնակցելէ: Երբ երիտասարդ էի ես, սիրուհիս նուէրներով կը բեռնաւորէի, սակայն դուք թողուցիք որ շրջուն փերեզակը մեկնի եւ ձեր սիրուհիին խաղալիկներ չգնեցիք»:

Երիտասարդ իշխանը որ բնաւ մտքէն չէր անցըներ թէ իր թագաւոր հօրը հետ է որ կը խօսի, պատասխանեց. «Ծերունի պարոն, օրիորդը ատանկ

չնչին բաներ չի գնահատեր, այն պարգեւները զորս Փերտիթա կ՚ակնկալէ ինձմէ, կղպուած են սրտիս մէջ»։ Ցետոյ Փերտիթայի դառնալով ըսաւ. «Ո՛հ, լսէ զիս, Փերտիթա, ծերունի պարոնին առջեւ որ երբեմնի սիրահար եղած է. Թող ան լսէ իմ խոստովանութիւնս»։ Ֆլորիզէլ կը խնդրէր ծերունի օտարականէն որ վկայ ըլլայ ամուսնական հանդիսաւոր խոստումի մը եւ կ՚ըսէր անոր. «Ձենէ կ՚աղաչեմ որ արձանագրէք մեր պայմանագիրը»։

«Արձանագրեցէք ձեր ամուսնալուծումը, երիտասարդ պարոն», ըսաւ Թագաւորը յայտնելով ինքզինքը ու մեղադրեց իր տղան որ հասարակ ծագում ունեցող աղջկան մը հետ կը համարձակէր կապուիլ։ Փերտիթան որակեց «հովուի մանուկ, ոչխարի կեռ», եւ ուրիշ անպատկառ անուններով, սպառնաց աղջիկն ու իր ծեր հովիւ հայրը անգութ մահուան ենթարկել եթէ պատճառ ըլլային որ տղան դարձեալ հոն դար։

Թագաւորը մեծ բարկութեամբ ձգեց բնակարանը եւ հրամայեց Գամիլլոյին հետեւիլ իրեն իշխան Ֆլորիզէլի հետ։

Երբ Թագաւորը մեկնած էր, Փերտիթա՝ որուն արքայական բնութիւնը արթնցած էր Փոլիքսենէսի մեղադրանքներէն, ըսաւ. «Թէպէտ մենք ամէնքս աւրուեցանք, սակայն ես չվախցայ շատ, եւ մէկ երկու անգամ խօսիլ ուզեցի ու պիտի ըսէի որ այն արեւը որ կը ցաթի իր պալատին վրայ, երեսը չի պահեր մեր խրճիթէն, այլ երկուքին վրայ կը նայի հաւասարապէս», ու տխրագին շարունակեց, «հիմա սթափած եմ այս երազէն, աւելի հեռուն չեմ ուզեր տանիլ զայն, Թողէք զիս պարոն, կ՚ուզեմ երթալ կթել իմ մաքիներս ու արտասուել»։

Բարեսիրտ Գամիլլօ յուզուեցաւ Փերտիթայի

ընթացքէն ու վայելչութենէն ու կը նկատէր որ երիտասարդ իշխանը խորապէս կը սիրէր իր սիրուհին որպէսզի կարենար իր Թագաւոր հօրը հրամանովը լքել զայն, եւ միջոց մը կը խորհէր բարեկամացընելու սիրահարները, միեւնոյն ատեն կը մտադրէր հաճելի ծրագիր մը գործադրութեան դնել:

Գամիլլօ երկար ատենէ ի վեր գիտէր որ Սիկիլիոյ Լէոնթէս Թագաւորը ճշմարիտ ապաշխարող մը եղած էր, եւ Գամիլլօ թէպէտ հիմա Փոլիքսենէս Թագաւորին սիրական բարեկամն էր, սակայն չէր կրնար իր փափաքը զսպել տեսնելու համար անգամ մը եւս իր արքայական տէրն ու ծննդավայր հայրենիքը: Հետեւաբար Ֆլորիզէլի եւ Փերտիթայի կ՚առաջարկէր որպէսզի իրեն ընկերանային դէպի Սիկիլեան արքունիքը ուր Լէոնթէսի ստանձնել պիտի տար զիրենք պաշտպանելու գործը, մինչեւ որ միջնորդութեամբ Փոլիքսենէսէն ներողութիւն ձեռք բերէին, ինչպէս նաեւ հաւանութիւն իրենց ամուսնութեան:

Երկու սիրահարները այս առաջարկին ուրախութեամբ համաձայնեցան, եւ Գամիլլօ որ փախուստի վերաբերեալ ամէն բան կը վարէր, թոյլ տուաւ որ ծեր հովիւը իրենց հետ գայ:

Հովիւը միասին առաւ Փերտիթայի գոհարեղէններու մնացորդը, մանկական հագուստները եւ այն թուղթը որ գնդասեղով մը փակցուած էր ծածկոցին:

Բարեյաջող ճամբորդութենէ մը ետք, Ֆլորիզէլ եւ Փերտիթա, Գամիլլօ եւ ծեր հովիւը ապահով հասան Լէոնթէսի արքունիքը ուր Լէոնթէս դեռ կ՚ողբար իր մեռած Հերմիոնն ու կորուսած մանուկը: Սիկիլիոյ Թագաւորը մեծ բարութեամբ ընդունեց Գամիլլօն ու բարեկամական ընդունելութիւն

րրաւ Ֆլորիզէլ իշխանին: Սակայն Փերտիթա՝ զոր Ֆլորիզէլ իբր իր իշխանուհին կը ներկայացնէր՝ Լէոնթէսի ամբողջ ուշադրութիւնը կը կլանէր, որովհետեւ անոր ու հանգուցեալ Հերմիոն թագուհիին միջեւ նմանութիւն մը տեսնելով՝ վշտերը նորէն կը պոռթկային ու կ'ըսէր թէ իր դուստրը այսպիսի սիրուն արարած մը պիտի ըլլար, եթէ անգթօրէն զայն փճացուցած չըլլար:

Լէոնթէս ըսաւ Ֆլորիզէլի. «Կորսնցուցի ձեր քաջարի հօրը թէ՛ ընկերութիւնը եւ թէ՛ բարեկամութիւնը, իսկ հիմա կեանքէս աւելի կը փափաքիմ տեսնել զինքը անգամ մը եւս»:

Երբ ծերունի հովիւը լսեց թէ թագաւորը մեծ ուշադրութիւն կ'ընէր Փերտիթայի եւ մանկութեան ատեն լքուած աղջիկ մը կորսնցուցած էր, սկսաւ Փերտիթան գտնելու ժամանակը բաղդատել աղջկան տեսքին, գոհարեղէններուն եւ բարձր ծննդեան նըշաններուն հետ ու այս բոլորէն յետոյ անկարելի էր իրեն չեզրակացնել թէ Փերտիթան եւ թագաւորին կորսնցուցած դուստրը միեւնոյնն էին:

Ֆլորիզէլ եւ Փերտիթա, Գամիլլօ եւ հաւատարիմ Փօլինա ներկայ էին երբ ծերունի հովիւը պատմեց թագաւորին այն պարագաները ուր գտած էր մանուկը եւ տեսած էր Անթիկոնոսի մահը արջի մը յարձակման հետեւանքով: Հովիւը ցոյց տուաւ թանկարժէք ծածկոցը որով փաթաթուած էր մանուկը եւ զոր Փօլինա կը յիշէր, դուրս հանեց գոհար մը զոր նոյնպէս յիշեց Փօլինա թէ Հերմիոն Փերտիթայի վիզը կապած էր, ցոյց տուաւ թուղթը եւ Փօլինա դարձեալ ճանչցաւ իր ամուսնին գիրը: Կարելի չէր այլեւս կասկածիլ որ Փերտիթա Լէոնթէսի սեփական դուստրն էր: Պէտք էր դիտել վսեմ յուզումները Փօլինայի որ մէկ կողմէ կը տխրէր իր

ամուսնին մահուանը վրայ եւ միւս կողմէ կ՚ուրախանար որ պատգամը կը կատարուէր, այսինքն Թագաւորին ժառանգը, կորսուած դուստրը կը գտնուէր։ Երբ Լէոնթէս լսեց թէ Փերտիթա իր դուստրն էր, մեծ վիշտ կը զգար որ Հերմիոն չէր ապրեր որ իր աղջիկը տեսնէր, եւ երկար ատեն անկարող կ՚ըլլար խօսք մը արտասանելու, միայն «ո՜հ, մայրդ, մա՜յրդ» կ՚աղաղակէր։

Փոլինա ընդմիջեց այս բերկրաւիթ այլ վշտալի տեսարանը եւ ըսաւ Լէոնթէսի թէ արձան մը ունէր, նոր կերտուած իտալացի հաղուադիւտ վարպետ Ժիւլիօ Ռոմանօյի կողմէ, որ կատարեալ նմանութիւն ունէր Թագուհիին, եւ եթէ նորին վեհափառութիւնը կը բարեհաճէր իր տունը երթալ եւ անոր վրայ նայիլ, գրեթէ յօժարակամ պիտի կարծէր թէ արձանը նոյնինքն Հերմիոնն է։ Այսպէս բոլորը Փոլինայի տունը գացին, որովհետեւ Թագաւորը կը բաղձար տեսնել իր Հերմիոնի նմանութիւնը, իսկ Փերտիթա կը փափաքէր տեսնել իր մայրը զոր երբեք չէր տեսած։

Երբ Փոլինա քաշեց այս անուանի արձանը ծածկող վարագոյրը, այնչափ կատարեալ էր անոր նմանութիւնը Հերմիոնի հետ, որ Թագաւորին վիշտը ամբողջովին նորոգուեցաւ, եւ երկար ատեն ուժ չունեցաւ խօսելու կամ շարժելու։

«Վեհապետս, ըսաւ Փոլինա, կը սիրեմ ձեր լռութիւնը, որ ձեր զարմանքը աւելի քան ցոյց կուտայ։ Այս արձանը արդեօք ձեր Թագուհիին չի՞ նմանիր»։

Թագաւորը վերջապէս կը պատասխանէր. «Ո՜հ, այսպէս կը կենար Հերմիոն, այս վեհափառութեամբն իսկ, երբ առաջին անգամ կը սիրաբանէի

հետը։ Եւ դեռ, Փոլինա՛, Հերմիոն այնչափ տարիքոտ չէր, ինչպէս արձանը ցոյց կուտայ»։

«Ասիկա ցոյց կուտայ, պատասխանեց Փոլինա, քանդակագործին գերազանցութիւնը որ շինած է արձանը այնպէս մը որուն նմանէր Հերմիոն եթէ ապրած ըլլար մինչեւ հիմա։ Սակայն թոյլ տուէք որ քաշեմ վարագոյրը, վեհապետ, գուցէ կարծէք թէ իսկապէս կը շարժի ան»։

«Մի՛ քաշէք վարագոյրը, կ՚ուզէի մեռած ըլլալ, տեսէ՛ք Գամիլլօ, պիտի չուզէի՞նք խորհել թէ կը շնչէ ան, աչքը շարժում մը ունի կարծես իր մէջ»։

«Պէտք է քաշեմ վարագոյրը, վեհապետ, ըսաւ դարձեալ Փոլինա, այնպէս յափշտակուած էք որ կ՚ուզէք դուք ձեզ համոզել թէ արձանը կ՚ապրի»։

«Ո՜հ, քաղցր Փոլինա, ըսաւ Լէոնթէս, թող որ քսան տարի ասանկ մեծարում մը ունենամ։ Դեռ կը թուի ինծի թէ շունչ մը կուգայ անկէ, ո՞ր ընտիր գչիրը կրնար երբեք շունչ կերտել, թո՛ղ մարդիկ չծաղրեն զիս, որովհետեւ պիտի համբուրեմ զայն»։

«Բարի իշխանս, ըսաւ Փոլինա, անոր շրթունքին կարմրութիւնը թաց է եւ դուք պիտի արատաւորէք ձերինը իւղաներկով։ Ծածկե՞մ վարագոյրը»։

«Ո՛չ, քսան տարի ոչ», ըսաւ Լէոնթէս։

Փերտիթա որ այս ամբողջ ժամանակամիջոցին ծունկ չոքած էր, լուռ հիացումով կը դիտէր իր մօր արձանը եւ այժմ կը խօսէր. «Ես այդքան տարի կրնայի մնալ հոս, նայելու համար մօրս վրայ»։

«Կամ դիմացէք այս յափշտակութեան, շարունակեց Փոլինա, եւ թողէք որ ծածկեմ վարագոյրը, կամ դուք ձեզ պատրաստեցէք աւելի մեծ շփոթութեան մը։ Արդարեւ ես կրնամ շարժել արձանը ու այս պատուանդանէն վար իջեցնելով ձեր ձեռքը

բռնել տալ, սակայն պիտի խորհիք այն ժամանակ որ չար ուժերու օգնութիւնն ունիմ, բայց այդ տեսակ մտածման դէմ կը բողոքեմ»:

«Ինչ որ կրնաք ընել տալ անոր, ըսաւ ապշահար Թագաւորը, գոհութեամբ պիտի դիտեմ, եւ ինչ որ կրնաք խօսիլ տալ անոր, գոհ սրտով պիտի լսեմ, որովհետեւ նոյնքան դիւրին է խօսիլ տալ արձանին որքան շարժել»:

Այս յայտարարութեան վրայ, Փօլինա պատուիրեց նուագել մեղմ ու հանդիսաւոր կտոր մը զոր այս նպատակին համար պատրաստած էր եւ իապշութիւն բոլոր դիտողներուն ահա արձանը վար կ'իջնէր պատուանդանէն եւ իր թեւերը Լէոնթէսի ճիտը կը փաթաթէր: Արձանը կը սկսէր խօսիլ, օրհնութեան աղօթքներ կ'արտասանէր իր ամուսնին եւ իր զաւկին՝ նոր գտնուած Փերտիթային:

Զարմանալի չէ որ այս արձանը Լէոնթէսի ճիտը կախուած կը մնար ու կը շարունակէր օրհնել իր ամուսինն ու զաւակը, զարմանալի չէ՛, որովհետեւ արձանը նոյնինքն Հերմիոնն էր, իրական, կենդանի թագուհին:

Փօլինա ստութեամբ հաղորդած էր Հերմիոնի մահը, խորհելով որ ատիկա միակ միջոցն էր պահպանելու իր արքայական տիրուհիին կեանքը եւ Հերմիոն այնուհետեւ բարեսիրտ Փօլինայի հետ ապրած էր, երբեք չուզելով որ Լէոնթէս գիտնար իր ողջութիւնը, որովհետեւ թէպէտ ներած էր Լէոնթէսի կողմէ իրեն եղած վիրաւորանքները՝ սակայն չէր կրնար ներել մանուկ աղջկան դէմ գործած անգթութիւնը:

Կորսուած աղջիկը գտնուած էր հիմա, մեռած թագուհին կեանքի վերադարձած եւ վշտաբեկ Լէ-

ոնթէս հազիւ կրնար տանիլ իր սեփական երջանկութեան չափազանցութիւնը ։

Ամէն կողմէ միմիայն շնորհաւորութիւններ եւ խանդակաթ ճառեր կը լսուէին ։ Հրճուալիր ծնողները մերթ շնորհակալութիւն կը յայտնէին Ֆիլոզէլ իշխանին որ սիրած էր իրենց խոնարհածին երեւցող աղջիկը, մերթ կ՚օրհնէին ծերունի հովիւը որ պահպանած էր իրենց զաւակը ։

Մեծ էր Գամիլլոյի եւ Փօլինայի ցնծութիւնը, որովհետեւ ապրեցան ու տեսան իրենց հաւատարիմ ծառայութեանց բարեբաստիկ վախճանը ։

Եւ իբրեւ թէ բան մը պակաս ըլլար այս տարօրինակ եւ անակնկալ ուրախութիւնը կատարեալ ընելու, ահա ինքը Փոլիքսէնէս թագաւորը պալատ կը մտնէր ։

Փոլիքսենէս երբ կը կորսնցնէր իր զաւակն ու Գամիլլոն, կը հասկնար թէ Գամիլլօ երկար ատենէ ի վեր կ՚ըղձար Սիկիլիա վերադառնալ, ուստի կը խորհէր փախստականները հոն գտնել ։ Հետեւաբար ամենայն արագութեամբ անոնց հետեւելով, զուգադիպութեամբ ճիշդ այնպիսի պահու մը կը հասնէր որ Լէոնթէսի կեանքին ամենաերջանիկ րոպէն էր ։

Փոլիքսենէս մասնակից եղաւ ընդհանուր ուրախութեան, ներեց իր Լէոնթէս բարեկամին որ անիրաւ նախանձ սնուցած էր իրեն դէմ եւ երկուքը անգամ մը եւս սկսան զիրար սիրել իրենց նախկին եղբայրական բարեկամութեան բոլոր ջերմութեամբը ։ Այժմ երկիւղ չի կար որ Փոլիքսենէս ընդդիմանար իր տղուն ամուսնութեան՝ Փերտիթայի հետ ։ Օրիորդը «ոչխարի կեռ» չէր հիմա, այլ Սիկիլիոյ թագին ժառանգուհին ։

Այսպէս ահա վարձատրուեցան բազմատանջ

*Հերմիոնի համբերատար առաքինութիւնները եւ այս պատուական կինը շատ տարիներ ապրելով իր Լէոնթէսին ու Փերտիթային հետ, մայրերու եւ թագուհիներու ամենէն երջանիկն եղաւ։*

## ՎԵՆԵՏԻԿԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ

*Վենետիկի մէջ կը բնակէր Հրէայ Շայլոք անուն մէկը որ վաշխառու մը ըլլալով ահագին հարստութիւն դիզած էր: Շայլոք դրամ փոխ կուտար քրիստոնեայ վաճառականներու, շատ խստասիրտ էր եւ իր փոխ տուած դրամներուն տոկոսը այնպիսի անխղճութեամբ կը ճշդէր որ բոլոր ուղղամիտ մարդիկ կ'ատէին զինքը: Մանաւանդ վենետիկցի երիտասարդ վաճառական Անթոնիօ կը խորշէր իրմէ, եւ Շայլոք նոյնչափ կ'ատէր Անթոնիօն, որովհետեւ կարօտ մարդոց դրամ փոխ կուտար ան, առանց տոկոսի, հետեւաբար մեծ թշնամութիւն մը կը տիրէր այս երկուքին՝ ընչաքաղց Հրէային եւ առատաձեռն վաճառական Անթոնիօի միջեւ: Երբ որ Անթոնիօ Շայլոքի հանդիպէր սակարանին առջեւ, կը մեղադրէր զայն վաշխառութեան եւ անխիղճ գործառնութեանց համար, իսկ Հրէան երեւութապէս կը համբերէր, մինչ ներսէն գաղտնի վրէժխնդրութիւն կը խորհէր:*

*Անթոնիօ ամենաազնիւ մարդն էր, լաւ պայմաններու մէջ կ'ապրէր եւ մարդավարութիւն ընելու անխոնջ ոգի մը կը կրէր: Արդարեւ մէկն էր ան որուն մէջ հին հռոմէական պատուախնդրութիւնը շատ աւելի ի յայտ կուգար քան բոլոր այն ատենի ապրող իտալացիները: Մեծապէս կը սիրուէր իր քաղաքացիներէն, սակայն անոր ամենամօտիկ եւ սիրելի բարեկամը Պասանիօն էր, որ վենետիկցի ազնուական մը ըլլալով հանդերձ, փոքրիկ հայրենական ստացուածք մը միայն ժառանգած էր: Սա-*

կայն, ինչպէս կը պատահի բարձրաստիճան երիտասարդներու, Պասանիօ ալ իր դոյզն եկամուտներու համեմատութեամբ շատ ծախսոտ կեանք մը կ'անցընէր, այնպէս որ իր հարստութիւնը գրեթէ սպառած էր: Երբ որ Պասանիօ դրամի պէտք կ'ունենար, Անթոնիօ կ'օգնէր անոր, մէկ խօսքով անոնց բարեկամութիւնը այնչափ մտերմական էր որ կարծես երկուքը մէկ սիրտ ու մէկ քսակ ունէին:

Օր մը Պասանիօ Անտոնիօի կուգար եւ կ'ըսէր թէ փափաք ունէր իր հարստութիւնը վերակազմելու, եւ ասոր համար պիտի ամուսնանար հարուստ օրիորդի մը հետ զոր կը սիրէր կաթոգին եւ որուն նոր մեռնող հայրը իր ահագին կալուածներու միակ ժառանգորդ թողած էր աղջիկը: Այս օրիորդի հօրը կենդանութեան ժամանակ Պասանիօ այցելութիւն կուտար եւ խորհած էր թէ օրիորդը երբեմն իր աչքերէն անխօս հրաւէրներ կ'ուղղէր իրեն, այսինքն ըսել կ'ուզէր որ իրեն բաղձալի հետամուտ մը պիտի նկատէ զինքը: Սակայն Պասանիօ դրամ չունէր որպէսզի այս հարուստ օրիորդին սիրաբանելու վիճակի ըլլար, հետեւաբար կուգար կը թախանձէր Անթանիօէն որ ըրած շնորհներուն վրայ երեք հազար տուքաթ դրամ եւս փոխ տայ:

Այդ ատեն Անթոնիօ մօտը դրամ չունէր որպէսզի բարեկամին կարենար փոխ տալ, սակայն կ'ակընկալէր որ շուտով ապրանք բեռցած նաւեր պիտի հասնէին իրեն, ուստի կը խորհէր հարուստ փոխատու Շէյլոքի երթալ եւ սոյն նաւերու վարկով դրամ փոխ առնել:

Երկու բարեկամները միասին գացին Շայլոքի: Անթոնիօ հրէայէն խնդրեց որ երեք հազար տուքաթ փոխ դրամ տար ոեւէ տոկոսով որ Շայլոք յարմար

կը նկատէր, վճարելի ծովուն վրայ գտնուող նաւերու ապրանքներովը:

Այս առաջարկին վրայ Շայլոք մտածեց ինքն իրեն. «Եթէ անգամ մը ասոր գլխտէն բռնեմ, հին ոխերս պիտի հանեմ. ան կ'ատէ մեր հրէայ ազգը, ձրի դրամ փոխ կուտայ, վաճառականներու առջեւ զիս կը ծաղրէ, ու կ'այպանէ իմ արդարացի սակարկութիւններս զորոնք տոկոս կը կոչէ: Թո՛ղ անիծուի ցեղս, եթէ ներեմ իրեն»:

Անթոնիօ տեսնելով որ Հրէան ինքն իրեն կը խոկար եւ չէր պատասխաներ, միւս կողմէ դրամին պէտքն ունենալով, ըսաւ.

«Շայլո՛ք, կը լսէ՞ք: Կ'ուզէ՞ք դրամը փոխ տալ»:

Այս հարցումին Հրէան պատասխանեց. «Սինեօր Անթոնիօ, շատ անգամներ եւ յաճախ սակարանին մէջ զիս այպանած էք իմ դրամներուս ու վաշխերուս համար եւ ես տհաճութեամբ համբերած եմ, որովհետեւ տառապանքը մեր ցեղին նշանն է: Դուք զիս անհաւատ, մարդասպան շուն կոչեցիք, իմ հրէական հագուստներուս վրայ թքիք ու ոտքով զարկիք ինծի, իբրեւ թէ ստորին մէկը ըլլայի: Լա՛ւ, հիմա կ'երեւի որ օգնութեանս պէտք ունիք, կուգաք ինծի եւ կ'ըսէք. 'Շայլոք, փոխ դրամ տուէք ինծի', շուն մը դրամ կ'ունենա՞յ, կարելի՞ է որ ստորին արարած մը երեք հազար տուքաթ դրամ փոխ տայ, հիմա պէ՞տք է որ խոնարհիմ ու ըսեմ. 'Գեղեցիկ տէր, դուք վրաս թքիք անցեալ չորեքշաբթի, ուրիշ անգամ զիս շուն կոչեցիք, ուստի այս քաղաքավարական գործերուն համար ահա դրամ փոխ կուտամ ձեզի'»:

«Նորէն այդ բաները պիտի ըսեմ, նորէն պիտի թքնեմ վրադ, եւ ոտքով զարնեմ ալ: Եթէ այս դրա-

մը փոխ տաք, ինծի մի տաք իբր բարեկամ, այլ փոխ տուէք իբր թշնամի մը, եւ եթէ յանձնառութիւնս չյարգեմ, խստօրէն կրնաք ճշդել պատիժը», ըսաւ Անթոնիօ:

«Նայեցէ՛ք, ինչպէ՜ս կը բարկանաք, կ'ուզէի բարեկամ ըլլալ ձեզի եւ ապահովել ձեր բարեացակամութիւնը: Պիտի մոռնամ ձեր հասցուցած նախատինքները, ձեր պէտքերը պիտի հոգամ եւ դրամէս տոկոս պիտի չառնեմ», ըսաւ Հրէան:

Այս երեւութապէս ազնիւ առաջարկը շատ զարմացուց Անթոնիօն, իսկ Շայլոք տակաւին ազնուութիւն կը կեղծէր եւ կ'ուզէր Անթոնիօի բարեկամութիւնը շահիլ. կ'ըսէր թէ երեք հազար տուքաթի համար տոկոս պիտի չառնէ, միայն Անթոնիօ օրէնսդէտի մը պիտի երթար միասին եւ անոր քով իբր զուարթ զբօս՝ պայմանագրութիւն մը կնքէր՝ որու համաձայն եթէ մինչեւ որոշ օր մը դրամը չը վճարէր, փաունտ մը միս պիտի կորսնցնէր, այս միսը Շայլոք պիտի կտրէր Անտոնիօի մարմնին ոեւէ մէկ մասէն որ իրեն հաճոյ թուէր:

«Համաձայն եմ, ըսաւ Անթոնիօ, այդ մուրհակին տակ պիտի ստորագրեմ եւ պիտի ըսեմ թէ Հրէային մօտ շատ ազնուութիւն կայ»:

Պասանիօ կ'ըսէր Անթոնիօի թէ ստորագրելու չէ այդպիսի մուրհակ մը, սակայն Անթոնիօ տակաւին կը պնդէր որ պիտի ստորագրէ, որովհետեւ վճարման պայմանաժամէն առաջ իր նաւերը պիտի վերադառնային փոխ առնուած դրամէն տասնապատիկ աւելի արժէքով բեռով մը:

Շայլոք լսելով այս վիճաբանութիւնը, բացագանչեց. «Ո՜վ Հայր Աբրահամ, ի՜նչ կասկածոտ մարդեր են սա քրիստոնեաները: Իրենց խստապահանջ գործառնութիւնները կասկածիլ կուտան ու-

րիչներու մտածմանց մասին։ Կ'աղաչեմ ըսէք ինծի Պասանիօ, եթէ իր յանձնառութիւնը չյարգէ ան, ի՞նչ պիտի շահիմ ես տուգանքի ճշդումէն. ոչ ալ փառնտ մը մարդու միս, մարդէ մը կտրուած, այնչափ գնահատելի, օգտակար է, որչափ ոչխարի կամ եզան միսը։ Կը յայտնեմ որ իր շնորհները ձեռք բերելու համար ահա այս բարեկամութիւնը կը մատուցանեմ իրեն, եթէ կ'ընդունի այսպէս, լա՛ւ, եթէ ոչ՝ բարի երթաք»։

Պասանիօ չնայելով հրէային յայտարարած բարի մտադրութեանց, չէր ուզեր որ իր բարեկամը այս զգայացունց պատժի վտանգին ենթարկուէր, սակայն վերջապէս հակառակ իր խորհուրդին, Անթոնիօ կը ստորագրէր մուրհակը, իսկապէս խորհելով որ հրէային ըսածին պէս խնդիրը պարզապէս զբօս մըն էր։

Պասանիօի հետապնդած հարուստ ժառանգուհին կը բնակէր Վենետիկի մօտ, Պէլմօնթ կոչուած տեղը։ Աղջկան անունը Փորթիա էր եւ թէ՛ իր անձնական վայելչութեամբ թէ՛ մտքով բնաւ ստորադաս չէր այն Փորթիայէն որ, ինչպէս կը կարդանք, Կատոնի դուստրն էր եւ Բրուտոսի կինը։

Պասանիօ իր Անթոնիօ բարեկամէն դրամ ձեռք բերելով ճամբայ ելաւ դէպի Պէլմօնթ, շքեղ կառքով մը եւ ընկերակցութեամբ Կրաթիանօ անուն ազնուական պարոնի մը։

Իր հետամտութեան մէջ Պասանիօ յաջողեցաւ, եւ Փորթիա կարճ ատենի մէջ համաձայնեցաւ ամուսնանալ հետը։

Պասանիօ խոստովանեցաւ Փորթիայի թէ հարստութիւն չունէր եւ եթէ բանէ մը կրնար պարծիլ՝ այն ալ իր բարձր ծնունդը եւ նախահայրերու ազնուականութիւնն էր։ Փորթիա որ կը սիրէր զայն

իր արժէքաւոր յատկութիւններուն համար եւ բաւական հարստութիւն ունէր երկան մը նիւթական կարողութիւնը նկատի չառնելու, շնորհալի համեստութեամբ պատասխանեց թէ կը փափաքէր հազար անգամ աւելի սիրուն եղած ըլլար, եւ հազար անգամ աւելի հարուստ, որպէսզի Պասանիօի արժանի ըլլար։ Փորթիա անմիջապէս յետոյ սիրուն ձեւով մը ինքզինքը կը քամահրէր ու կ՚ըսէր թէ անուս, դպրոցէ զուրկ, անվարժ աղջիկ մըն է, սակայն դեռ երիտասարդ ըլլալով կրնար սորվիլ եւ պիտի ուզէր որ իր հեզահամբոյր ոգին ամէն բանի մէջ առաջնորդուէր եւ կառավարուէր Պասանիօէն։ Փորթիա կ՚աւելցնէր· «Ես ինքս, ինչ որ ես ունիմ ձեզի, եւ ձերը ինծի կը պատկանին։ Դեռ երէկ, Պասանիօ, ես տիկինն էի այս սիրուն բնակարանին, իմ անձիս թագուհին էի եւ այս ծառաներուն տիրուհին, իսկ այժմ այս տունը, այս ծառաները եւ իմ անձս ձերն են, իմ տէրս· զանոնք բոլորը կուտամ այս մատանիով»։ Եւ Փորթիա մատանի մը կը մատուցանէր Պասանիօի։

Հարուստ եւ ազնիւ Փորթիայի շնորհալի եղանակը որով համեստ միջոցներով ամուսին մը կ՚ընդունէր իրեն, երախտագիտութեան ու զարմանքի անանկ ազդեցութիւն մը թողուցին Պասանիօի վրայ որ անկարող եղաւ արտայայտել իր ուրախութիւնն ու մեծարանքը սիրելի օրիորդին որ այնքան կը պատուէր զինքը։ Պասանիօ սիրոյ եւ շնորհակալութեան հատակոտոր բառեր միայն կ՚արտասանէր եւ առնելով մատանին, կ՚ուխտէր երբեք չը բաժնուիլ անկէ։

Կրաթիանօ եւ Փորթիայի նաժիշտը՝ Ներիսա ներկայ էին իրենց տիրոջ եւ տիկնոջ խօսակցութեան՝ երբ Փորթիա շնորհալիօրէն կը խոստանար

Պասանիօի հնազարդ կինը դառնալ: Կրաթիանօ ուրախութիւն կը մաղթէր Պասանիօի եւ վեհանձն տիկնոջ ու կը խնդրէր որ թոյլտուութիւն ըլլայ իրեն միեւնոյն ատեն ամուսնանալու:

«Իմ բոլոր սրտովս, Կրաթիանօ, ըսաւ Պասանիօ, եթէ կրնաս կին մը գտնել, ինչո՞ւ չէ»:

Կրաթիանօ յայտնեց թէ կը սիրէր օրիորդ Փոռթիայի սիրուն ու ազնուական նաժիշտը՝ Ներիսան, եւ այս վերջինը խոստացած էր իր կինը դառնալ, եթէ իր տիրուհին ամուսնանար Պասանիօի հետ: Փոռթիա հարցուց Ներիսայի եթէ այս բանը ճշմարիտ էր: Ներիսա պատասխանեց.

«Օրիո՛րդ, ճիշդ է, եթէ կը հաւանիք»:

Փոռթիա սիրով համաձայնելով, Պասանիօ զուարթօրէն նկատեց.

«Այն ատեն մեր հարսանեկան խնճոյքը ձեր ամուսնութեամբ պիտի կատարուի, Կրաթիա՛նօ:

Այս սիրահարներու երջանկութիւնը տխրութեամբ խաչաձեւուեցաւ նոյն րոպէին լրաբերի մը ժամանումով որ Անթոնիօէն նամակ մը կը բերէր ահարկու լուրերով: Երբ Պասանիօ կը կարդար Անթոնիօի նամակը, Փոռթիա կը վախնար որ սիրեցեալ բարեկամի մը մահուան լուրն էր որ կը հաղորդուէր, որովհետեւ Պասանիօ նոյն ատեն կը դեղնէր: Փոռթիայի հարցման վրայ, Պասանիօ կ՚ըսէր.

«Ո՜հ, քաղցր Փոռթիա, ահա քանի մը ամենաանհաճոյ բառե՜ր որոնք երբեք գրուած ըլլան թղթի վրայ: Ազնիւ տիկին, երբ առաջին անգամ յայտնեցի իմ սէրս ձեզի, ես ազատօրէն ըսի թէ միայն երակներուս մէջ կը կրէի հարստութիւն, բայց ըսած ըլլալու էի նաեւ որ ոչինչէն աւելի պակաս ունէի, որովհետեւ պարտքի տակ էի»:

*Պասանիօ պատմեց Փոռթիայի այն որ արդէն նկարագրուած է, այսինքն Անթոնիօէն իր դրամական փոխառութիւնը, եւ Անթոնիօի կողմէ հրէայ Շայլօքին դիմելն ու դրամ գտնելը, մուրհակը որով Անթոնիօ յանձնառու կ'ըլլար փաունտ մը միսի տուգանքին ենթարկուիլ, եթէ մինչեւ պայմանաժամը չվճարէր դրամը: Յետոյ Պասանիօ կը կարդար Անթոնիօի նամակը որ այսպէս գրուած էր:—*

«Քաղցր Պասանիօ, նաւերս բոլորը կորսուած են, մուրհակս դատարանի յանձնուած է հրէային կողմէ, եւ քանի որ պիտի չկրնամ վճարել, անկարելի է որ ապրիմ, միայն կը փափաքիմ որ ներկայ ըլլաք մահուանս. այսու հանդերձ կրնաք ձեր ուզածին պէս ընել: Եթէ ինծի համար ձեր ունեցած սէրը համոզիչ չէ որ գաք, նամակս անպատասխանի մի թողուք»:

*«Սիրելիս, ըսաւ Փոռթիա, ամէն գործ մէկդի դրէք եւ գացէք, դուք քսան անգամ աւելի վճարելու ոսկեդրամ պիտի ունենանք, իմ Պասանիօիս սխալին հետեւանքով այս ազնիւ բարեկամին մէկ մազը կորսնցնելէ առաջ: Եւ քանի որ այնքան սուղ գնեցի ձեզ, կաթոգին ալ պիտի սիրեմ ձեզ»:*

*Փոռթիա յարեց թէ Պասանիօի հետ պիտի ամուսնանար, անոր մեկնելէն առաջ, որպէսզի իր դրամին օրինական իրաւունք մը ունենար անիկա:*

*Արդարեւ, նոյն օրը ամուսնացան անոնք, նոյնպէս Կրաթիանօ ամուսնացաւ Ներիսայի հետ: Իրենց ամուսնութենէն անմիջապէս ետքը, Պասանիօ եւ Կրաթիանօ փութանակի ճամբայ ելան դէպի Վենետիկ ուր բանտին մէջ գտան Անթոնիօն:*

*Վճարումի օրը անցած ըլլալով, անգութ հրէան չէր ուզեր ընդունիլ Պասանիօի կողմէ առաջարկըւած դրամը, այլ կը պնդէր Անթոնիօի մարմնէն*

փաունտ մը միս կտրելուն վրայ: Արդէն օր նշանակուած էր Վենետիկի դուքսին առջեւ այս ցնցող դատավարութեան համար: Պասանիօ ահեղ անորոշութեան մէջ կը սպասէր դատավարութեանը:

Երբ Փօռթիա կը բաժնուէր իր ամուսինէն, սրտապնդիչ խօսքեր կ'ուղղէր անոր եւ կը մաղթէր որ սիրուած բարեկամները բերէ վերադարձին, այսու հանդերձ տիկինը կը վախնար որ գործը այնքան ալ դիւրին պիտի չըլլար: Իր առանձնութեան մէջ տիկին Փօռթիա կը սկսէր մտածել եւ նկատի ունենալ թէ ինքը իր կողմէ ոեւէ միջոցով կրնա՞ր օգտակար ըլլալ փրկելու համար իր սիրելի ամուսնին բարեկամին կեանքը: Երբ Փօռթիա ուզած էր մեծարել Պասանիօն, յայտներ էր նուրբ ու կնավայել շնորհքով թէ ամէն բանի մէջ պիտի հպատակէր եւ անոր գերազանց իմաստութեամբը առաջնորդուէր, սակայն հիմա իր պատուած ամուսնին բարեկամը վըտանգի տակ գտնուելով, չէր կասկածեր բնաւ իր սեփական ուժերուն վրայ եւ միմիայն իր ճշմարիտ եւ կատարեալ դատողութենէն առաջնորդուած՝ իսկոյն կը վճռէր ինքը անձամբ Վենետիկ երթալ եւ ստանձնել Անթոնիօի պաշտպանութիւնը:

Փօռթիա իրաւաբան ազգական մը ունէր, որուն անունը Պելարիօ էր· ասոր նամակ գրեց, տեղեկացնելով դատը եւ խնդրեց անոր կարծիքը, ինչպէս նաեւ փաստաբանի հագուստներ: Երբ նամակատարը վերադարձաւ, նամակներ բերաւ Պելարիօէն որ խորհուրդներ կուտար դատը վարելու մասին եւ կը ղրկէր ամէն ինչ Փօռթիայի հանդերձանքին համար:

Փօռթիա եւ իր նաժիշտը Ներիսա հագուեցան այր մարդու ձեւով: Պասանիօի տիկինը վրան առաւ իրաւաբանի պատմուճանը եւ Ներիսան հետն առաւ

*իբր գրագիր ։ Յետոյ խկոյն ճամբայ ելլելով, Վենետիկ հասան դատավարութեան օրն իսկ ։*

*Դատը հազիւ պիտի սկսէր լսուիլ Վենետիկի Դուքսին եւ Ծերակոյտի ժողովին առջեւ, երբ Փոռթիա ներս մտաւ արդարութեան այս բարձր ատեանը եւ Պելարիօէն գրուած նամակ մը ներկայացուց դուքսին ։ Այս նամակով հմուտ իրաւաբանը կը գրէր դուքսին թէ կ'ուզէր անձամբ գալ պաշտպանելու Անթոնիօն, սակայն հիւանդութիւնը արգելք ըլլալով, կը խնդրէր, որ ուսեալ երիտասարդ տոքթոր Պալթազարը (Փոռթիայի նոր անունը) թոյլատրուէր իր տեղը պաշտպանութիւնը ստանձնելու ։*

*Այս խնդրանքը ընդունեց դուքսը, շատ զարմանալով անծանօթին երիտասարդ երեւոյթին վրայ ։ Փոռթիա սիրուն կերպով ծպտուած էր իրաւաբանի պատմուճանին եւ լայն կեղծամին մէջ ։*

*Այս կարեւոր դատավարութիւնը կը սկսէր արդէն ։ Փոռթիա շուրջը նայեցաւ եւ տեսաւ անգութ հրէան․ տեսաւ նաեւ Պասանիօն, բայց անիկա չէր կրնար ճանչնալ զայն իր ծպտումին մէջ․ միայն կեցած էր Անթոնիօի կողքին անձկութեան տագնապով եւ երկիւղով ։*

*Դժուարին գործին կարեւորութիւնը զոր ըստանձնած էր այս փափկասիրտ տիկինը, քաջութիւն տուաւ իրեն եւ Փոռթիա համարձակութեամբ սկսաւ կատարել իր պարտականութիւնները ։ Ամենէն առաջ Շայլոքի խօսք ուղղեց եւ ընդունելով որ վենետիկեան օրէնքով անիկա իրաւունք մը ունէր ստանալու մուրհակին մէջ նշանակուած տուգանքը, անանկ քաղցրութեամբ* Ներումի *ազնիւ յատկութեան մասին խօսեցաւ որ ոեւէ սիրտ պիտի փափկանար, սակայն անգգայ Շայլոքի սիրտը բնաւ չէր շարժեր ։ Փոռթիա կ'ըսէր որ ներումը, գթութիւնը մեղմ անձրեւի նը-*

ման կը տեղար երկնքէն երկրի վրայ, եւ կ'օրհնէր թէ տուողը եւ թէ ընդունողը: Ներման այս յատկութիւնը միապետներու աւելի կը պատշաճէր քան անոնց թագերը, որովհետեւ ներումը նոյն ինքն Աստուծոյ ստորոգելին էր: Երկրային ուժը կը մօտենար Աստուծոյ այն համեմատութեամբ, ինչ համեմատութեամբ որ գթութիւնը, ներումը կը բարեխառնէր արդարութիւնը: Փորթիա կը հրաւիրէր Շայլոքը որպէսզի յիշէր թէ մարդիկ ամէնքն ալ գթութիւն կ'աղերսէին, ուստի աղերսողը ինքը պէտք էր գթութիւն ցոյց տար: Իսկ Շայլոք միայն կը պատասխանէր ու կ'ըսէր թէ կը փափաքէր մուրհակին պատիժը ձեռք բերել:

«Անկարո՞ղ է անիկա վճարելու դրամը», հարցուց Փորթիա:

Այն ատեն Պասանիօ հրէային առաջարկեց վճարել երեք հազար տուքաթէն քանի անգամ որ աւելի ուզէր: Շայլոք ասիկա ալ մերժեց եւ տակաւին կը պնդէր փաունտ մը միս կտրել Անթոնիօի մարմնէն: Պասանիօ կը խնդրէր երիտասարդ իրաւաբանէն քիչ մը աւելի կառչիլ օրէնքին փրկելու համար Անթոնիօի կեանքը: Սակայն Փորթիա ծանրօրէն կը պատասխանէր թէ անգամ մը հաստատուած օրէնքները պէտք չէր երբեք փոխել: Շայլոք լսելով որ Փորթիա օրէնքի անփոփոխութեան մասին կը խօսէր, իրեն թուեցաւ թէ անիկա նպաստաւոր կը խօսէր ու ըսաւ.

«Դանիէ՛լ մը եկած է դատաստան ընելու: Ո՛վ իմաստուն երիտասարդ դատաւոր, որչափ կը պատուեմ ձեզ, ձեր տեսքէն աւելի տարիքոտ կ'երեւիք»:

Փորթիա փափաք կը յայտնէր Շայլոքի որպէսզի անգամ մը տեսնէր մուրհակը, եւ կարդալէ ետք կ'ըսէր. «Այս մուրհակը տուգանք մը կը նշանակէ.

որով հրէան օրինաւորապէս փաունտ մը միս կը պահանջէ եւ ինքն իսկ պիտի կտրէ Անթոնիօի սըրտին ամենամօտ տեղէն»: Յետոյ Շայլոքի դառնալով՝ «գթասիրտ եղէք, առէք դրամը ու թոյլ տուէք որ պատռեմ մուրհակը»:

Սակայն կարեկցութիւն ցոյց չէր տար Շայլոք ու կ'ըսէր. «Հոգիս վկայ, կ'երդնում որ մարդկային լեզուին մէջ ոեւէ ուժ չի կայ որ զիս կրնայ փոխել»:

«Այդ պարագային, Անթոնիօ, դուք պէտք է պատրաստէք ձեր ծոցը դանակի համար», ըսաւ Փորթիա: Եւ մինչ Շայլոք կը սրէր երկար դանակ մը մեծ անձկութեամբ, որպէսզի փաունտ մը միս կտրէր, Փորթիա ըսաւ Անթոնիօի. «ըսելիք բան մը ունի՞ք»:

Անթոնիօ հանդարտ համակերպութեամբ մը պատասխանեց թէ քիչ բան ունէր ըսելիք, որովհետեւ պատրաստուած էր մահուան: Յետոյ կ'ըսէր Պասանիօի.

«Տուր ձեռքդ Պասանիօ՛, մնաս բարո՛վ, մի վշտակցիր քեզի համար այս դժբախտութեան մէջ իյնալուս: Յանձնարարէ զիս քու մեծարելի տիկնոջդ եւ ըսէ անոր թէ որչա՛փ սիրած եմ քեզ»:

Պասանիօ ամենախոր վշտի մէջ պատասխանեց. «Անթոնիօ, ամուսնացած եմ կնոջ մը հետ որ կեանքիս չափ սիրելի է ինծի, սակայն ինքը՝ կեանքը, կինս եւ ամբողջ աշխարհը քու կեանքէդ աւելի բարձր չեմ գնահատեր: Կ'ուզէի կորսնցնել բոլորը, կ'ուզէի զոհել ամէն ինչ այս սատանային, քեզ ազատելու համար»:

Փորթիա կը լսէր այս խօսքերը եւ այնքան բարեսիրտ էր որ բնաւ չէր վիրաւորուէր ճշմարիտ բարեկամի մը հանդէպ ամուսնին ուժեղ արտայայ-

տութիւններուն համար, միայն կը մղուէր ըսելու. «Ձեր կինը եթէ ներկայ ըլլար որ սանկ առաջարկներ կ'ընէք, շնորհակալ պիտի չըլլար»:

Կրաթիանօ որ կը սիրէր իր տիրոջը նմանիլ, խորհեցաւ թէ ինք ալ Գասանիօի պէս ճառ մը պէտք էր խօսիլ, ուստի Ներիսայի քով՝ որ Փորթիայի մօտ դրագրի հագուստով կը գրէր, ըսաւ.

«Կին մը ունիմ զոր կը սիրեմ, բայց կը փափաքիմ որ երկինքն ըլլար ան, որպէսզի աղաչէր ուժէ մը որ փոխել տար այս դաժան հրէային անգութ բընութիւնը»:

«Լաւ է որ անոր կռնակին ետեւը կը յայտնէք այդ փափաքը, այլապէս անհանդարտ տուն մը պիտի ունենայիք», ըսաւ Ներիսա:

Այժմ Շայլոք անհամբերութեամբ կ'աղաղակէր. «Ժամանակ կը կորսնցնենք: Կ'աղաչեմ վճիռ արձակեցէք»:

Դատարանին մէջ ամէնքը սոսկալի բանի մը կը սպասէին ու ամէն սիրտ կը ցաւէր Անթոնիօի վրայ:

Փորթիա կը հարցնէր եթէ կշիռները պատրաստ էին կշռելու միսը ու կ'ըսէր հրէային, «Շայլո՛ք, վիրաբոյժ մը պէտք է ունենաք, որ չըլլայ թէ Անթոնիօն մահանայ, արիւն կորսնցնելով»:

Շայլոք որուն ամբողջ միտքը Անթոնիօն մահացնել էր, արեան կորուստ պատճառելով անոր, ըսաւ. «Մուրհակին մէջ այդպէս գրուած չէ»:

«Մուրհակին մէջ այդպէս ըսուած չէ, բայց ի՞նչ նշանակութիւն ունի ատիկա: Լաւ է եղեր որ մարդասիրութեան համար այդ բանը չէք գրեր», պատասխանեց Փորթիա:

«Չեմ կրնար գտնել զայն, մուրհակին մէջ չի կայ», կ'ըսէր Շայլոք:

«Ուրեմն, Անթոնիօի մարմնէն փաունտ մը միս

ձեռն է․ օրէնքը կը թոյլատրէ եւ դատարանը կը վճռէ։ Դուք կրնաք կտրել միսը կուրծքի մասէն։ Օրէնքը կը թոյլատրէ եւ դատարանը կը վճռէ»։

Իսկ Շայլոք դարձեալ կը բացագանչէր․ «Ո՜վ իմաստուն եւ ուղղադատ դատաւոր, Դանիէլ եկած է դատելու»։ Եւ կը սրէր նորէն իր երկար դանակը, ուժգին կը նայէր Անթոնիոի վրայ ու կ՚ըսէր․ «եկէ՛ք, պատրաստուեցէ՛ք»։

«Կեցէք քիչ մը, հրեա՛յ, ըսաւ Փորթիա, ուրիշ բան մըն ալ կայ։ Այս մուրհակը կաթիլ մը արիւն չի տար ձեզի։ Բառերը յատկապէս կ՚ըսեն, ‘փաունտ մը միս’։ Եթէ փաունտ մը միս կտրելու ատեն դուք կաթիլ մը քրիստոնեայ արիւն թափէք, ձեր հողերն ու ինչքերը պիտի բռնագրաւուին Վենետիկի պետութեան օրէնքով»։

Արդ, Շայլոքի համար գերազանցապէս անկարելի ըլլալով փաունտ մը միս կտրել Անթոնիոէն առանց արիւն թափելու, Փորթիայի այս իմաստուն գիւտը թէ մուրհակին մէջ միս գրուած էր եւ ոչ թէ արիւն, կ՚ազատէր Անթոնիոի կեանքը։ Բոլոր ներկաները կը զմայլէին երիտասարդ իրաւաբանին իմաստութեանը վրայ որով փրկարար մտածում մը յղացած էր։ Ամբողջ ծերակոյտի պալատը կը ծափահարէր։ Իսկ Կրաթիանօ Շայլոքի գործածած բառերովը կը բացագանչէր․

«Ո՜վ իմաստուն եւ ուղղադատ դատաւոր, ուշ դիր, հրեա՛յ, Դանիէլ մը եկած է դատելու»։

Շայլոք, տեսնելով որ իր անգութ յղացման մէջ պարտուած է, ըսաւ յուսավրէպ երեւոյթով մը թէ՝ կ՚ուզէր դրամը ընդունիլ, եւ Պասանիօ՝ չափէ դուրս ուրախ Անթոնիոի անակնկալ փրկութենէն՝ կ՚աղաղակէր․

«Հոս է դրա՛մը»։

Սակայն Փոռթիա կը կեցնէր զայն ու կ՚ըսէր. «Կամա՛ց, աճապարանք չունինք: Հրէան միմիայն պատիժ պէտք է ստանայ: Հետեւաբար պատրաստուէ՛, Շայլո՛ք, միսը կտրելու, բայց ո՛ւշ դիր որ արիւն չթափես, ոչ ալ փառնոտէ մը աւելի կամ պակաս կտրես, քանի մը ցորեն աւելի կամ պակաս ծանրութիւնն իսկ թոյլատրելի չէ. եթէ նժարը մէկ հատիկ մազի չափ ծռի, Վենետիկի օրէնքներով դատապարտուած ես մեռնելու, իսկ ամբողջ հարստութիւնդ պիտի գրաւուի պետութենէն»:

«Տուէ՛ք դրամս եւ թոյլ տուէք որ երթամ», կ՚ըսէր Շայլոք:

«Պատրա՛ստ է, ահաւասիկ», ըսաւ Պասանիօ:

Շայլոք դրամը պիտի առնէր, երբ Փոռթիա նորէն կեցուց զայն, ըսելով. «սպասէ՛, Հրէա՛յ, ուրիշ ամբաստանութիւն մըն ալ ունիմ ձեզի դէմ: Վենետիկի օրէնքներուն համաձայն ձեր հարստութիւնը պիտի գրաւուի պետութեան կողմէ իբր տուգանք, իր քաղաքացիներէն մէկուն կեանքին դէմ դաւադրած ըլլալուդ համար: Ձեր կեանքը Դուքսին գթութենէն կախուած է: Հետեւաբար ծունկի չոքէ եւ աղաչէ որ ներէ քեզի»:

Այն ժամանակ Դուքսը ըսաւ Շայլոքի. «Որպէսզի կարենաս տեսնել քրիստոնէական ոգիի տարբերութիւնը, ահա կը շնորհեմ քու կեանքդ, խնդրուելէ առաջ: Հարստութեանդ կէսը կը պատկանի Անթոնիօի, միւս կէսը պետութիւնը կը ստանայ»:

Վեհանձն Անթոնիօ կ՚ըսէր թէ Շայլոքի հարստութեան իր բաժինէն կը հրաժարէր, եթէ Շայլոք պայմանագրութիւն մը ստորագրէր որով յանձնառու ըլլար իր մահուանը՝ այդ հարստութիւնը փոխանցել աղջկան եւ անոր էրկանը: Ան-

թոնիօ գիտէր որ Հրէան մէկ հատիկ աղջիկ մը ունէր որ հակառակ հօրը կամքին վերջերս ամուսնացած էր Լորէնցօ անուն երիտասարդ քրիստոնեայի մը հետ: Լորէնցօ Անթոնիօի բարեկամն էր եւ աղջիկը այնչափ զայրացուցած էր Շայլոքը որ վերջինս ժառանգութենէ զրկած էր զայն:

Հրէան համաձայնեցաւ ասոր, սակայն իր վրէժխնդրութեան մէջ յուսախաբ՝ եւ հարստութենէն զրկուելով, ըսաւ. «Հիւանդ եմ, թոյլ տըւէք որ տուն երթամ. պայմանագրութիւնը ղրկեցէք ետեւէս, որպէսզի հարստութեանս կէսը աղջըկանս փոխանցեմ»:

«Կրնաս երթալ, ըսաւ դուքսը, եւ ստորագրել թուղթը: Սակայն եթէ կը զղջաս անգթութեանդ վրայ եւ քրիստոնեայ կը դառնաս, պետութիւնը կը ներէ տուգանքը որ հարստութենէդ իրեն պիտի գար»:

Դուքսը արձակեց Անթոնիօն եւ դատարանը ցրուեց: Յետոյ մեծապէս գովաբանեց իմաստութիւնն ու նրբամտութիւնը երիտասարդ իրաւաբանին զոր ճաշի հրաւիրեց իր տունը:

Փորթիա որ կ'ուզէր իր ամուսինէն առաջ Պելմոնթ վերադառնալ, պատասխանեց. «Խոնարհաբար շնորհակալ եմ Ձերդ Շնորհափայլութենէն, սակայն պէտք է որ ուղղակի մեկնիմ»:

Դուքսը յայտնեց թէ կը ցաւէր որ իրաւաբանը ժամանակ չունէր կենալու եւ միասին ճաշելու, ու դառնալով Անթոնիօի, կ'աւելցնէր. «Վարձատրեցէք այս պարոնը, որովհետեւ, իմ կարծիքովս, դուք շատ բան պարտական էք անոր»:

Դուքսը եւ ծերակուտականները մեկնեցան դատարանէն: Այն ատեն Պասանիօ ըսաւ Փորթիայի. «Ամենաարժանաւոր պարոն, ես եւ իմ բարեկամ Ան-

Թոնիօն ծանր պատիժներէ փրկուեցանք այսօր, շընորհիւ ձեր իմաստութեան, հետեւաբար կը խնդրեմ որ հրէային տրուելիք երեք հազար տուգաթ դրամը դուք ընդունիք»:

«Այսու հանդերձ մենք յաւէտ երախտապարտ պիտի մնանք, սիրելու եւ ծառայելու ձեզի», աւելցուց Անթոնիօ:

Հակառակ բոլոր խնդրանքներու եւ պնդումներու, Փոռթիա կը մերժէր ընդունիլ դրամը, սակայն Պասանիօ տակաւին կը պնդէր որ ան վարձք մը ստանար:

«Տուէք ձեր ձեռնոցները: Պիտի կրեմ զանոնք ձեր սիրոյն համար», ըսաւ Փոռթիա: Պասանիօ կը հանէր իր ձեռնոցները եւ Փոռթիա կը տեսնէր այն մատանին զոր ինք տուած էր: Խորամանկ տիկինը հիմա այս մատանին կ'ուզէր, որպէսզի երբ նորէն տեսնէր Պասանիօն, զուարթ խաղ մը սարքէր անոր:

«Եւ ձեր սիրոյն համար ձենէ պիտի առնեմ այս մատանին», ըսաւ:

Պասանիօ տխուր սրտաբեկում մը կ'ունենար որ իրաւաբանը կը խնդրէր այն միակ մատանին որմէ չէր կրնար բաժնուիլ, եւ կը պատասխանէր մեծ շփոթութեամբ թէ՝ չէր կրնար տալ այդ մատանին, որովհետեւ իր կնոջ նուէրն էր եւ ուխտած էր երբեք չբաժնուիլ անկէ, սակայն պատրաստ էր Վենետիկի ամենէն արժէքաւոր մատանին տալ եւ գտնել զայն յայտարարութիւնով:

Ասոր վրայ Փոռթիա ինքզինքը նախատուած ձեւացուց եւ մեկնեցաւ դատարանէն ըսելով. «Դուք կը սորվեցնէք ինծի, պարո՛ն, թէ ի՛նչ պատասխան կը տրուի մուրացիկի մը»:

«Սիրելի Պասանիօ, ըսաւ Անթոնիօ, տո՛ւր մատանին, իմ սէրս եւ անոր մեծ ծառայութիւնը ինծի

համար՝ թո՛ղ գնահատուի հակառակ ձեր կնոջ դըժ-գոհութեան» :

Պասանիօ ամօթահար՝ երախտամոռ երեւալէն, տեղի տուաւ եւ Կրաթիանոի հետ Փոռթիայի ղրկեց մատանին : Իսկ «գրագիրը» Ներիսա որ նոյնպէս Կրաթիանոի տուած էր մատանի մը, խնդրեց իր մատանին : Կրաթիանօ իր տիրոջմէն պակաս վեհանձն չերեւելու համար տուաւ զայն :

Երկու տիկինները կը խնդային խորհելով որ երբ տուն հասնէին, պիտի ամբաստանէին իրենց ամուսինները եւ երդում ընէին թէ մատանիները ուրիշ կնոջ տուած էին :

Այն միջոցին երբ Փոռթիա տուն կը վերադառնար, կը գտնուէր այն բարեբաստիկ մտավիճակին մէջ ուր մարդ դիտակցութիւնն ունի թէ լաւ գործ մը կատարած է : Իր զուարթ տրամադրութիւնը հաճոյք կը զգար ամէն բանէ · լուսինը երբեք այնքան փայլուն չէր ճառագայթած, եւ երբ լուսնի գունտը կը պահուէր ամպի մը ետեւ, Փոռթիա կը տեսնէր լոյս մը Պելմօնթի իր տան մէջ եւ երեւակայութիւնը գործելով կ՚ըսէր Ներիսայի ·

«Այդ լոյսը զոր կը տեսնենք, իմ սրահիս մէջ կը վառի · եւ որքա՜ն հեռու կ՚արձակէ այդ մոմը իր ճառագայթները : Այսպէս կը փայլի նաեւ լաւ գործ մը չար աշխարհի մը մէջ» : Ցետոյ նուագի ձայն լըսելով իր տունէն, կ՚աւելցնէր · «Ինծի կը թուի թէ այդ նուագը աւելի քաղցր կը հնչէ քան ցերեկը» :

Փոռթիա եւ Ներիսա տուն մտան ու իրենց անձնական հագուստները հագնելով, սպասեցին իրենց էրիկներու ժամանումին : Անոնք խսկոյն հասան Անթոնիօի հետ : Պասանիօ իր սիրելի բարեկամը տիկին Փոռթիայի ներկայացուց որ շնորհաւորութիւններ ըրաւ ու բարի գալուստ մաղթեց : Սակայն հա-

գիւ թէ այս ձեւակերպութիւնները վերջացած էին, երբ տեսան որ Ներիսա եւ իր էրիկը սենեակին մէկ անկիւնը կը վիճէին:

«Արդէն վէճի՞ սկսաք, կ'ըսէր Փորթիա, ի՞նչ է խնդիրը»:

«Տիկի՛ն, չնչին ոսկեզօծ մատանիի մը մասին է զոր Ներիսան ինծի տուած էր եւ վրան դանակագործի մը դանակին բանաստեղծութեան պէս մակագրուած էր. ‘Սիրէ զիս եւ մի թողուր զիս’», ըսաւ Կրաթիանօ:

«Բանաստեղծութիւնը եւ մատանիին արժէքը ի՞նչ կը նշանակեն, կ'ըսէր Ներիսա, դուն երդում ըրիր ինծի որ պիտի պահես մատանին մինչեւ մահուանդ ժամը, իսկ հիմա կ'ըսես թէ իրաւաբանի մը գրագրին տուած ես: Գիտեմ որ կնոջ մը տուած ես զայն»:

«Ձեռքս չորնա՛յ, կը պատասխանէր Կրաթիանօ, մատանին երիտասարդի մը տուի, բարեկիրթ տղու մը, փոքրիկ խեղճ տղու մը որ ձենէ աւելի մեծ չէր: Անիկա գրագիրն էր երիտասարդ իրաւաբանին որ իր իմաստուն պաշտպանութեամբը փրկեց Անթոնիօի կեանքը: Այս շաղակրատ տղան իբր վարձք պահանջեց մատանին եւ, ի՛նչ մեղքս պահեմ, չկրցայ մերժել»:

Փորթիա ըսաւ. «Մեղադրելի էք, Կրաթիանօ, որ ձեր կնոջ առաջին նուէրը ուրիշի տուեր էք: Ես ալ իմ Պասանիօիս մատանի մը տուած եմ, եւ վըստահ եմ որ եթէ աշխարհն իսկ վրայ թափէր, պիտի չտար զայն»:

Կրաթիանօ ինքնարդարացման համար յայտարարեց. «Իմ տէրս՝ Պասանիօ՝ մատանին իրաւաբանին տուաւ եւ այն ատեն միայն անոր գրագիրը որ

գրական աշխատութիւն կատարած էր, խնդրեց իմ մատանին»։

Ասիկա լսելով՝ Փորթիա շատ բարկացոտ երեւոյթ մը ստացաւ եւ կը մեղադրէր Պասանիօն որ մատանին ուրիշի տուած էր։ Կ՚ըսէր թէ Ներիսա իրաւունք ունէր երբ կը հաւատար թէ մատանին ուրիշ կնոջ մը տուած է։ Պասանիօ խիստ դժբախտ էր որ իր սիրելի տիկինը զայրացուցած էր, ուստի մեծ լրջութեամբ կ՚ըսէր.

«Ո՛չ, պատւոյս վրայ կ՚երդնում որ կին չէր մատանին առնողը, այլ իրաւաբան մը որ իմ երեք հազար տուգաթը մերժեց եւ մատանին խնդրեց, եւ երբ զլացայ զայն, դժգոհ մնալով հեռացաւ։ Ի՞նչ կրնայի ընել, քաղցր Փորթիա։ Այնչափ յուզուեցայ ամօթէս որ հարկադրուեցայ ետեւէն ղրկել մատանին։ Ներէ՛ ինծի, բարեսիրտ տիկին. եթէ դուն ալ հոն ըլլայիր, ինծմէ պիտի ուզէիր մատանին եւ տայիր արժանայարգ իրաւաբանին»։

«Ո՜հ, ըսաւ Անթոնիօ, ես դժբախտ պատճառն եմ այս վէճերուն»։

Փորթիա խնդրեց Անթոնիօէն որ չտխրէր ատոր համար, որովհետեւ այնուհանդերձ իր ներկայութիւնը հաճելի էր։

Անթոնիօ կ՚ըսէր. «Անգամ մը մարմինս փոխ տուի Պասանիօի համար, եւ եթէ չըլլար անիկա՝ որուն իր մատանին տուաւ ձեր ամուսինը՝ հիմա մեռած պիտի ըլլայի։ Նորէն կը համարձակիմ կապել իմ հոգիս իբր տուգանք՝ որ ձեր տէրը երբեք այլեւս իր պայմանը պիտի չխզէ ձեզի հանդէպ։

«Ուրեմն իր երաշխաւորը պիտի ըլլաք, ըսաւ Փորթիա, ահա՛ տուէք իրեն այս մատանին եւ հրաւիրեցէք զինքը որ այսուհետեւ աւելի լաւ պահէ զայն քան միւսը»։

*Երբ Պասանիօ նայեցաւ մատանիին, օտարոտի կերպով զարմացաւ որ ճիշտ իր տուած մատանին էր ան։ Փորթիա պատմեց թէ երիտասարդ իրաւաբանը ինքն էր, իսկ Ներիսան՝ իր գրագիրը։ Պասանիօ անպատմելի զարմանքով ու հրճուանքով ստուգեց որ իր կնոջ վեհանձն քաջութեամբ եւ իմաստութեամբն էր որ Անթոնիօի կեանքը փրկուած էր։*

*Փորթիա անգամ մը եւս բարի գալուստ կը մաղթէր Անթոնիօի եւ նամակներ կուտար անոր որոնք պատահմամբ իր ձեռքն ինկած էին։ Այս նամակները Անթոնիօի նաւերուն հաշիւը կուտային։ Նաւերը որոնք կ՚ենթադրուէին թէ կորսուած են, ապահով հասեր էին նաւահանգիստը։*

*Այսպէս ուրեմն կը մոռցուէր այս հարուստ վաճառականին պատմութեան ողբերգական սկզբնաւորութիւնները՝ յաջորդող անակնկալ բախտաւորութեամբ։ Ա՛լ բոլորը ժամանակ կ՚ունենային խնդալու մատանիներու զաւեշտական արկածներուն վրայ, մանաւանդ էրիկներու՝ որոնք չէին ճանչցեր իրենց կիները։*

# ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

Սեպաստիան, երիտասարդ պարոն մը, եւ իր քոյրը Օրիորդ Վիօլա Մեսալինցի երկուորեակ մըն էին: Ասոնք երկուքը իրենց ծնունդէն սկսեալ այնչափ իրարու կը նմանէին, որ եթէ տարբեր հագուստ չհագնէին, կարելի չէր ըլլար իրարմէ զանազանել եւ այս պարագան մեծ հրաշք մը կը նկատուէր: Երկուքը միեւնոյն ժամուն ծնած էին եւ միեւնոյն ժամուն ալ փճանալու վտանգին ենթարկուեցան, որովհետեւ երբ ծովային ճամբորդութիւն մը կը կատարէին, նաւաբեկութեան հանդիպեցան Իլլիրիոյ ծովեզերքը: Իրենց նաւը սոսկալի փոթորիկի մը պատճառաւ ժայռի մը զարնուելով խորտակուեցաւ եւ նաւաբեկեալներէն միայն փոքր թիւ մը կրցաւ ազատիլ: Նաւապետը ազատուած քանի մը նաւազներով եւ փոքրիկ նաւակով մը կրցաւ ցամաք ելլել, ու իրենց հետ տանիլ նաեւ Վիօլան որ փոխանակ ուրախանալու իր փրկութեան համար, խե՜ղճ աղջիկ, կը սկսէր ողբալ իր եղբօր կորուստը: Սակայն նաւապետը կը հանգստացնէր զայն ապահովցնելով թէ՝ տեսած էր անոր եղբայրը, որ նաւուն խորտակումէն ետք, զօրաւոր կայմի մը կապած էր ինքզինք: Այս կայմին վրայ ամրացած, մինչեւ աչքէ հեռանալը տեսած էր անոր գլխուն վեր մնալը ալիքներէն: Վիօլա շատ մխիթարուեցաւ այս նկարագրութեան ներշնչած յոյսէն ու սկսաւ նկատի առնել թէ ի՛նչ պիտի ընէ այս օտար երկրին մէ՞ջ որ շատ հեռու էր իր հայրենիքէն: Վիօլա հարցումներ ուղղեց նաւապետին Իլլիրիոյ մասին:

«Լաւ կը ճանչնամ, Օրիո՛րդ, պատասխանեց

նաւապետը, որովհետեւ այս տեղէն հազիւ երեք ժամ հեռու վայր մը ծնած եմ»։

«Ո՞վ կը կառավարէ այս երկիրը», հարցուց Վիօլա։ Նաւապետը կը յայտնէր թէ Իլլիրիան կը կառավարէր Օրսինօ, որ բնութեամբ եւ արժանաւորութեամբ ազնուասիրտ դուքս մըն էր։ Վիօլա կը յիշէր որ իր հայրը խօսած էր Օրսինօի մասին որ այն ժամանակ ամուրի եղած էր։

«Այժմ ալ այդպէս է», ըսաւ նաւապետը, կամ գոնէ մինչեւ վերջերս այդպէս էր, քանզի հազիւ ամիս մը կայ որ մեկնած եմ այստեղէն։ Այն ատեն ընդհանուր խօսակցութեան առարկայ էր, եւ արդէն ինչպէս գիտէք, մեծերու գործերը միշտ կը ռամբասուին ժողովուրդէն, թէ՝ Օրսինօ սիրահարած էր գեղանի Օլիվիայի, որ առաքինի Օրիորդ մըն է եւ դուստրը կոմսի մը որ մեռաւ տասներկու ամիս առաջ, Օլիվիան թողելով իր եղբօրը պաշտպանութեանը՝ որ նոյնպէս շատ չանցած կնքեց իր մահկանացուն։ Կ՚ըսեն թէ Օլիվիա իր սիրելի եղբօրը սիրոյն համար՝ հրաժարած է մարդերու տեսքէն եւ ընկերակցութենէն»։

Վիօլա ինքն ալ եղբօր մը կորուստին համար տխուր կարեկցութեան մէջ գտնուելով, կը փափաքէր այս Օրիորդին հետ ապրիլ որ քնքուշ եղանակով մը իր եղբօրը մահը կը սգար։ Վիօլա կը հարցնէր նաւապետին եթէ կրնար զինքը ներկայացնել Օլիվիայի, ըսելով որ կամաւ պիտի ծառայէր այդ Օրիորդին։ Սակայն նաւապետը կը պատասխանէր թէ դժուար գործ մըն էր ատիկա, քանզի Օրիորդ Օլիվիա իր եղբօրը մահէն ետք ոչ ոք չէր թոյլատրեր տունը, նոյն իսկ կը մերժէր դուքսը։ Այն ատեն Վիօլա ուրիշ յատակագիծ մը կը յղանար իր մտքին մէջ եւ որուն համաձայն մարդու հագուստով պի-

տի ծառայէր Օրսինօ դուքսին իբր մանկլաւիկ։ Տարօրինակ երեւակայութիւն մըն էր Օրիորդի մը համար այր մարդու հագուստ կրել եւ իբր մանչ անցնիլ, սակայն Վիօլայի լքուած եւ անպաշտպան վիճակը օտար երկրի մէջ կրնայ արդարացնել այս քայլը, մանաւանդ որ երիտասարդ ու անսովոր գեղեցկութեամբ մը օժտուած էր։

Վիօլա նաւապետին ընթացքը բանաւոր կը գտնէր եւ կը տեսնէր որ անիկա բարեկամօրէն իր լաւութեան համար կը խորհէր, ուստի իր ծրագիրը անոր հաղորդեց։ Նաւապետը պատրաստակամօրէն յանձնառու եղաւ օգնելու Վիօլայի որ դրամ եւ հըրահանգ տուաւ յարմար հանդերձներ գնելու։ Վիօլա կը պատուիրէր որ իր հագուստները նոյն գոյնով եւ ձեւով ըլլային, ինչպէս որ իր Սեպաստիան եղբայրը կրած էր։

Երբ հանդերձները բերուեցան եւ Վիօլա մարդու պէս հագուեցաւ, այնչափ ճշդօրէն իր եղբօր նմանութիւնը առաւ որ անսովոր սխալներ պիտի պատահէին մէկը միւսին հետ շփոթուելէն, քանզի, ինչպէս յետոյ պիտի երեւի, Սեպաստիան եւս ազատուած էր։

Երբ Վիօլայի անկեղծ բարեկամը, նաւապետը այս սիրուն Օրիորդը պարոնի մը փոխակերպեց, պալատին մէջ գործեր ունենալով, գայն Օրսինօի ներկայացուց Սեզարիօ կեղծ անունին տակ։ Դուքսը զարմանալիօրէն հաճոյք զգաց այս երիտասարդին խօսքերէն ու շնորհալի կեցուածքէն, ու Սեզարիօն իր մանկլաւիկներէն մէկը ըրաւ, պաշտօն մը որ անոր փափաքը եղած էր։ Վիօլա կամ Սեզարիօ իր նոր պաշտօնին պարտականութիւնները այնչափ լաւ կատարեց եւ պատրաստակամ կարգապահութիւն ու հաւատարիմ նուիրում ցոյց տուաւ իր տի-

րոջ՝ որ չատ չանցած Օրսինոյի ամենասիրելի սպասաւորը դարձաւ։

Օրսինօ Օրիորդ Օլիվիայի համար իր ունեցած սիրոյ ամբողջ պատմութիւնը Սեզարիոյի վստահեցաւ, պատմեց իր երկար ու անյաջող հետամտութիւնը մէկու մը որ մերժելով երկարատեւ չնորհներ եւ արհամարհելով իր անձը, կը մերժէր նաեւ ընդունիլ զինքը։ Իր սիրած օրիորդէն անազնիւ վերաբերմունք տեսնելուն պատճառով, ազնուական Օրսինօ լքած էր դաշտի զբօսները եւ բոլոր առնական վարժութիւնները որոնցմէ հրճուանք կը զգար, ու այժմ իր ժամերը անարգ ծուլութեան մէջ կ՚անցընէր, լսելով մեղմ նուագի թուլցնող ձայներուն, թողելով իմաստուն եւ ուսեալ ազնուականներու ընկերակցութիւնը որոնց հետ եղած էր միշտ, իսկ այժմ ամբողջ օրը կը խօսակցէր երիտասարդ Սեզարիօի հետ։ Պալատականները իրենց երբեմնի ազնըւական տիրոջ, մեծ դուքս Օրսինօի անվայել ընկերակից մը կը նկատէին Սեզարիօն։

Անշուշտ վտանգաւոր խնդիր մըն էր որ մատաղատի աղջիկներ գեղեցիկ դուքսերու մտերիմ ըլլան։ Այսպէս եղաւ Վիօլայի համար ալ, քանզի ի ցաւ իրեն, տեսաւ որ ինչ բանէ որ Օրսինօ կ՚ըսէր թէ կը տառապէր Օլիվիայի համար, ինքը Վիօլա իրապէս նոյն բանը կը զգար դուքսին հանդէպ։ Վիօլա զարմանք կը մնար որ Օլիվիա անտարբեր կը վերաբերուէր Օրսինօի՝ որ իր գնահատումով՝ արժանի էր ամենախոր հիացումի։ Այսպէս Սեզարիօ համարձակեցաւ մեղմիւ զգացնել Օրսինօի թէ մեղք էր սիրել օրիորդ մը որ այնքան կոյր կը ձեւանար իր արժանաւոր յատկութիւններուն, եւ կը խօսէր․

«Եթէ օրիորդ մը սիրէր ձեզ, իմ տէրս, ինչպէս դուք կը սիրէք Օլիվիան (եւ գուցէ կայ մէկը որ

կը սիրէ), ու եթէ դուք ի փոխարէն չկրնայիք սիրել զինքը, պիտի չըսէի՞ք անոր թէ չէք կրնար սիրել, եւ անիկա գոհ ըլլալու չէ՞ր այս պատասխանէն»:

Սակայն Օրսինօ չէր ընդունէր դատողութեան այս եղանակը, քանզի կը հերքէր թէ ուեւէ կնոջ համար կարելի ըլլար սիրել այնպէս՝ ինչպէս ինքը կը սիրէր: Ո՛չ մէկ կնոջ սիրտ բաւականաչափ մեծ է կ'ըսէր, խոշոր սէր մը պարփակելու համար, ուստի արդարացի չէր բաղդատել իր սէրը հանդէպ Օլիվիայի՝ ուեւէ սիրոյ հետ որ կրնար ունենալ կին մը հանդէպ իրեն: Վիօլա թէպէտ մեծագոյն յարգանքը ունէր դուքսի կարծիքներուն, բայց չէր կրնար չխորհիլ որ ասիկա բոլորովին ուղիղ չէր, քանզի կը խորհէր թէ իր սիրտը նոյնչափ սէր կը պարունակէր՝ որչափ Օրսինօինը, եւ ուստի կ'ըսէր.

«Ա՜հ, բայց գիտեմ ես, տէրս»:

«Ի՞նչ գիտէք Սեզարիօ», կը հարցնէր Օրսինօ:

«Շատ լաւ գիտեմ, կը պատասխանէր Վիօլա, թէ ի՛նչ սէր կը տածեն կիները այրերու հանդէպ: Անոնք սրտով նոյնքան անկեղծ են որքան մենք ենք: Իմ հայրս դուստր մը ունէր որ կը սիրէր մարդ մը, ինչպէս ես թերեւս՝ որ եթէ կին մը ըլլայի, պիտի սիրէի ձեր բարձրութիւնը»:

«Եւ ի՞նչ է անոր պատմութիւնը», կը հարցնէր Օրսինօ:

«Պարապ բան է, իմ տէրս, կը պատասխանէր Վիօլա, քանզի անիկա երբեք չպատմեց իր սէրը, այլ ծածուկ պահեց, նման սրտի մը որ կոկոնի մէջ է եւ կը սնանի ծաղկագարդ այտերէ: Անիկա կը հալէր իր մտածման մէջ, եւ կանաչ եւ դեղին մելամաղձութեամբ կը նստէր Համբերութեան արձանի մը պէս եւ կը ժպտէր Տառապանքին»:

Դուքսը կը հարցնէր եթէ այս օրիորդը իր սէ-

րէն մեռաւ, բայց Վիօլա այս հարցման խուսափուկ պատասխան մը կուտար, քանի որ կեղծած էր պատմութիւնը՝ չըսելու համար իր գաղտնի սէրն ու լուռ տառապանքները Օրսինոի համար:

Մինչ այսպէս կը խօսակցէին, պարոն մը ներս մտաւ զոր դուքսը Օլիվիայի ղրկած էր: Այս պարոնը ըսաւ. «Հրամանքդ, իմ տէրս, չկրցայ ընդունուիլ օրիորդէն, սակայն իր նաժիշտին միջոցով հետեւեալ պատասխանը ղրկեց ձեզի. «մինչեւ եօթը տարի տարրերն անգամ պիտի չտեսնեն իր դէմքը, այլ միանձնուհիի մը պէս պիտի շրջի քօղով, եւ պիտի թրջէ արցունքներով իր սենեակը մեռած եղբօրը յիշատակին համար»:

Դուքսը լսելով այս յայտարարութիւնը բացագանչեց. «Անիկա որ ասանկ ընտիր սիրտ մը ունի իր մեռած եղբօրը սիրոյ պարտքը կատարելու համար, որչափ աւելի պիտի սիրէ, երբ սիրոյ ոսկեայ հարուստ սլաքը դպչի սրտին»:

Յետոյ ըսաւ Վիօլայի. «Գիտէք Սեզարիօ, ըսած եմ ձեզի սրտիս բոլոր գաղտնիքները, հետեւաբար, բարեսիրտ պատանի, գացէք Օլիվիայի տունը: Մի՛ թողուք որ մերժէ ձեզ, կեցէք դռներուն առջեւ եւ ըսէք անոր որ ձեր ոտքերը պիտի բուսնին հողին վրայ՝ մինչեւ որ ունկնդրութեան չընդունուիք»:

«Եթէ խօսիմ անոր հետ, ի՛նչ պիտի ընեմ, տէր իմ», ըսաւ Վիօլա:

«Այն ատեն, բացէք իմ սիրոյս յոյզերը. երկար ճառ մը խօսեցէք անոր իմ հաւատարմութեանս մասին: Ձեզի լաւ պիտի յարմարի ներկայացնել իմ սիրաբանութիւններս, քանզի Օլիվիա աւելի ուշադիր պիտի ըլլայ ձեզի՝ քան աւելի լուրջ կերպարանքի մը»:

Եւ Վիօլա մեկնեցաւ, սակայն կամովին յանձնառու չեղաւ այս սիրաբանութեան, քանզի պիտի սիրաբանէր օրիորդի մը որ կինն ըլլար անոր՝ որուն հետ ինքը կ'ուզէր ամուսնանալ։ Բայց անգամ մը յանձն առած ըլլալով, զայն կատարեց հաւատարմօրէն։ Օլիվիա շուտով կ'իմանար թէ պատանի մը եկած էր իր դրան առջեւ եւ կը պնդէր ընդունուիլ իր ներկայութեանը։

«Ես ըսի անոր, կ'ըսէր ծառան, որ դուք հիւանդ էք, բայց անիկա գիտէր եւ հետեւաբար եկած է ձեզի հետ խօսելու։ Ըսի իրեն թէ դուք քնացած էիք, բայց անիկա կարծես կանխաւ գիտէր ասիկա ալ եւ հետեւաբար կը պնդէր թէ պէտք է խօսի ձեզի։ Ի՞նչ պիտի ըսեմ այս պատանիին, օրիո՛րդ, քանզի անիկա ամէն մերժումի դէմ ամուր կը կենայ, եւ կ'ուզէ խօսիլ ձեզի հետ, եթէ դուք ուզէք կամ ոչ»։

Օլիվիա՝ հետաքրքիր տեսնելու այս վճռական լրաբերը, փափաք յայտնեց ընդունիլ զայն, եւ քօղը դէմքին վրայ առնելով, յայտնեց թէ անգամ մը եւս պիտի լսէր Օրսինօի դեսպանութիւնը, չկասկածելով որ անիկա դուքսին կողմէն կուգար անպատեհ ատեն մը։ Վիօլա ներս մտնելով մարդու հովեր առաւ որքան որ կրնար, եւ մեծ մարդոց մանկլաւիկներու պալատական ընտիր լեզուն որդեգրելով, ըսաւ քօղուած օրիորդին.

«Նշուլապայծառ, գերազանց եւ աննման գեղեցկութիւն, կ'աղաչեմ ըսէք ինծի եթէ այս տանը օրիորդն էք, քանզի պիտի ցաւէի եթէ իմ խօսքերս նետէի ուրիշի մը առջեւ։ Եւ թէպէտ ճիշդ է որ փետրազարդուած եմ գերազանցօրէն, բայց նեղութիւն կրած եմ սորվելու յանձնառութիւնս»։

«Ո՞ւրկէ կուգաք, պարոն», ըսաւ Օլիվիա։

«Սովրածէս քիչ մը աւելի կրնամ ըսել, պատասխանեց Վիօլա, բայց այդ հարցումը իմ դերիս մէջ չէ»։

«Դուք կատակերգա՞կ մըն էք», նկատեց Օլիվիա։

«Ո՛չ, պատասխանեց Վիօլա, տակաւին չեմ այն՝ զոր կը խաղամ». ըսել ուզելով որ, ինքը կին մը ըլլալով, մարդ ըլլալ կը կեղծէր։ Վիօլա դարձեալ կը հարցնէր Օլիվիայի եթէ այս վերջինս տան տիկինն էր։

Օլիվիայի դրական պատասխանին վրայ, Վիօլա աւելի հետաքրքրութիւն կ'ունենար տեսնելու իր հակառակորդին դէմքը, քան կ'աճապարէր հաղորդելու իր տիրոջ պատգամը, ու կ'ըսէր. «Բարի տիկին, թոյլ տուէք տեսնել ձեր դէմքը»։ Այս յանդուքն պահանջէն Օլիվիա դժգոհ չմնաց, որովհետեւ գոռոզ գեղեցկուհին առաջին տեսնելուն իսկ սիրահարեցաւ ենթադրեալ մանկլաւիկին՝ խոնարհ Սեզարիօին։

Եւ Վիօլայի պատասխանեց. «Ձեր վեհապետէն եւ տիրոջմէ ոեւէ յանձնառութիւն ունի՞ք բանակցելու դէմքիս հետ»։ Ցետոյ մոռնալով եօթը տարի քօղով մնալու իր որոշումը, մէկ կողմ քաշեց զայն եւ յարեց. «Սակայն կ'ուզեմ քաշել վարագոյրը եւ ցոյց տալ պատկերը։ Լաւ գծուա՞ծ է արդեօք»։

«Անկեղծօրէն խառն գեղեցկութիւն մըն է, նըկատեց Վիօլա, կարմիրն ու ճերմակը որ կան ձեր այտերուն վրայ՝ բնութեան խորամանկ ձեռքովը զետեղուած են։ Դուք ապրող կիներու ամենագութն էք, եթէ այս շնորհները գերեզման առաջնորդէք առանց օրինակ թողելու աշխարհին»։

«Ա՛հ, պարոն, պատասխան տուաւ Օլիվիա, այդչափ անգութ պիտի չըլլամ։ Աշխարհը կրնայ իմ

գեղեցկութեանս գոյքացուցակը ունենալ, ահա իբրեւ նիւթ՝ երկու շրթունք, անտարբեր կարմիրով, երկու գորշ աչքեր՝ կոպերով միասին, վիզ մը, ծընօտ մը եւայլն: Ձիս գովելո՞ւ համար հոս ղրկուեցաք»:

«Կը տեսնեմ ինչ որ էք. դուք շատ հպարտ էք, սակայն գեղեցիկ էք: Իմ վեհապետս ու տէրս կը սիրէ ձեզ: Ա՜հ, ասանկ սէր մը կարելի է միայն վարձատրել, եթէ դուք գեղեցկութեան պսակուած թագուհին իսկ ըլլայիք, որովհետեւ Օրսինօ կը սիրէ ձեզ պաշտելով ու արցունքներով, մռունչով՝ որ սէր կ'որոտայ, հառաչանքով՝ որ կրակ կ'արձակէ», պատասխանեց Վիօլա:

«Ձեր տէրը, խօսեցաւ Օլիվիա, լաւ գիտէ միտքըս. չեմ կրնար սիրել զինքը, սակայն չեմ կասկածիր իր առաքինութեան վրայ, գիտեմ որ ազնուական եւ բարձր վիճակի տէր է, թարմ ու անբիծ երիտասարդ մը: Բոլոր մարդիկ կը վկայեն թէ ուսեալ, բարեկիրթ եւ քաջասիրտ է, եւ սակայն չեմ կրնար սիրել զինքը: Կրնար այս պատասխանս շատ ժամանակ առաջ առած ըլլալ»:

«Եթէ ձեզ սիրած ըլլայի իմ տիրոջս չափ, ըսաւ Վիօլա, պիտի ուզէի ուռիի կոճղ մը ըլլալ ձեր դռներուն առջեւ եւ ձեր անունը տայի: Պիտի ուզէի դժգոհանքի հնչեակներ գրել Օլիվիայի վրայ եւ երգել գիշերուան մեռելութեան մէջ: Ձեր անունը պիտի հնչէր բարձունքներու միջեւ եւ օդին շաղակրատութեան կնքամայր Արձագանգը՝ պիտի աղաղակէր Օլիվիա: Ա՜հ, դուք պիտի չկրնայիք հանգըստանալ երկրի տարրերուն եւ օդին միջեւ, այլ պիտի գթայիք վրաս»:

«Դուք շատ բան կրնայիք ընել, ըսաւ Օլիվիա, ի՞նչ է ձեր ազգատոհմը»:

«Իմ բախտէս վեր, սակայն վիճակս լաւ է, ես պարոն մըն եմ», պատասխանեց Վիոլա:

Օլիվիա ակամայ արձակեց Վիոլան, ըսելով. «Գացէք ձեր տիրոջ եւ ըսէք թէ չեմ կրնար սիրել զինք: Թող մարդ չղրկէ ալ, բացի որ դուք պատահմամբ գաք նորէն յայտնելու ինծի այս պատասխանին ընդունելութեան կերպը ձեր տիրոջմէն»:

Վիոլա մեկնեցաւ, հրաժեշտ առնելով Օլիվիայէն զոր Գեղեցիկ Անգթութիւն անուանեց:

Երբ մեկնած էր, Օլիվիա կը կրկնէր անոր բառերը. իմ բախտէս վեր, սակայն վիճակս լաւ է, ես պարոն մըն եմ: Ու բարձրաձայն կ'ըսէր. «Կ'երդնում որ է, իր լեզուն, դէմքը, սրունքները, շարժումը եւ ոգին պարզօրէն ցոյց կուտան որ պարոն մըն է»: Օլիվիա կը բաղձար որ Սեզարիօ դուքսը եղած ըլլար, եւ նկատելով որ իր զգացումները ամբապէս գերած էր, ինքզինք կը մեղադրէր յանկարծական սիրոյ համար: Բայց այն մեղմ մեղադրանքը զոր մարդիկ կ'ընեն իրենց սեփական սխալներուն համար, խոր արմատ չունի. արդարեւ ազնուական օրիորդ Օլիվիա կը մոռնար իր եւ այս երեւութական մանկլաւիկին դիրքերու անհաւասարութիւնը, ինչպէս նաեւ այն կուսավայել վերապահութիւնը որ օրիորդի մը նկարագրին զարդը կը կազմէ: Ուստի օրիորդ Օլիվիա կ'որոշէր սիրաբանել երիտասարդ Սեզարիօի հետ, եւ ծառայ մը ղրկել ետեւէն ադամանդազարդ մատանիով մը, պատրուակ բռնելով թէ Օրսինօի կողմէ ղրկուած այդ նուէրը տունը մոռցած էր: Այս վարպետ եղանակով Օլիվիա կը յուսար իր նպատակը զգացնել Սեզարիօի: Եւ իրաւ Վիոլա կասկածեցաւ, որովհետեւ գիտէր թէ Օրսինօ մատանի ղրկած չէր իրեն հետ, ուստի սկսաւ վերյիշել Օլիվիայի հայեացքներն ու ձեւերը որոնք

հիացում կ'արտայայտէին, եւ ահա կը կռահէր որ իր տիրոջ տիրուհին սիրահարած էր իրեն»։

«Աւա՜ղ, խեղճ օրիորդը նոյնչափ կրնար երազ մը սիրել։ Ծպտումը լաւ բան չէ, քանզի անպտուղ հառաչներ կը պատճառէ Օլիվիայի, ինչպէս ես որ կը հառաչեմ Օրսինոյի համար», կը մտածէր Վիօլա։

Սեզարիօ Օրսինոյի պալատը վերադարձաւ եւ պատմեց իր տիրոջ՝ բանակցութեան անյաջողութիւնը, կրկնելով Օլիվիայի սա հրամանը թէ՝ դուքսը անհանգստացնելու չէր զինք այլեւս։ Սակայն դուքսը տակաւին կը յամառէր յուսալ թէ ազնիւ Սեզարիօ առենին կարող պիտի ըլլար համոզել Օլիվիան գթութիւն ցոյց տալու եւ հետեւաբար կը հրահանգէր միւս օրը նորէն երթալ անոր մօտ։ Միեւնոյն ատեն անցընելու համար տաղտկալի ժամանակամիջոցը, Օրսինօ կը հրամայէր երգել իր սիրած երգերէն մին, ու կ'ըսէր․

«Իմ բարեսիրտ Սեզարիօ, երբ այդ երգը լսեցի երէկ իրիկուն, թուեցաւ ինծի թէ յոյզերս թեթեւցան։ Լսէ զայն, Սեզարիօ, հին ու պարզ երգ մըն է։ Մանուհիներն ու հիւսողները երբ կը նստին արեւուն տակ եւ մատաղատի աղջիկները կը հիւսեն ոսկոր իլիկով իրենց դերձանը, այս երգը կ'երգեն։ Անմիտ է, բայց կը սիրեմ զայն, քանզի կը խօսի հին ժամանակներու սիրոյ անմեղութեան մասին»։

Վիօլա չվրիպեցաւ ուշադրութեան առնել հին երգին բառերը որոնք ճշմարիտ պարզութեամբ մը կը նկարագրէին անվարժ սիրոյ տառապանքները․ անիկա իր անձնական զգացումներովն իսկ կը վկայէր երգին արտայայտութեան ճշդութիւնը։ Իր տրխուր հայեացքները նշմարուեցան Օրսինոյի կողմէ որ ըսաւ անոր․

«Կեանքս վկայ, Սեզարիօ, դուք շատ մատա-

պատի էք թէպէտ, սակայն ձեր աչքը սիրած դէմքի մը վրայ նայած է: Այնպէս չէ՞, պատանի՛»:

«Քիչ մը, ձեր թոյլտուութեամբը», պատասխանեց Վիօլա:

«Եւ ի՞նչ տեսակ ու ի՛նչ տարիքի կին է անիկա», շարունակեց Օրսինօ:

«Ձեր տարիքն ու ձեր դէմքը ունէր», ըսաւ Վիօլա: Օրսինօ կը ժպտէր որ այս սիրուն պատանին իրեն չափ տարիքոտ ու թուխ դէմքով կին մը սիրած էր: Բայց Վիօլա ծածկաբար Օրսինօն սիրելը կ՚ակնարկէր եւ ոչ թէ անոր պէս կին մը:

Երբ Վիօլա իր երկրորդ այցը կուտար Օլիվիայի, առանց դժուարութեան ներս կը մտնէր: Սպասաւորները շուտ կը հասկնան երբ իրենց տիրուհիները հաճուանք կը զգան խօսակցիլ գեղադէմ երիտասարդ պատգամաբերներու հետ, այսպէս այն րոպէին երբ Վիօլա կը հասնէր, դռները իսկոյն կը բացուէին, ու դուքսին մանկլաւիկը Օլիվիայի յարկաբաժինը կ՚առաջնորդուէր մեծ յարգանքով: Վիօլա կը յայտնէր Օլիվիայի թէ անգամ մը եւս կուգար խօսելու յանուն իր տիրոջ: Իսկ Օլիվիա կը պատասխանէր.

«Կը փափաքէի որ անոր մասին երբեք չխօսէիք, սակայն եթէ ուրիշ սիրաբանութիւն մը յանձն կ՚առնէիք, պիտի ուզէի որ խնդրէիք, փոխանակ երկնքէն նուագ լսելու»:

Ասիկա բաւական պարզ էր արդէն, բայց Օլիվիա դեռ աւելի եւս պարզօրէն սկսաւ բացատրել ինքզինք ու բացէ ի բաց խոստովանեցաւ իր սէրը: Սակայն օրիորդը տհաճութիւն եւ վարանում կը տեսնէր Վիօլայի դէմքին վրայ ու կը շարունակէր. «Ա՜հ, հեգնանքը որչա՜փ գեղեցիկ կ՚երեւի իր շրթունքի արհամարհանքին ու զայրոյթին վրայ:

Սեզա՛րիօ, յանուն գարնան վարդերու, յանուն կուսութեան, պատուի եւ ճշմարտութեան, կը սիրեմ ձեզ այնչափ, եւ հակառակ ձեր հպարտութեան, ո՛չ ուշիմութիւն եւ ոչ ալ դատողութիւն ունիմ պահելու իմ սէրս»:

Բայց զուր տեղը կը սիրաբանէր Օլիվիա: Վիօլա կը փութար հեռանալ. անոր ներկայութենէն ըսպառնալով այլեւս երբեք չգալ պաշտպանելու Օրսինօի սէրը, եւ միակ պատասխանը որ կուտար Օլիվիայի սիրազեղ թախանձանքներուն՝ որոշման մը յայտարարութիւնն էր թէ՝ երբեք կին պիտի չսիրէր:

Պարոն մը, Օլիվիայէ մերժուած հետամուտ մը, որ յաջողած էր իմանալ յիշեալ օրիորդին համակրանքը հանդէպ դուքսին պատգամաբերին, մենամարտի կը հրաւիրէր զայն: Ի՞նչ պիտի ընէր խեղճ Վիօլան, որ այր մարդու հագուստ կը կրէր թէեւ, սակայն կնոջ մը ճշմարիտ սիրտն ունէր ու կը վախնար նայիլ իր կախած սուրին վրան իսկ:

Երբ տեսաւ թէ իր ահարկու հակառակորդը սուրը քաշած կը յառաջանար, Վիօլա սկսաւ մտածել թէ պէտք էր խոստովանիլ իր կին մը ըլլալը, բայց անմիջապէս փրկուեցաւ իր ահաբեկումէն, ինչպէս եւ սաստիկ յայտնութեան մը ամօթէն, քանզի օտարական մը որ կ՚անցնէր անկէ, դէպի անոնց յառաջացաւ եւ իբրեւ թէ երկար ատեն Վիօլան ճանչցած ու անոր ամենասիրելի բարեկամը եղած ըլլար, դարձաւ հակառակորդին ու ըսաւ.

«Եթէ այս երիտասարդ պարոնը նախատած է ձեզ, ես վրաս կ՚առնեմ յանցանքը. եւ եթէ նախատէք զայն, իր սիրոյն համար պիտի արհամարհեմ ձեզ»:

Վիօլա ժամանակ չունեցաւ շնորհակալ ըլլալու

այս օտարականէն որ կուգար պաշտպանել զինքը, ոչ ալ միջոց ունեցաւ անոր միջամտութեան պատճառը հարցնելու, քանզի արդարութեան պաշտօնեաներ այդ րոպէին յայտնուելով, յանուն դուքսին ձերբակալեցին օտարականը, անկէ հաշիւ պահանջելու այն յանցանքին համար՝ զոր գործած էր տարիներ առաջ: Հիմա օտարականը կ՚ըսէր Վիօլայի.

«Ասիկա կը պատահի քեզ փնտռելէս», յետոյ դրամաքսակը կ՚ուզէր, ըսելով. «Հիմա պէտքս մղուած քսակս կ՚ուզեմ ու շատ կը ցաւիմ որ բան մը չեմ կրնար ընել քեզի, քանի որ ես ինքս ալ այս վիճակին մէջ ինկայ: Բայց դուն զարմանք կը մնաս, հանդի՛ստ եղիր»:

Անոր խօսքերը արդարեւ կը զարմացնէին Վիօլան որ կը բողոքէր թէ չէր ճանչնար զայն, ո՛չ ալ քսակ մը ընդունած էր անորմէ: Այսու հանդերձ քիչ առաջ տեսած ազնիւ վերաբերմունքին համար փոքր գումար մը կուտար որ գրեթէ ունեցած ամբողջ դրամն էր: Ասոր վրայ օտարականը խիստ խօսքեր կ՚ընէր, մեղադրելով ապերախտութեամբ եւ անագնըւութեամբ: Ու կ՚ըսէր.

«Այս երիտասարդը զոր կը տեսնէք հոս, ազատած եմ մահուան ժանիքներէն. իր սիրոյն համար էր որ Իլլիրիա եկայ եւ այս վտանգին մէջ ինկայ»:

Դատական պաշտօնեաները փոյթ չէին ըներ լըսել իրենց կալանաւորին գանգատները եւ փութով կը հեռացնէին զայն, նկատելով. «Մեր ինչո՞ւն պէտք ատիկա»: Երբ մէկդի կը տարուէր, կալանաւորը Սեպաստիան անունը կուտար Վիօլային, մեղադրելով ենթադրեալ Սեպաստիանը որ կ՚ուրանար իր բարեկամը, եւ այս մեղադրանքը կը կրկնէր մինչեւ որ ձայնը չէր լսուեր այլեւս: Երբ Վիօլա լը-

սեց որ օտարականը զինքը Սեպաստիան կը կոչէ, ատեն չունեցաւ անկէ բացատրութիւն ուզելու եւ սկսաւ խորհիլ թէ այս առերեւոյթ խորհուրդը կըրնար առաջ գալ իր անձը իր եղբօրը անձին հետ շըփոթուելէն եւ յոյսեր կը սնուցանէր թէ եղբօրը կեանքն է որ այս մարդը ազատած էր: Եւ իրաւ ալ այսպէս էր: Օտարականը որուն անունը Անթոնիօ էր, նաւապետ մըն էր եւ իր նաւուն մէջ առած էր Սեպաստիանը, երբ այս վերջինս յոգնութենէ գրեթէ սպառած, կը տատանէր կայմի մը վրայ որուն ամրացած էր փոթորիկի միջոցին: Անթոնիօ այնչափ բարեկամօրէն կապուեցաւ Սեպաստիանի հետ որ վճռեց անոր ընկերանալ որտեղ որ երթար անիկա: Երբ երիտասարդը հետաքրքրութեամբ ուզեց Օրսինօի պալատը այցելել, Անթոնիօ նախընտրեց չբաժնըւիլ անկէ եւ եկաւ Իլլիրիա, թէեւ գիտէր ու պիտի ճանչցուէր, քանզի ծովային կռուի մը մէջ վիրաւորած էր դուքս Օրսինօի քեռորդին: Եւ այս յանցանքին համար էր որ ձերբակալուած էր:

Անթոնիօ Վիօլայի հանդիպելէն քանի մը ժամ առաջ միայն Անթոնիօ եւ Սեպաստիան ցամաք ելած էին: Անթոնիօ իր քսակը Սեպաստիանի տուած էր, թոյլատրելով որ փափաքած բաները գնէ, եւ մինչ Սեպաստիան պիտի տեսնէր քաղաքը, ինք՝ Անթոնիօ պիտի սպասէր պանդոկը: Սակայն Սեպաստիան որոշ ժամուն չվերադառնալով, Անթոնիօ համարձակած էր փնտռտուքի ելլել, եւ Վիօլա նոյն ձեւով հագուած եւ դէմքով իր եղբօր յար եւ նման երեւելուն, Անթոնիօ քաշած էր սուրը պաշտպանելու համար իր ազատած երիտասարդը: Երբ կարծեցեալ Սեպաստիան կ'ուրանար զինքը եւ կը մերժէր իր սեփական քսակը, զարմանալի չէ որ ապերախտութեամբ կ'ամբաստանէր:

Երբ Անթոնիօ հեռացած էր, Վիօլա երկրորդ կուսի հրաւէրէ մը վախնալով, կրցած արագութեամբ պալատ սլացաւ։ Շատ ժամանակ չէր անցեր Վիօլայի մեկնելէն, երբ իր հակառակորդը կարծեց թէ կը վերադառնայ անիկա․ բայց եկողը Վիօլայի եղբայրը՝ Սեպաստիան էր որ պատահմամբ դէպքին վայրը կը հասնէր, իսկ հակառակորդը կ՚ըսէր․

«Պարո՛ն, անգամ մը եւս կը հանդիպիմ ձեզի․ ահա հատ մը քեզի», ու բռունցքի հարուած մը կ՚իջեցնէր Սեպաստիանի։

Սեպաստիան երկչոտ չէր, ուստի հարուածը կը վերադարձնէր տոկոսով ու կը քաշէր սուրը։

Սակայն կին մը վերջ կը դնէր այս մենամարտին, քանզի Օլիվիա եւս դուրս կուգար իր տունէն Սեպաստիանը Սեզարիօի տեղ չփոթելով, կը հրաւիրէր զայն իր տունը ու կը ցաւէր որ կոշտ յարձակման մը ենթարկուած էր։ Թէպէտ Սեպաստիան շատ կը զարմանար այս տիկնոջ մեծարանքէն, ինչպէս կը զարմանար իր անծանօթ ոսոխին կոշտութենէն, եւ սակայն շատ հաճութեամբ կ՚երթար անոր տունը։ Իսկ Օլիվիա կը հրճուէր որ Սեզարիօ (ինչպէս կը կարծէր) աւելի ենթակայ կ՚ըլլար իր խնամքներուն, քանզի երկուքին դիմագծերը մէկ էին թէեւ, բայց Սեպաստիանի դէմքին վրայ չի կար այն արհամարհանքն ու զայրոյթը որմէ գանգատած էր Օլիվիա, երբ յայտնած էր իր սէրը Սեզարիօի։

Սեպաստիան բնաւ առարկութիւն չըրաւ օրիորդին շռայլած սիրոյն, ընդհակառակը իբրեւ իրողութիւն ընդունեց զայն, միայն կը զարմանար եղածին վրայ ու տրամադիր էր խորհիլ թէ Օլիվիայի խելքը պակասութիւն մը ունէր։ Այսու հանդերձ

*նկատելով որ գեղեցիկ տան մը տիրուհին է անիկա, իր գործերը ինք կը հրահանգէ, ընտանիքը խելքով կը կառավարէ եւ իր յանկարծական սէրէն զատ, միւս բոլոր գործերու մէջ դատողութեան կատարեալ տէրն է, Սեպաստիան կը համաձայնէր սիրաբանութեանը: Իսկ Օլիվիա լաւ տրամադրութեան մէջ գտնելով Սեզարիօն ու վախնալով որ ան կրնար փոխել իր միտքը, առաջարկեց բոլէապէս ամուսնանալ, մանաւանդ որ տանը մէջ քահանայ մըն ալ կար: Սեպաստիան հաւանեցաւ այս առաջարկին, եւ երբ ամուսնական արարողութիւնը վերջացաւ, կարճատենի համար ձգեց իր տիկինը, մտադիր ըլլալով երթալ գտնել իր բարեկամ Անթօնիօն եւ պատմել հանդիպած բարեբախտութիւնը: Այս միջոցին Օրսինօ կուգար Օլիվիայի այցելութեան, եւ երբ Օլիվիայի տան առջեւ կը հասնէր, արդարութեան պաշտօնեաները իրենց կալանաւորը՝ Անթոնիօն դուքսին առջեւ կը բերէին: Վիօլա իր տիրոջ Օրսինօի հետ էր: Երբ Անթոնիօ կը տեսնէր Վիօլան զոր Սեպաստիան ըլլալ կը կարծէր տակաւին, կը պատմէր դուքսին թէ ինչ եղանակով ազատած էր այս երիտասարդը ծովու վտանգներէն: Ցետոյ ամբողջովին պատմելէ ետք այն բարութիւնները զորս ցոյց տուած էր Սեպաստիանի, կը վերջացնէր իր գանգատները ըսելով թէ՝ ամբողջ երեք ամիս, գիշեր ու ցերեկ, ապերախտ երիտասարդը իրեն հետ եղած էր: Սակայն տիկին Օլիվիա տունէն դուրս գալով, դուքսը չէր կրնար մտիկ ընել Անթոնիօի պատմութեան ու կ՚ըսէր·*

*«Կոմսուհին ահա կուգայ եւ երկի՜նքն է որ կը քալէ երկրի վրայ: Գալով քեզի, ա՛յ մարդ, քու խօսքերդ յիմարութիւն են, քանզի երեք ամիսէ ի վեր այս երիտասարդը ինծի կը սպասարկէ»: Եւ*

դուքսը կը հրամայէր մէկդի տանիլ Անթոնիօն։ Սակայն Օրսինոյի երկնային կոմսուհին պատճառ տըւաւ կոմսին ամբաստանելու Սեզարիօն այնչափ ապերախտութեամբ, որչափ Անթոնիօն ամբաստանած էր, քանզի այն բոլոր բառերը որ կը խօսէր Օլիվիա՝ սիրոյ արտայայտութիւններ էին հանդէպ Սեզարիոյի։ Երբ դուքսը տեսաւ որ իր մանկլաւիկը այս բարձր դիրքը գրաւած էր Օլիվիայի շընորհաց առջեւ, սպառնաց իր արդար վրէժխնդրութեան բոլոր սարսափները անոր վրայ թափել։ Օրսինօ մեկնելու վրայ էր եւ կը հրամայէր Վիօլայի հետեւիլ իրեն, ըսելով. «Տղա՛յ, ինծի հետ եկուր։ Միտքս հասուն է չարութիւն ընելու»։ Թէպէտ դուքսին նախանձի կատաղութիւնը կը թուէր թէ Վիօլան կորստեան պիտի մատնէր, սակայն անոր սէրը երկչոտութիւնը մէկդի կը վանէր, եւ Վիօլա կը յայտարարէր թէ ամենամեծ ուրախութեամբ պիտի դիմագրաւէր մահը, իր տիրոջ հանգստութիւն պատճառելու համար։

Սակայն Օլիվիա չէր ուզեր այսպէս կորսնցնել իր ամուսինը ու կ՚աղաղակէր.

«Ո՞ւր կ՚երթայ իմ Սեզարիօն»։

Վիօլան կը պատասխանէր. «Անոր ետեւէ, քանզի իմ կեանքէս աւելի կը սիրեմ զինքը»։

Օլիվիա սակայն կ՚արգիլէր անոնց մեկնումը, բարձրաձայն յայտարարելով թէ Սեզարիօն իր ամուսինն էր եւ մարդ կը ղրկէր քահանային որ կուգար վկայելու թէ հազիւ երկու ժամ առաջ տիկին Օլիվիա այս երիտասարդին հետ ամուսնացած էր։ Զուր տեղը Վիօլա կը բողոքէր թէ ամուսնացած չէր Օլիվիայի հետ, սակայն Օրսինօ տիկնոջ եւ քահանային վկայութենէն կը հաւատար թէ մանկլաւիկը գողցած էր իրմէ այն գանձը զոր իր կեանքէն բարձր

կը դասէր: Օրսինօ խորհելով որ անցածը անցած էր, հրաժեշտ առաւ իր անհաւատարիմ տիրուհիէն եւ անոր ամուսինէն՝ երիտասարդ կեղծաւորէն, ինչպէս կ՚անուանէր Վիօլան, եւ կը զգուշացնէր զայն բնաւ չերեւիլ նորէն իր առջեւ, երբ յանկարծ, ինչպէս անոնց կը թուէր, հրա՛շք մը երեւցաւ: Ուրիշ Սեզարիօ մը կը մտնէր ներս եւ Օլիվիայի կը խօսէր իբրեւ իր կինը: Երբ անոնց զարմանքը քիչ մը դադրեցաւ, որ երկու անձեր միեւնոյն դէմքով, միեւնոյն ձայնով եւ միեւնոյն հագուստով կը տեսնէին, քոյր եւ եղբայր սկսան մէկզմէկ հարցուփորձել, որովհետեւ Վիօլա հազիւ թէ համոզուած էր որ իր եղբայրը կ՚ապրէր, իսկ Սեպաստիան չէր գիտեր թէ ի՛նչ բանի վերագրելու էր որ իր քոյրը մարդու հագուստով կը գտնուէր, մինչ ինք զայն խեղդուած կը սեպէր: Սակայն Վիօլա անմիջապէս կը խոստովանէր թէ ինքը իրապէս Վիօլան էր, Սեպաստիանի քոյրը, բայց ներկայ ծպտումին տակ:

Այն բոլոր սխալները որոնք առաջ եկած էին եղբօր ու քրոջ ծայրայեղ նմանութենէն՝ բացատրուեցան եւ ամէնքը խնդացին տիկին Օլիվիայի վրայ որ հաճելի սխալը գործած էր սիրահարելով կնոջ մը, իսկ Օլիվիա դժգոհ չէր այս փոխանակութենէն, երբ կը ստուգէր որ պսակուած էր եղբօր հետ, փոխանակ քրոջը:

Օլիվիայի այս ամուսնութեամբ Օրսինօի յոյսերը ընդմիշտ վերջացան, ցնդեցաւ նաեւ իր անպտուղ սէրը եւ այժմ իր մտածումները կանգ առին իր սիրականին՝ Սեզարիօի վրայ որ գեղեցիկ օրիորդի մը փոխուեցաւ: Դուքսը մեծ ուշադրութեամբ կը դիտէր Վիօլան, կը յիշէր թէ որչափ գեղեցիկ նկատած էր Սեզարիօն, ու կ՚եզրակացնէր թէ շատ գեղեցիկ պիտի երեւէր անիկա կնոջ հագուստով: Յետոյ կը

յիշէր թէ Սեզարիօ յաճախ ըսած էր որ կը սիրէ զինքը, բան մը որ այն ժամանակ հաւատարիմ մանկլաւիկի մը պարտաճանաչ արտայայտութիւնները կը թուէին, բայց այժմ կը կռահէր թէ աւելի կը նշանակէին այդ խօսքերը, քանզի այն բազմաթիւ սիրուն ասութիւնները որոնք հանելուկ կը թուէին իրեն, միտքը կուգային այժմ: Օրսինօ իսկոյն որ այս բաները վերյիշեց, որոշում տուաւ Վիօլան իրեն կնութեան առնելու եւ ըսաւ անոր, տակաւին զայն Սեզարիօ եւ տղայ կոչելով.

«Տղա՛յ, դուն հազար անգամ ըսած ես ինծի թէ երբեք պիտի չսիրես կին մը որ ինծի չնմանի, եւ այն հաւատարիմ ծառայութեան համար զոր կատարած ես ինծի քու փափուկ եւ մեղմ շունչիդ տակ, եւ քանի որ ցարդ տէր կոչած ես զիս, հիմա քու տիրոջդ տիրուհին պիտի ըլլաս եւ Օրսինօի ճշմարիտ դքսուհին»:

Օլիվիա նկատելով որ Օրսինօ Վիօլայի կուտար այն սիրտը զոր ինքը անշնորհք կերպով մերժած էր, հրաւիրեց զանոնք ներս մտնել իր տունը եւ առաջարկեց օժանդակութիւնը այն քահանային որ զինքը ամուսնացուցած էր առաւօտուն Սեպաստիանի հետ, որպէսզի նոյն քահանան օրուան միւս մասը Օրսինօի եւ Վիօլայի հարսանեկան արարողութեան յատկացնէր:

Այսպէս երկուորեակ եղբայրն ու քոյրը պսակուեցան միեւնոյն օրը. եւ փոթորիկն ու նաւաբեկութիւնը որ բաժնած էին զիրենք՝ միջոց եղան տիրանալու բարձր եւ զօրաւոր դիրքերու:

Վիօլա Իլլիրիոյ դուքսին՝ Օրսինօի կինն էր, եւ Սեպաստիան հարուստ ու ազնուական կոմսուհի՝ տիկին Օլիվիայի ամուսինը:

ՎԵՐՋ Ա. ՀԱՏՈՐԻՆ